ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԽՈՐՀՐԴԻՆ ԱՌԸՆԹԵՐ
ՄԱՇՏՈՑԻ ԱՆՎԱՆ ՀԻՆ ՁԵՌԱԳՐԵՐԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ—«ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ»
ԲԱՆԲԵՐ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԻ
ԵՐԵՎԱՆ № 13 1980

ԼԵՎՈՆ ԽԱՉԻԿՅԱՆ

# ՀԱՅԵՐԸ ՀԻՆ ՄՈՍԿՎԱՅՈՒՄ ԵՎ ՄՈՍԿՎԱ ՏԱՆՈՂ ՃԱՆԱՊԱՐՀՆԵՐԻ ՎՐԱ

Մոսկվայի մասին հնագույն գրավոր տեղեկությունը պահպանվել է 1147 թ., սակայն հնագիտական նյութերի հիման վրա ոմանք հանգել են այն եզրակացության, որ տակավին X—XI դդ. հին Մոսկվայի տարածքի վրա գոյություն է ունեցել առևտրա-արհեստագործական մի բնակավայր, որը տնտեսական սերտ կապերի մեջ է եղել եվրոպական երկրների (հատկապես՝ Գերմանիայի), Միջին Ասիայի և Հայաստանի հետ[1]։

Մոսկվայի բարգավաճումը կատարվում է շատ արագ։ Շուտով այն դառնում է Վլադիմիր-Սուզդալյան Ռուսիայի նշանավոր քաղաքներից մեկը։ XIII դ. սկզբներին առեղծվում է Մոսկովյան ինքնուրույն իշխանությունը, որը հմտորեն հաշվի առնելով մոնղոլական գերիշխանության տակ առեղծված քաղաքական իրավիճակը և օգտագործելով կենտրոնական Ռուսաստանի միմյանց դեմ մաքառող ռուսական իշխանությունների հակամարտությունները՝ ընդարձակում է իր սահմանները հարևանների հաշվին, և XIV դ. կեսերին արդեն դառնում ողջ Ռուսաստանի քաղաքական ու եկեղեցական ճանաչված կենտրոն։ Նույն դարի երկրորդ կեսին Մոսկովյան մեծ իշխանությունը գլխավորում է ռուս ժողովրդի պայքարը թաթար-մոնղոլական տիրապետության դեմ։ 1380 թ. ռուսական զորքերը, Մոսկվայի մեծ իշխան Դմիտրի Դոնսկոյի գլխավորությամբ, պարտության են մատնում մոնղոլական բանակին, հաջող սկիզբ դնելով օտար բռնակալական լծից հայրենի երկրի ազատագրության և միմյանց դեմ պայքարող ռուսական իշխանությունների միավորման։

Այսպիսով, Մոսկվայի մեծ իշխանները XIV—XV դդ. ընթացքում օտար տիրապետության ու ֆեոդալական մասնատվածության դեմ համառ պայքար մղելով, վերամիավորում են ռուսական հողերի մեծագույն մասը և Մոսկվան դարձնում նոր Ռուսաստանի քաղաքական, տնտեսական ու մշակութային կենտրոն[2]։

Մոսկվայի և արևելյան երկրների տնտեսական սերտ կապերն իրականացվում էին միջազգային նշանակություն ձեռք բերած երեք հիմնական մայրուղիներով։ Դրանցից կարևորագույնը Վոլգյան մայրուղին էր. Վոլգայի վրայով Մոսկվան կապված էր Անդրկովկասյան երկրների, Իրանի, Միջին Ասիայի,

[1] *М. Г. Рабинович*. Раскопки в Москве в 1950 году. «Краткие сообщения ИИМК», XLIV, М.—Л., 1952, էջ 117։ Մ. Տիխոմիրովը կասկածի տակ է առնում նոր հայտնաբերված նյութերի՝ Մ. Ռաբինովիչի առաջարկած ժամանակագրությունը, այն տեղաշարժելով XII—XIII դդ. *М. Н. Тихомиров*. Древнерусские города, М., 1956, էջ 408—409)։

[2] «Очерки истории СССР», период феодализма, IX—XV вв. в двух частях, II, М., 1953, էջ 271—332։

Հնդկաստանի և Չինաստանի հետ։ Հին այդ ճանապարհի ողջ երկայնքով՝ Վոլգայի գետաբերանից սկսած մինչև ակունքները, պատմական տարբեր ժամանակաշրջաններում ծաղկում էին առևտրա-արհեստագործական խոշոր նշանակություն ունեցող նավահանգիստ-քաղաքներ, որոնցում միջազգային աշխույժ ապրանքափոխանակություն էր կատարվում։

VIII—X դդ.՝ խազարական խաքանաթի տիրապետության ժամանակաշրջանում, բացառիկ դեր էր կատարում Իթիլ մայրաքաղաքը՝ Հազարան կոչվող առևտրա-արհեստագործական իր թաղամասով (գտնվում էր ներկայիս Աստրախան քաղաքից 15 կմ հյուսիս)[3]։ Խազարական պետության քայքայումից հետո մերձվոլգյան երկրամասերի տերը դարձան Վոլգայի բուլղարները, որոնց նշանավոր մայրաքաղաքը՝ Բուլղարը, կառուցված Վոլգա և Կամա գետերի հատման շրջանում, հինգ դար շարունակ պահպանեց իր բացառիկ դերը որպես միջազգային ապրանքափոխանակության կարևոր մի հանգուցակետ։

Մոնղոլական արշավանքներից հետո այս երկրամասերն ընկան Ոսկե Հորդայի տիրապետության տակ. գետի ողջ երկայնքով, կարևոր անցուղիներին առընթեր, ստեղծվեցին ու բարգավաճեցին վարչական ու տնտեսական նոր կենտրոններ՝ Սարայ-Բերքեն (Հին Սարայը), Սարայ-Բաթուն (Նոր Սարայը), Ովյակը կամ Ուկեկը և Ղազանը։

Վոլգայի ռուսական տիրապետության տակ գտնվող հատվածում կարևորագույն տնտեսական դեր էր կատարում 1221 թ. հիմնադրված Նիժնի-Նովգորոդը, որ 1392 թ. դարձավ Մոսկովյան մեծ իշխանության վաճառաշահ քաղաքներից մեկը։ Ճիշտ է, պատերազմական գործողությունների, ավազակային արշավանքների և այլ անբարենպաստ հանգամանքների հետևանքով երբեմն ժամանակավորապես դադարում էր հաղորդակցությունը Վոլգայի ողջ երկայնքով կամ նրա առանձին հատվածներում, սակայն կարճատև էր լինում այդ դադարը։ Ավերված կենտրոնների փոխարեն ստեղծվում էին նորերը և նույնիսկ թշնամի ուժերն աջակցում էին միմյանց (անշուշտ՝ յուրաքանչյուրն իր շահերից ելնելով)՝ տնտեսական վիթխարի նշանակություն ունեցող մայրուղու վերականգնման ու բարգավաճման համար, և այն շարունակում էր կատարել իր բացառիկ դերը միջազգային ապրանքափոխանակության բնագավառում։

Վոլգյան մայրուղին ծանոթ էր հայերին մեր պատմության հնագույն ժամանակներից ի վեր. որոշակի տվյալներով տակավին մ. թ. ա. I դ. մարերն ու հայերը ցամաքային ճանապարհով Միջագետքից արևելյան ապրանքներ էին հասցնում Կասպից ծովի հյուսիսային շրջանները[4]։

Տնտեսական այդ կապերն, անշուշտ, ավելի լայն ծավալ էին ստացել Արշակունյաց և մարզպանական շրջաններում։ VII դ. մեծանուն գիտնական Անանիա Շիրակացին իր «Աշխարհացույցի» մեջ[5] խազարների պետության ու նրա տիրապետության տակ գտնվող ցեղախմբերի մասին այնպիսի ուշագրավ և

---

[3] Խազարների մայրաքաղաքը սկզբնական շրջանում Բալանջարն էր, որն ավերվեց արաբների կողմից 722 կամ 723 թթ.։ Դրանից հետո մայրաքաղաք դարձավ Իթիլը (В. В. Бартольд. Арабские известия о русах. «Советское востоковедение», I, М.—Л., 1940, էջ 18)։

[4] *В. В. Бартольд*, նշվ. աշխ., էջ 16։

[5] Է. Լ. Դանիելյանի „Армянские космографические труды VII века о строении вселенной" (Ереван, 1978), աշխատության տպագրությունից հետո «Աշխարհացույցի» Ան. Շիրակացուն պատկանելու հարցը կարելի է վերջնականապես լուծված համարել։

ստույգ տվյալներ է հաղորդում, որ կասկած չի մնում այն մասին, որ նա ունեցել է հայազգի տեղեկատուներ։ Այդ մասին նա նույնիսկ որոշակի ակնարկ ունի։ Հունական (Սև) և Կասպից ծովերի մասին իր ձեռքի տակ ունեցած նյութերի շարադրությանն անցնելուց առաջ, նա ուղղակի գրում է. «Քանզի գՊոնտականաւն եւ զԿասպիականաւն մերոց իսկ արանց պատահեաց շուրջ անցանել...»[6]։ Եվ, հավանաբար, հենց «մերոց իսկ արանց» հաղորդած տեղեկությունների հիման վրա, նա տեղյակ էր, որ Վոլգան (Աթըլ գետը) յոթանասուն վտակներ կազմելով է թափվում Կասպից ծով, մի գիտելիք, որ նրանից դարեր հետո է միայն տեղ գտել Ռուսական առաջին (Լավրենտիևյան) տարեգրության մեջ, ինչպես և արաբ աշխարհագիրներ Իբն-Հաուքալի, ալ-Գարնատիի, Յակուբի և այլոց գրվածքներում[7]։

VII դ. վերջերին Արևելից Հայոց կաթողիկոսական աթոռը, որ ավելի հայտնի է Աղվանից կաթողիկոսություն անունով, քարոզչական լայն գործունեություն էր ծավալել Խազարական խաքանաթի սահմաններում և, մանավանդ, նրա հարավային երկրամասերում (Հյուսիսային Կովկասի Կասպից ծովին առափնյա շրջաններում)։ Ճիշտ է, ի վերջո խազարական հասարակության վերնախավը պետական կրոն է հայտարարում հուդայիզմը (կարաիմյան դավանանքը), սակայն հայ քրիստոնեական եկեղեցին նույնպես այնտեղ ունեցել է մեծաքանակ հետևորդներ[8]։ X դ. արաբ պատմագիր Մասուդին վկայում է, որ Իթիլ քաղաքի բնակչության մեջ կային մեծ թվով քրիստոնյաներ[9], իսկ Իբն-Հաուքալը խոսում է խազարական Սըմընդըր ծովափնյա քաղաքի մասին, նշելով, որ «այնտեղ բնակվում էին մուսուլմաններ և ուրիշներ, որոնք ունեին իրենց մզկիթները, քրիստոնյաներն իրենց եկեղեցիները, հրեաները՝ սինագոգներ»[10]։

X դ. կեսերին հյուսիս-արևմտյան Ղազախստանից դեպի արևմուտք շարժվելով և անցնելով Վոլգան, Կովկասի ու Սև ծովի հյուսիսային տափաստանները ներխուժեցին չիչախ (նաև պոլովցի, կուման) կոչվող թուրքական լեզվաընտանիքին պատկանող քոչվոր ցեղերը։ Աշխարհագրական այդ միջավայրում հաջորդելով խազարներին, նրանք դարեր շարունակ՝ մինչև մոնղոլական արշավանքները, իրենց հսկողության տակ պահեցին Արևելքն Արևմուտքի հետ կապող հյուսիսային մայրուղիները։ Այդ ցեղերը, սակայն, միասնական պետություն չկարողացան ստեղծել։ Նրանք ցրված էին Դեշտ-ի Ղփչախ կոչվող

---

6 Ա. Աբրահամյան, Անանիա Շիրակացու մատենագրությունը, Երևան, 1944, էջ 339։ Տե՛ս նաև էջ 347—348, ուր հետաքրքրական տեղեկություններ կան խազարների, նրանց խաքանի (հականի), թագուհու (խաթուն) մասին և թվարկված են Սարմատիայում ապրող 50 ցեղախմբերն ու ցեղերը (խազիրք, բասիք, բարսիլք, ապշեղք... և այլն)։

7 Б. Н. Заходер. Из истории волжско-каспийских связей древней Руси. «Советское востоковедение», 1955, № 3, էջ 118։ Արաբ աշխարհագիրների երկերում տարբեր աշխարհամասերի վերաբերյալ առկա տեղեկությունների զգալի մի մասը փոխ է առնված իրենց տիրապետության տակ գտնվող հին մշակույթ ունեցող ժողովուրդներից, որոնց շարքում հայերը նույնպես գրավել են պատվավոր տեղ։

8 Խազարական պետության սահմաններում հայ հոգևորականների ծավալած քարոզչական գործունեության ու ձեռք բերած հաջողությունների մասին պատմում է Մովսես Կաղանկատվացին (տե՛ս Մովսեսի Կաղանկատուացւոյ Պատմութիւն Աղուանից աշխարհի, Մ., 1860, II, գլուխ ԼԹ—ԽԵ, հատկապես՝ էջ 197—198)։

9 В. В. Бартольд, նշվ. աշխ., էջ 24—25։

10 Նույն տեղում, էջ 34—35։

անծայրածիր տափաստաններում՝ բաժանված լինելով մի շարք կիսանկախ ցեղախմբերի. Դանուբի և Դնեպրի միջև հաստատվել էին Լուկոմորյան կոչվող ղփչախները, ապա՝ արևմուտքից-արևելք գալով, նրանց հարևանությամբ ապրում էին Մերձդնեպրյան կամ Զապարոժյան, Մերձծովյան (ներքին Դոնից մինչև Ազովի ծովափերը), Դոնեցկի, Դոնի, Ղրիմի, Հյուսիսային Կովկասի ղփչախական զանգվածները[11]։

Խազարական պետության մայրաքաղաք Իթիլի անկումից (995 թ.) հետո հավանաբար հենց նույն վայրում առեղծվեց ու բարգավաճեց ղփչախական առևտրական կենտրոն Սաքսին քաղաքը[12]։ Տնտեսական կարևոր նշանակություն ստացավ նաև Սարկել քաղաքը՝ կառուցված Դոն գետի մեծ աղեղի այն մասում, որ առավել մոտ էր գտնվում Վոլգային[13]։

Հայերը, որ աշխույժ հարաբերություններ էին ստեղծել այս երկրամասերի հետ պատմական նախորդ ժամանակաշրջանում, բնականաբար, պահպանել էին իրենց առևտրական դիրքերը ղփչախական իշխանություններում, զգալի դեր կատարելով Դեշտ-ի Ղփչախի ճանապարհներով կատարվող միջազգային առևտրի մեջ։ Պետք է խոստովանել, սակայն, որ այդ մասին պահպանվել են միայն սակավաթիվ նյութեր, որոնցից մի քանիսը՝ ըստ ինքյան պերճախոս։

1180 թ. տեղի է ունենում Վրաց պետության գահակալի՝ Թամար թագուհու ամուսնությունը Վլադիմիրի մեծ իշխան, XII դ. կեսերին Ռուսաստանի պատմության մեջ խոշոր դեր կատարած Անդրեյ Բոգոլյուբսկու որդու՝ Յուրի (Գեորգի) Բոգոլյուբսկու հետ։ Յուրին, իր հորեղբայր Վսեվոլոդի կողմից հալածվելով, հյուրընկալվել էր ղփչախների թագավորի մոտ, ըստ երևույթին, Սաքսին քաղաքում (մեծ հավանականությամբ նրա մայրը ղփչախական իշխանուհիներից է եղել)։ Երբ վրացական արքունիքում քննության նյութ է դառնում ջահել թագուհու համար պատշաճ ամուսին գտնելու հարցը, Թբիլիսցի ոմն թավադ՝ Աբուլ-Հասանը առաջարկում է իրեն քաջածանոթ Յուրի Բոգոլյուբսկու թեկնածությունը։ Վրաց դարբազը (պետական խորհուրդը) ընդունում է այդ առաջարկը։ Ռուս իշխանին հրավիրելու պարտականությունը դրվում է Թբիլիսիի բնակիչ, վաճառական Զանքան Զորաբաբելի վրա, որը, ավելի

---

11 *К. В. Кудряшов*. Половецкая степь, М., 1948, էջ 134։ Պարտվելով մոնղոլ-թաթարներից և ընդունելով նրանց գերիշխանությունը, ղփչախները ոչ միայն չդադարեցին գոյությունն ունենալուց, այլև իրենց մեջ ձուլեցին թաթարներին. վերջիններս, ըստ XIV դ. առաջին կեսի արաբ հեղինակ էլ-Օմարիի՝ «Զուլվեցին և խնամիացան նրանց (ղփչախների) հետ... և նրանք բոլորը դարձան կատարյալ ղփչախներ, այնպես որ կարծես նույն ցեղից լինեին» (*В. Г. Тизенгаузен*. Сборник материалов, относящихся к истории Золотой Орды, т. I. Извлечения из сочинений арабских, СПб., 1894, էջ 235)։

12 «Очерки истории СССР», период феодализма, IX—XV вв., в двух частях, I, М., 1953, էջ 202։

13 *К. В. Кудряшов*. Նշվ. աշխ., էջ 9—34 (այստեղ հատուկ գլուխ է նվիրված Սարկելի տեղագրությանը)։ Վոլգայի և Դոնի ջրավազանները միմյանցից բաժանող և ընդամենը 60 կմ տարածություն բռնող ջրբաժան այդ շրջանը դարեր շարունակ վճռական դեր է կատարել, լինելով Սև ծովը Կասպից ծովի հետ կապող առևտրական զարկերակի անխափան մասը և ունենալով ռազմաստրատեգիական կարևոր նշանակություն։ Դեռևս XVI դ. թուրքական սուլթան Սելիմ II-ը անհաջող փորձ կատարեց Դոնը Վոլգային ջրանցքով միացնելու։ Այսպիսի ծրագրեր առաջ քաշվեցին նաև Պետրոս I-ի ժամանակ։

արագ, քան ակնկալվում էր, ճեպում է ղփչախ թագավոր Սևվինչի մոտ և Թբիլիսի հասցնում փեսացուին[14]։

Ո՞վ էր Վրաստանի քաղաքական կյանքի համար կարևոր նշանակություն ունեցող խնամիական այս կապի ստեղծման նախաձեռնողը։ Այս հարցը հուզել է շատ պատմաբանների՝ XVIII դ. կեսերից սկսած մինչև մեր օրերը[15]։ Եվ ինչպես հաճախ է պատահում բանասիրության մեջ, տարբեր ու հակասական տեսակետներից հավանականը բնավ էլ վերջին ուսումնասիրողներին չի պատկանում։ Այսօր էլ ուժի մեջ է արքայազն Վախուշտիի հաղորդած տվյալն այն մասին, որ Աբուլ-Հասանը Թբիլիսցի մի վաճառական է եղել, ինչպես նաև պրոֆ. Ա. Խախանովի կարծիքը, թե ազգությամբ նա հայ է եղել և առևտրական սերտ կապեր է ունեցել տարբեր երկրների, ըստ որում նաև՝ Դեշտի-ի Ղփչախի հետ[16]։

Ղփչախում բնակություն հաստատած հայերը սերտ կապեր են ունեցել Հայոց բնաշխարհի և հայկական հեռավոր գաղթօջախների հետ։ Ուշագրավ է այն փաստը, որ 1193 թ. ոմն Աղբարիկ՝ որդի Սոյումի, Ղփչախում (ցավոք, տեղը ճշտակի չի նշված) գնել է մեկ դար դրանից առաջ Եգիպտոսի Ալեքսանդրիա քաղաքում ընդօրինակված հայերեն մի Ավետարան[17]։

Ղփչախների հետ միասին, Խազարական պետության ժառանգորդները դարձան միջին Վոլգայի առափնյա երկրամասերում հաստատված բուլղարները, որոնք հայտնի են գիտության մեջ՝ Վոլգայի բուլղարներ անունով։

Բացի գետային մայրուղուց, բուլղարներն արևելյան երկրների հետ առևտրական աշխույժ կապեր էին պահպանում ցամաքային այն ճանապարհով, որ Մեծ Բուլղար քաղաքից՝ տափաստաններով ձգվում էր դեպի Յաիկ, իսկ այնտեղից էլ, անցնելով Ղազախական անապատով, դեպի Խորեզմ։ Այս ճանապարհի նշանակությունն ըստ երևույթին մեծացավ XII—XIII դդ.՝ Խորեզմշահերի պետության ծաղկման ժամանակաշրջանում[18]։

X դ. արաբ ուղեգիր Իբն-Ֆադլանի վկայությամբ բուլղարների արքայական վրանի հատակին փռված էին մեծ մասամբ հայկական գորգեր[19]։ Հնագիտական պեղումներից հայտնաբերված ուշագրավ նյութերի հիման վրա ապացուցված է արդեն, որ Բուլղար քաղաքի պարիսպներից դուրս գոյություն է ու-

---

[14] «История и восхваления венценосцев». В кн. «Картлис цховреба», т. II, Тбилиси, 1959, էջ 36։ Նաև՝ *С. Т. Еремян.* Юрий Боголюбский в армянских и грузинских источниках. «Научные труды Ереванского ун-та», т. XXIII, 1946, էջ 395—396 և *З. В. Папаскири.* Эпизод из истории русско-грузинских взаимоотношений. «История СССР», 1977, № 1, էջ 135։

[15] Արքայազն Վախուշտի, Ա. Խախանով, Ս. Երեմյան, Պ. Ինգորոկվա, Ի. Ցինցաձե, Ն. Բերձենիշվիլի, Շ. Մեսխիա. ահա հարցին անդրադարձած գիտնականների ոչ լրիվ ցանկը (որոնց, հաճախ իրարամերժ, տեսակետների համառոտ շարադրանքը տե՛ս Զ. Պապասկիրիի վերոհիշյալ հոդվածի մեջ)։

[16] *А. С. Хаханов.* Положение армян в грузинском царстве. «Братская помощь пострадавшим в Турции армянам», М., 1897, էջ 55։

[17] Գարեգին Ա. կաթողիկոս, Յիշատակարանք ձեռագրաց, Ա, Անթիլիաս, 1951, № 255, սյուն. 569—570. *С. Т. Еремян.* Նշվ. աշխ., էջ 393։

[18] *А. П. Новосельцев, В. Т. Пашуто.* Внешняя торговля древней Руси (до середины XIII в.). «История СССР», 1967, № 3, էջ 106։

[19] *Ибн-Фадлан.* Путешествие на Волгу, перевод с комментариями, под редакцией акад. И. Ю. Крачковского, М., 1939, էջ 73։ Բաբկեն Առաքելյան, Քաղաքները և արհեստները Հայաստանում IX—XIII դդ., 2, Երևան, 1964, էջ 39։

նեցել հայկական առևտրա-արհեստագործական մի թաղամաս, որը հիմնադրված լինելով դեռևս IX դ., իր զարգացումն է ապրել ու բարգավաճել հատկապես XIII—XIV դդ., դառնալով Ոսկե Հորդայի վաճառաշահ բնակավայրերից մեկը։ Այդ թաղամասում, նախկին փայտածածկ եկեղեցու փոխարեն, XIV դ. կառուցվել է երկհարկանի քարաշեն թաղակապ մի շքեղ եկեղեցի, որի ավերակները, թյուրիմացաբար «հունական դահլիճ» անվանումն ստանալով, երկար ժամանակ հնագետների ուշադրության կենտրոնում էին գտնվում[20]։ Հատուկ նշանակություն ունեն Բուլղարի հայկական գերեզմանատան արձանագիր տապանաքարերը, որոնցից պահպանվել են միայն չնչին հիշատակներ (4-ը հասել են մեզ ամբողջական կամ թերի, իսկ 3-ից պահպանվել են միայն արձանագրությունների անհաջող ընդօրինակություններ)։ Դրանց մեջ կան թվակիր արձանագրություններ, որոնք առանց բացառության պատկանելով XIV դ. առաջին հիսնամյակին (1308—1337 թթ.)՝ խոսուն վկայություններ են այդ շրջանում Բուլղարի հայկական թաղամասի ծաղկուն վիճակի մասին[21]։

Հետաքրքրական արդյունքներ են տվել նաև հայկական գերեզմանատան պեղումները։ Այստեղ հայտնաբերվել են ոսկե և արծաթե զարդեր, մետաքս և դիպակ՝ հյուսված ոսկեհուռ թելերով։ Մասնագետները մեծ նմանություն են տեսնում սրանց և Հայաստանի քաղաքներում, մասնավորապես Անիում և Դվինում արտադրված գործվածքների միջև, միաժամանակ նշելով, որ պեղածո նյութերը վկայում են հայ վաճառականների բարեկեցիկ վիճակի մասին[22]։ Մեծ Բուլղար քաղաքի հայկական համայնքը՝ առաջին հերթին Մոսկվայի հետ էր զարգացնում տնտեսական իր կապերը։ Սակայն, ելնելով այն փաստից, որ Բուլղարի մոտակայքում, Կամա գետի վրա ևս եղել են հայկական փոքրիկ գաղթօջախներ[23], պետք է հետևցնել, որ տեղի հայ վաճառականները սերտ հարաբերությունների մեջ էին նաև հյուսիսային և հյուսիս-արևելյան հեռավոր անտառատունդրային շրջաններում թափառող որսորդական և եղջերվապահ ցեղերի հետ։

---

20 *А. П. Смирнов.* Армянская колония города Болгар. «Материалы и исследования по археологии СССР» (МИА), вып. 61, М., 1958, էջ 330—359։

21 Հ. Ջանփոլադյան, Վոլգայի ափին հայտնաբերված հայկական արձանագրությունները («Բանբեր Մատենադարանի», № 11, 1973, էջ 211—222)։ Տեղին է այստեղ նշել, որ Մերձվոլգյան երկրամասերում հայկական վիմագրական հուշարձանների և այլ նյութերի հայտնաբերման հնարավորությունները պետք է սպառված համարել։ Այս առումով ուշադրության արժանի է անգլիացի վաճառական Քրիստոֆեր Բորոյի 1579 թ. իր հորեղբորը հասցեագրած մի նամակը, որից հայտնի է դառնում, թե հայերեն արձանագիր տապանաքարեր են եղել նաև Ուկեկ կամ Ուվեկ քաղաքի մոտ (արդի Սարատովի մերձակայքում). «Այս վայրում,— գրել է նա,— եղել է շատ նուրբ քարից շինված մի բերդ, և նրան կից կար մի քաղաք... մնում են մինչև այսօր բերդի ավերակների մի մասը և որոշ թվով գերեզմաններ, որոնց մեջ թվում է թե ազնվական մարդիկ են թաղված, որովհետև գերեզմանաքարերի վրա տեսնվում են ձիու պատկեր, որի վրա նստել է մի մարդ աղեղը ձեռքին և մեջքին նետի զամի։ Գերեզմանաքարերից մեկի վրա վահանի մի կտոր կար, որի վրա տառեր էին փորված, որոնց մեկ մասը եղծված էր և մնացյալը դարձել էր պակասավոր. բայց մնացորդի ձևերից դատելով հայկական տառեր էին» (տե՛ս Հով. Հակոբյան, Ուղեգրություններ, հատոր Ա, Երևան, 1932, էջ 436—437)։

22 *М. Фехнер.* Великие Булгары, Казань, Свияжск. М., 1978, էջ 47—48։ *Р. М. Джанполадян.* О двух тканях из Ани и Болгарах. «Краткие сообщения инст. археологии АН СССР (КСИА), вып. 132, էջ 221։

23 Կրասնայա-Պոլյանա և Կիրեյևկայա գյուղերում հայտնաբերվել են հայերեն արձանագիր տապանաքարեր (տե՛ս Հ. Ջանփոլադյան, նշվ. հոդվածը, էջ 219)։

1431 թ. ռուսները գրավեցին և ավերեցին Բուլղար քաղաքը. ըստ երևույթին հենց այս շրջանում էլ դադարեց գոյություն ունենալուց Բուլղարի հայկական թաղամասը. ինչ վերաբերում է թաղամասի բնակչությանը, պետք չէ տարակուսել, որ նրանց մեծագույն մասը, վերաբնակվելով նույն մայրուղու վրա գտնվող այլ կենտրոններում, շարունակեց գործուն դեր կատարել Վոլգայի վրայով կատարվող միջազգային առևտրի բնագավառում։

XIII դ. 30-ական թթ. մերձվոլգյան երկրամասերը բռնագրավվում են մոնղոլների կողմից ու տևականորեն մտնում Ոսկե Հորդայի կազմի մեջ։ Հորդայի տիրակալները, դառնալով Արևելքն ու Արևմուտքը կապող տնտեսական հսկայական նշանակություն ունեցող այդ ճանապարհի տերը, անհրաժեշտ քայլեր են կատարում միջազգային ավանդական ապրանքափոխանակության վերականգնման ուղղությամբ։ Նրանց տիրապետության սկզբնական շրջանում ստեղծվում ու բարգավաճում է Սարայ-Բաթու կամ Հին Սարայ քաղաքը՝ Վոլգայի գետաբերանից ոչ հեռու (արդի Աստրախանի նահանգի Սելիտրեննոյե գյուղի շրջանում)։ Սարայ-Բաթուն, որպես Ոսկե Հորդայի մայրաքաղաք և արհեստագործության ու առևտրի խոշոր կենտրոն, գոյատևում է ընդամենը մեկ դար։ Բայց այդ կարճ ժամանակամիջոցում այստեղ հայերի թիվն այնքան է աճում, որ կառուցվում են եկեղեցիներ (Սուրբ Աստվածածին և Սուրբ Նշան), հիմնադրվում է Գանձասարի կաթողիկոսությանը ենթակա արքեպիսկոպոսական թեմ[24], որի հոգևոր վարչության տակ էին գտնվում, անտարակույս, նաև Ոսկե Հորդայի այլ շրջաններում բնակություն հաստատած հայերը։ Պահպանվել է մի Ավետարան, ընդօրինակված 1319 թ. «ի մայրաքաղաքիս Սարայ... մերձ առ ծովուն Կասպիականի»։ Այդ ժամանակ Սարայում արքեպիսկոպոս էր «քաջ հովուապետ» կոչված տեր Պողոսը։

Ըստ երևույթին Հին Սարայի հայ բնակչության կազմում մեծ դեր են կատարել նաև արհեստավորները։ Պեղումներից հայտնաբերվել են երկու կավե թաղարների բեկորներ, որոնց վրա պահպանվել է միևնույն վարպետի,

---

24 Գիտենք արդեն, որ տակավին VII դ. հյուսիսային Կովկասում և խազարների պետության այլ շրջաններում քարոզչական լայն գործունեություն էին ծավալել Հայոց Արևելից կողմանց կամ Աղվանից կաթողիկոսները։ Նրանց հոգևոր ազդեցությունն աշխարհագրական այս միջավայրում հարատևել է մինչև XVIII դ. վերջերը, երբ Էջմիածնի կաթողիկոսներին հաջողվել է իրենց ենթակայության տակ առնել այդ երկրամասում գտնվող հայերի հոգևոր առաջնորդությունը։

Սարայ Բաթու քաղաքում ընդօրինակված Ավետարանի գրիչ Խաչատուր քահանան, իր հիշատակարանի այն հատվածում, ուր ընդունված էր նշել, թե ե՛րբ և ո՛ր կաթողիկոսի գահակալության տարիներին են ավարտվել ընդօրինակման աշխատանքները, տարբերվելով իր ժամանակակից գրիչներից, կողք-կողքի հիշատակում է միաժամանակ հայոց երկու կաթողիկոսների. «Յամս աստուածապատիւ եւ հոգեւոր տեառն Ստեփաննոսի՝ Արեւելեան կաթողիկոսի Հայոց, և տեառն Կոստանդեա՝ Կիլիկեցւոյ կաթողիկոսի» («ԺԴ դարի... հիշատակարաններ», Երևան, 1950, էջ 155—156)։ Սկզբից հիշատակված «Արևելեան կաթողիկոս հայոց»-ը ոչ այլ ոք է, եթե ոչ 1261—1323 թթ. գահակալած Ստեփաննոս Դ Աղվանից կաթողիկոսը (Հ. Աճառյան, Հայոց անձնանունների բառարան, Դ, էջ 639)։ Նրան «Արևելյան կաթողիկոս հայոց» անվանելով և այդ ժամանակվա Ամենայն հայոց կաթողիկոս Կոստանդինից առաջ հիշատակելով, Խաչատուր քահանան անժխտելի վկայություն է թողել այն մասին, որ Ոսկե Հորդայի հայկական գաղթավայրերը մտել են Գանձասարի թեմի մեջ և Գանձասարի կաթողիկոսները շատերի կողմից ճանաչվել են որպես «Արևելյան հայոց կաթողիկոսներ»։

նույն կնիքով դրոշմված արաբերեն հետևյալ արձանագրությունը. «Ինանիկ որդի Սարգսի»[25]:

XIV դ. 20-ական թթ. Սարայ-Բաթուն վայրէջքի շրջան էր թևակոխել, իր տեղը զիջելով Սարայ-Բերքեին (Նոր Սարային), որը կառուցվել էր Բերքե խանի (1257—1266 թթ.) ժամանակ՝ հաճելի կլիմայով ու բարեբերությամբ հռչակված Վոլգա-Ախտուբինյան հովտամասում (Վոլգոգրադից ոչ հեռու): Ուզբեկ խանի ժամանակ Սարայ-Բերքեն դարձավ Ոսկե Հորդայի մայրաքաղաքը: Տնտեսական ու վարչական կենտրոնների այս փոփոխության համար, անշուշտ, կային հիմնավոր պատճառներ: Մոնղոլական երկու աշխարհակալ պետությունների՝ Իլխանության և Ոսկե Հորդայի ստեղծման հենց առաջին տարիներից, քաղաքական ու տնտեսական անհաշտելի հակադրությունների դուռ բացվեց նրանց միջև: Ոսկե Հորդայի տիրակալները ձգտում էին իրենց ազդեցության ոլորտի մեջ պահել Կասպից ծովով և ծովափնյա շրջաններով դեպի հյուսիս՝ Մոսկվա ու Նովգորոդ (ապա հյուսիսային Եվրոպա) և Ղրիմի վրայով դեպի միջին և հարավային եվրոպական երկրներ տանող առևտրական բանուկ ճանապարհները: Իսկ իլխանները, վճռականորեն հակադրվելով նրանց, փորձում էին խցել այդ ուղիները, իրենց երկրում արտադրվող և հեռավոր արևելյան երկրներից ստացվող ապրանքների առաքումը դեպի Եվրոպա իրականացնելու համար Սև և Միջերկրական ծովերի, մասնավորապես Տրապիզոնի և Կիլիկյան հայկական թագավորության Այաս նավահանգստի վրայով[26]:

Իլխանների այդ քաղաքականությունը ժամանակավորապես պսակվեց հաջողությամբ: Ոսկե Հորդան, իհարկե, չէր կարող հայեցողի դերով բավարարվել: Եվ XIII դ. 60-ական թթ. սկսած մինչև իլխանության քայքայման շրջանը, մոնղոլական երկու այդ պետությունների միջև տեղի ունեցան արյունահեղ պատերազմներ (1262—63, 1265, 1288, 1290, 1318—19, 1324—25, 1335—36 թթ.), որոնց հետևանքով ծայր աստիճանի ավերվեցին Դերբենդի ու Շիրվանի երկրամասերը, ժողովուրդը լքեց իր հայրենի բնակավայրերը, երկիրն ամայացավ[27]: Սարայ-Բաթուի կամ Հին Սարայի տնտեսական հետադիմությունն ու անկումը, առաջին հերթին, անխուսափելիորեն կապված էր պատմական այս անցուդարձերի հետ:

---

25 Տե՛ս *М. Г. Крамаровский*. Гончар-армянин из Сарая ал-Джедид. «Труды Гос. Эрмитажа», XIX, Л., 1978, էջ 102—105: Կնքադրոշմի տառային անվան վերծանությունը դժվարությունների առջև է կանգնեցրել հոդվածագրին. նա առաջարկել է Անանդ, Անանայ, Ինանայ, Անանկ, Ինանակ ընթերցումները, ավելի հավանական համարելով «Անանդ»-ը: Մեր կարծիքով բրուտագործ-վարպետի իրական անունը եղել է Ինանիկ՝ XIV դ. Հայաստանում գործածվող մի անուն (ինչպես հայտնի է, այդպես էին կոչում Բուրթել Օրբելյանի որդի Իվանեին): Չի բացառված նաև «Անանիկ»-ը՝ Անանիա անվան փաղաքշական ձևը:

26 Ապահովելու համար կենսական նշանակություն ունեցող այս մայրուղիները, առաջին իլխանները սիրաշահում էին հայ և ասորի վաճառականներին, արտոնություններ շնորհում նրանց, նույնիսկ զորավիգ կանգնում հայկական որոշ իշխանությունների (նկատի ունենք հատկապես Երզնկայի, Համշենի և Մակվի իշխանությունները), հաշվի առնելով դրանց գրաված հանգուցային դիրքը միջազգային նշանակություն ունեցող ճանապարհների վրա:

27 *А. А. Али-заде*. Борьба Золотой орды и государства ильханов. «Сборник по истории Азербайджана», вып. I, Баку, 1949, էջ 57—94: Արժեքավոր այս հոդվածի հեղինակի կարծիքով Ոսկե Հորդայի տիրակալների պայքարի նպատակն էր գրավել Ադրբեջանն ու իշխել այդ երկրով անցնող ճանապարհներին: Սակայն թվում է, թե նրանց մտահոգության հիմ-

*Ի՞նչ եղավ Սարայ-Բաթուի հայ բնակչությունը։ Մի մասը, անտարակույս, փոխադրվեց Ղրիմ՝ նոր շունչ հաղորդելով այդ թերակղզու հայկական հին գաղթօջախներին։ Հավանաբար զգալի թիվ են կազմել նաև այն հայերը, որոնք խարիսխ նետեցին Հին Սարայից ոչ հեռու կյանք առած ու հետագայում միջազգային նշանակություն ստացած Աստրախան քաղաքում։ Սարայի հայերի երրորդ զանգվածը, պետք է ենթադրել, որ բնակություն է հաստատել Ոսկե Հորդայի նոր մայրաքաղաքում՝ Սարայ-Բերքեում, որը, ինչպես ասվեց, 1330-ական թթ. դարձավ հսկայածավալ մոնղոլական հյուսիսային կայսրության վաճառաշահ կենտրոնը։*

*1333 թ. Սարայ այցելած հռչակավոր արաբ ճանապարհորդ Իբն-Բատուտան, ողջ աշխարհը ոտնատակ արած մի անձնավորություն, հիացմունքով է խոսել այդ քաղաքի մասին. «Սարայ քաղաքը,—գրել է նա,—կառուցված հարթ տարածության վրա և վիթխարի չափեր ընդունած՝ մեկն է գեղեցկագույն քաղաքներից. այն լի է մարդկանցով, ունի գեղեցիկ շուկաներ ու լայն փողոցներ... այնտեղ բնակվում են տարբեր ժողովուրդներ... ամեն մի ժողովուրդ ապրում է առանձին՝ իր թաղամասում, որտեղ և գտնվում է նրա շուկան»*[28]*։*

*Այս և արաբ այլ հեղինակների տվյալներով Սարայում բնակվել և առևտրով ու արհեստներով են զբաղվել Կովկասից, Պարսկաստանից, արաբական տարբեր երկրներից (Սիրիա, Իրաք, Եգիպտոս), Ռուսաստանից, Հունաստանից, Իտալիայից ներգաղթածներ։ Ինչպես տեսնում ենք, նրանց շարքերում հայերը հանվանե չեն հիշատակված, սակայն կարելի է առանց դույզն ինչ կասկածի հավաստել, որ տնտեսական դերով ու բազմամարդությամբ այստեղ ևս հայերն առաջավոր տեղ են գրավել։ Այդ են վկայում, օրինակ, Նոր Սարայում հայտնաբերված և Սարգիս անունով հայ վարպետի ստորագրությունը կրող անոթներն*[29] *ու հայերեն արձանագրություններով տապանաքարերը։ Նկատված է նաև, որ տեղական ջնարակված թասերից շատերը խիստ նման են Հայաստանում արտադրված ամաններին*[30]*։*

*Սարայ-Բերքե քաղաքի հայկական համայնքը 1370-ական թթ. եղել է կազմակերպված գաղութ, ունեցել է իր եկեղեցին. հավանաբար այստեղ՝ թեմական առաջնորդի հանգամանքով, նստել է հայ եպիսկոպոս, որը Սսի կաթողիկոսների կողմից դիտվել է որպես «Ամենայն Ըասաց և Ալախաց» կոչվող և Լվովում հաստատված արքեպիսկոպոսի ենթակայության տակ գտնվող եկեղեցական պաշտոնյաներից մեկը։ Պե՛տք է ենթադրել, սակայն, որ Սարայի և մերձվոլգյան երկրամասերի հայկական մյուս համայնքները առաջվա պես ենթարկվել են Գանձասարի հայ կաթողիկոսներին, որոնք դարեր շարունակ իրենց ազդեցության ոլորտի մեջ են պահել Կովկասից հյուսիս գտնվող հայ-*

---

*նական առարկան Կասպ-Վոլգյան ճանապարհի միջազգային դերի պահպանումն էր։ Պետության եկամուտների մեջ հսկայական տեղ էին գրավում այդ ճանապարհով ներմուծվող ու արտահանվող ապրանքներից գանձվող մաքսատուրքերը։*

28 *В. П. Тизенгаузен, նշվ. աշխ., I, էջ 306։*

29 *А. Якубовский.* Феодальное общество Средней Азии и его торговля с Восточной Европой в X—XV вв. «Материалы по истории Узбекской, Таджикской и Туркменской ССР», Ленинград, 1933.

30 *Т. А. Измайлова.* Керамика из раскопок Амберда. «Труды отдела Востока Гос. Эрмитажа», т. *IV*, Л., 1947, *էջ 188։* Բաբկեն Առաքելյան, *Քաղաքներն ու արհեստները Հայաստանում IX—XIII դդ. հատ. 2, Երևան, 1964, էջ 39—40։*

կական գաղթօջախները: Սսի կաթողիկոսները, բնականաբար, եռանդուն քայլեր էին կատարում իրենց ազդեցությունն այս երկրամասերի հայկական համայնքների վրա տարածելու և ամրապնդելու ուղղությամբ, այնտեղ առաքելով բարձրաստիճան նվիրակներ: Պահպանվել է կաթողիկոսական անթվակիր մի կոնդակ, շարադրված Ոսկե Հորդայի Ջանիբեկ խանի իշխանության տարիներին (1342—1357 թթ.), հավանաբար Մխիթար Գռներցի կաթողիկոսի կողմից: Կոնդակը տվյալներ է պարունակում Ոսկե Հորդայի տարածքով մեկ սփռված հայ զանգվածների, նրանց բնակության կենտրոնների և ունեցած եկեղեցիների մասին: Հաշվառված է Ղրիմ (Սուլխաթ), Ազախ (Ազով, Տանա), Սարայ քաղաքների հայկական համայնքների բնակչությունը և բոլոր նրանց, ովքեր ցրված են «շուրջ զբոլոր Էթիլ գետով, և որք զՋահուն գետով, զոր Ամոյն կոչեն ակումբ առեալ և ընդարձակ տարածեալ, այսինքն մինչև ի ծովն Կասբից»[31]: Այս ուշագրավ վկայությամբ ոչ միայն ընդարձակվում են մեր գիտելիքները Վոլգա գետով և Ազովի ու Սև ծովերի վրայով կատարվող միջազգային առևտրի բնագավառում հայ վաճառականների կատարած դերի մասին, այլև հնարավորություններ են ստեղծվում հանգելու այն եզրակացության, որ նրանք շատ ավելի լայն չափերով, քան ենթադրվում է առ այսօր՝ իրենց գործունեության շրջանակների մեջ են առել նաև Միջին Ասիայի երկրամասերը: Այս փաստերի լույսի տակ ավելի կարևոր նշանակություն են ստանում Բալխաշ լճի ավազանում հայտնաբերված Հովհան Հայոց եպիսկոպոսի տապանաքարը (1323 թ.) և Իսսիկ-կուլ լճից հարավ Սուրբ Մատթեոսի անունով հայկական վանքի գոյության մասին 1375 թ. եվրոպական մի քարտեզի տվյալը[32]:

Միջին Ասիայից դեպի հեռավոր Հնդկաստան ու Չինաստան ձգվող ճանապարհներին հայ վաճառականների քաջածանոթության մասին վստահելի տվյալներ կան նաև հայ միջնադարյան գեղարվեստական գրականության էջերում: XVI դ. նշանավոր բանաստեղծ Գրիգորիս Աղթամարցին, իր «Տաղ Աստուածատուր խաթայեցուն» ստեղծագործության մեջ, տեղեկություններ է գրանցել Մխիթար Բաղիշեցի անունով մի հայ վաճառականի մասին, որ հեռավոր ճանապարհորդությամբ, անցնելով Ատրպատական, Ղում, Իրաղ, Խորասան՝ հասել է Միջին Ասիա (Սամարղանդ և Բուխարա), այնտեղից անցել Հնդկաստան և «հոչակավոր քաղաքն Խաթայ» («մերձ սահմանացն Չինումաչինայ»): Ավարտելով իր առևտրական գործերը, նա հայրենիք է վերադարձել բռնելով մի այլ ուղի. Միջին Ասիայից անցել է Կասպից ծովի հյուսիսային շրջանները, ապա՝ հյուսիսային Կովկաս և՝ Ալանաց աշխարհով իջել հարավ ու հասել իր հայրենի երկիրը՝ Հայաստան[33]:

1380 թ. Կուլիկովյան ճակատամարտում Ոսկե Հորդայի կրած պարտությունից հետո սկսվում է բռնությամբ ստեղծված արհեստական այդ պետական կազմակերպության մայրամուտը: 1395 թ. Ոսկե Հորդան ծանր հարված

---

31 *Մաշտոցի անվան Մատենադարան, ձեռ. № 9622, էջ 671:*

32 *Н. Я. Марр.* Надгробный камень из Семиречья с армяно-сирийской надписью 1323 г. ЗВОАО. т. VIII, *էջ 344—349: В. В. Бартольд.* Очерк истории Семиречья, Фрунзе, 1949, *էջ 45:* Լ. Խաչիկյան, *Հայ պատմագրության անհայտ էջերից, «Պատմա-բանասիրական հանդես», 1972, № 4, էջ 243—244:*

33 Գրիգորիս Աղթամարցի, *Ուսումնասիրություն, քննական բնագիր և ծանոթագրություններ Մայիս Ավդալբեգյանի, Երևան, 1963, էջ 121—123:*

է կրում Լենկ Թեմուրից։ Թեմուրյանները գրավում և ավերում են Սարայ-Բերքեն, Աստրախանը, որոնցից առաջինը այլևս բնավ չի վերականգնվում որպես խոշոր քաղաք, իսկ երկրորդը շունչ է առնում տասնամյակներ հետո։ Զգալի չափով տուժում են նաև Ղրիմի քաղաքները։ Մեծ հարված է հասցվում միջազգային նշանակություն ունեցող կարավանային առևտրին։ Շուտով ավելի են սրվում քոչվորական տարբեր խմբավորումների հակամարտությունները, և իշխանության համար մղվող պատերազմները տարեցտարի ավելի արյունահեղ են դառնում։ Ոսկե Հորդայից անջատվում և առանձին խանություն է դառնում Ղազանի խանությունը (1445 թ.)։ Քիչ հետո՝ 1449 թ., հիմնադրվում է Ղրիմի ինքնուրույն խանությունը, իսկ 1450—64 թթ. միջոցին՝ Աստրախանի խանությունը։ Այսպիսով, Ոսկե Հորդան, զրկված բարեբեր, զարգացած և նստակյաց բնակչություն ունեցող հիմնական շրջաններից, իր հոգեվարքն է ապրում, այլևս կարևոր դեր չկատարելով միջազգային տարանցիկ առևտրի բնագավառում[34]։

Վոլգայի ցամաքային ու գետային ճանապարհները, ինչպես նաև Ղրիմից դեպի Միջին Ասիա ձգվող կարավանային մայրուղին (որ հատում էր Վոլգան Սարայ-Բերքե քաղաքի մոտակայքում), ամբողջապես ընկնում է Ղազանի խանի տիրապետության տակ։

Քաղաքական ու սոցիալ-տնտեսական նոր այս պայմաններում մերձվոլգյան հայկական գաղթօջախների բնակչությունն արագորեն հաղթահարում է ստեղծված դժվարությունները և շարունակում կատարել փորձված վաճառականի և հմուտ արհեստավորի իր դերը Ղազանի խանության նշանավոր քաղաքներում՝ Բուլղարում, Սուվարում և, հատկապես, խանության տնտեսական կենտրոնում՝ Ղազան մայրաքաղաքում։ Ամեն տարի մայիսի վերջերին քաղաքի մերձակայքում գտնվող «Վաճառականների կղզում» (Гостиный остров) կազմակերպվում էր միջազգային նշանակություն ունեցող մեծ տոնավաճառ, որին մասնակցում էին Ռուսաստանից և արևելյան երկրներից ժամանած բազմաթիվ վաճառականներ[35]։ Ղազանի դերը, որպես Ռուսաստանի և արևելյան երկրների առևտրի կարևոր հանգուցակետ, հատկապես մեծանում է XV դ. կեսերին, երբ Ստորին Վոլգայի տափաստաններով անցնող ճանապարհները խափանվել էին և դեռևս չէին կարգավորվել Թուրքիայի հետ տնտեսական կապերը[36]։ Հենց այս ժամանակ քաղաքի մերձակայքում կազմակերպվել է հայկական կայուն գաղթօջախ, որի աղոտ հիշատակները հասել են մեզ՝ «Արմյանսկայա» կոչվող զույգ փողոցների անուններում[37]։

Ղազանի հայերն ունեցել են իրենց եկեղեցին և գերեզմանատունը, որից պահպանվել է միայն 4 տող արձանագրությամբ մի տապանաքար[38]։

---

34 *Б. Д. Греков, А. Ю. Якубовский.* Золотая орда и ее падение, М.—Л., 1950, էջ 407—416։

35 Այդ տոնավաճառի մասին «Ղազանյան տարեգրքի» մեջ գրված է. «На тот же день съеждяхуся в Казань изо всея Руския земля богаты купцы и многия иноземцы дальния и торговаху с Русью великими драгими товары.» «Полное собрание русских летописей», (այսուհետև ПСРЛ) т. XIX; էջ 23։

36 «Очерки истории СССР», т. II, М., 1953, էջ 432։

37 Նույն տեղում, էջ 432։ Նաև՝ *Б. М. Миллер.* Об армянских надписях в Болгарах и Казани. ИРАИМК, հտ. IV, էջ 69։

38 Հր. Ջանփոլադյան, նշվ. աշխ., էջ 221։ Հայերեն արձանագրությամբ տապանաքարերի

Պետք է ենթադրել, որ ղազանցի հայերի մեծամասնությունը աշխատում էր առևտրի ոլորտում, սակայն նրանց մեջ, անշուշտ, եղել են նաև հմուտ արհեստավորներ և այլ զբաղմունքի տեր մարդիկ։ «Ղազանյան տարեգրքի» մեջ պահպանված է հետաքրքրական մի վկայություն՝ Ղազանի խանի բանակում ծառայող հայ թնդանոթաձիգների մասին։ Երբ 1552 թ. ռուսական ցար Իվան Ահեղի զորքերը պաշարել էին Ղազանը, հայ թնդանոթաձիգները ըստ երևույթին հրաժարվել են կռվել ռուսների դեմ. թաթարները հայերին շղթայել են թնդանոթներին, և մերկ սրերով նրանց գլխավերև կանգնած՝ հարկադրել կրակ բացել ռուսների վրա։ Հայերը, սակայն մահվան վտանգն իսկ արհամարհելով, այնպես են արձակել արկերը, որ ռուսական զորքերին որևէ վնաս չհասնի։ Այդ կապակցությամբ տարեգիրը վկայում է. «Лестно и худо бияху и не улучаху, аки неумеющи, и ядра черес все перепущаху или не допущаху, едва кого убиваху»[39].

Թաթարները, միաժամանակ, բանտարկել և խիստ հսկողության տակ էին պահում հինգ հազար օտարերկրյա վաճառականների, «բուխարացիների, և շամախեցիների, և թուրքերի, և հայերի, և ուրիշների» («...Бухар, и Шемахеи, и Турчан, и Армян, и инех»),—անշուշտ տեղյակ լինելով նրանցից շատերի ռուսասիրության մասին[40]։ Այս թվարկման մեջ, չնայած հատուկ տեղ է հատկացված հայերին, բայց պետք է ենթադրել, որ հայազգի են եղել նաև շամախեցի և նույնիսկ «թուրքիացի» (Турчан) կոչվածներից ոմանք։

Իվան Ահեղի այս պատերազմով ոչ միայն Ղազանի խանությունն անցավ ռուսական տիրապետության տակ, այլև նախապատրաստվեց Աստրախանի նվաճումը (1556 թ.)։ Նույն այս տարիներին ռուսական գերիշխանությունը ճանաչեցին նաև Սիբիրի խաները և Նողայի իշխանները։ Վոլգյան մայրուղին, այսպիսով, մեկ ծայրից մյուսը, իր ամբողջությամբ՝ անցավ ռուսական տիրապետության տակ, Վոլգան մեկընդմիշտ դարձավ ռուսական գետ՝ «Матушка Волга»։

Ղազանի հայկական գաղթօջախի մասին որոշ փաստեր կան նաև միջնադարյան հայկական աղբյուրներում։ Գիտենք, օրինակ, որ այդ քաղաքում ևս ապրել են գրասեր հայեր, որոնց պատվերով ընդօրինակվել ու բազմացվել են հայերեն ձեռագիր մատյաններ։ Այսպես, XVII դ. 40-ական թթ. այստեղ աշխատել է Վասիլ անունով մի գրիչ, որը խոջա Ավետիսի պատվերով ընդօրինակել է երկու Ավետարան[41]։

Ղազանի խանության վերացումից հետո Ռուսաստանի ներքին և արտաքին առևտրի համար անհամեմատ մեծ նշանակություն ստացավ ռուսական հնամենի քաղաք Նիժնի-Նովգորոդը։ Այն հիմնադրվել էր 1221 թ. և, արագ զար-

---

առկայությունը, նույնիսկ այն դեպքում, երբ հայտնաբերվել են միայն մեկ-երկու նմուշ կամ թերի բեկորներ, երբեմնի չեն գաղթօջախի գոյության խոսուն փաստ պետք է համարել։

[39] ПСРЛ, т. XIX, էջ 130։ *К. Н. Григорьян*. Из истории русско-армянских культурных связей X—XVII веков. «Труды отдела древнерусской литературы», IX, М.—Л., 1953, էջ 334։

[40] *М. В. Фехнер*. Торговля русского государства со странами Востока в XVI веке, М., 1952, էջ 56։

[41] Մեկը Մաշտոցի անվան Մատենադարանի № 3004 ձեռագիրն է, ընդօրինակված 1642 թ., մյուս ձեռագիրը պահվում է Ղազանի համալսարանում։

գանալով, դարձել ռազմական նշանակություն ունեցող կարևորագույն հենակետ՝ ընդդեմ նախ Վոլգյան բուլղարների, ապա՝ Ղազանի թաթարների։ Այստեղ էին խաչաձևվում Ռուսաստանից դեպի Արևելք տանող հիմնական ճանապարհները։ 1350 թ. Նիժնի-Նովգորոդը դարձավ Սուզդալյան-Նիժեգորոդյան միացյալ իշխանության մայրաքաղաքը. իսկ XIV դ. վերջերին Մոսկվայի մեծ իշխան Վասիլի I-ը իր տիրապետությունը տարածեց հին Ռուսիայի արևելյան այս շրջանների վրա, և Նիժնի-Նովգորոդը՝ բարգավաճելով, դարձավ օրավուր հզորացող Մոսկովյան իշխանության կարևորագույն տնտեսական կենտրոններից մեկը։ 1525 թ., ի հակադրություն Ղազանի, Մոսկվայի մեծ իշխան Վասիլի III-ը, Նիժնի-Նովգորոդի մոտակայքում հիմնադրեց Մակարևյան նշանավոր տոնավաճառը։ Իսկ Ղազանի անկումից հետո, Նիժնի-Նովգորոդը ավելի ընդարձակելով տնտեսական իր կապերը, դառնում է Ռուսաստանի առևտրական կենտրոնը՝ հսկայական դեր կատարելով համառուսական շուկայի ձևավորման գործում։ Հատուկ ուսումնասիրության նյութ կարող է դառնալ Նիժնի-Նովգորոդյան առևտրի բնագավառում հայ վաճառականների կատարած դերի համակողմանի բացահայտումը։ Մենք, սակայն, կբավարարվենք, հիշատակելով հետևյալ փաստը. 1368 թ. Մեծ Նովգորոդի կողմից կազմակերպված և Վոլգյան գետուղու վրա գործող զինված ջոկատները, որ հայտնի են ուշկույնիկներ անունով[42], հարձակում են գործել Նիժնի-Նովգորոդում գտնվող մահմեդականների ու հայերի վրա («бесерман и армен»)[43], ոչնչացրել նրանց նավակներն ու կողոպտել նրանց պատկանող մեծաքանակ ապրանքները («Товар их безчисленно весь пограбиша»)[44].

* * *

Նիժնի-Նովգորոդից Մոսկվա էին հասնում երկու ճանապարհով. մեկն Օկա գետով տանում էր Կոլոմնա, իսկ Կոլոմնայից՝ Մոսկվա գետով՝ Մոսկվա. մյուս ճանապարհը Վոլգայով շարունակվում էր մինչև Յարոսլավլ, ապա Մոսկվա՝ ցամաքային ճանապարհով[45]։

Մենք կարող էինք այս երկու ճանապարհներից մեկն ընտրելով ուղևորվել դեպի Մոսկվա՝ այդ մեծ քաղաքում հայկական հիշատակներ որոնելու նպատակով, սակայն, դանդաղեցնելով մեր ընթացքը, փորձենք համառոտակի ծանոթանալ Մոսկվայից դեպի արևելյան երկրներ ձգվող մյուս կարևոր մայրու-

---

42 Մեծ Նովգորոդի բոյարների կողմից կազմակերպվող ուշկույնիկների ավազակային այս արշավների նպատակն էր Վոլգյան մայրուղուց դուրս մղել արևելյան երկրներից ժամանող վաճառականներին, իրենց ձեռքում կենտրոնացնելու համար նաև տնտեսական վիթխարի նշանակություն ունեցող այդ ճանապարհով կատարվող առևտուրը։ Ուշկույնիկների արշավանքները նվազեցին XV դարի ընթացքում և վերջ գտան 1478 թ. հետո, երբ Մոսկվայի գերիշխանությունը տարածվեց Մեծ Նովգորոդի վրա։

43 Ակադ. Մ. Տիխոմիրովը նշել է, որ հաճախ «бесерман» էին կոչվում մուսուլմանական երկրներից ժամանած բոլոր վաճառականները, անկախ դավանանքից և ազգային պատկանելությունից (*М. Н. Тихомиров*, Средневековая Москва в XIV—XV вв., М., 1957, էջ 131—132)։

44 ПСРЛ, т. XVIII, էջ 104։

45 *Н. Костомаров*. Очерк торговли московского государства в XVI и XVII столетиях, СПб., 1862, էջ 100—101։

դում, որի տնտեսական նշանակությունը փոքր-ինչ գերագնահատված է որոշ ուսումնասիրողների կողմից։

Պիմեն մետրոպոլիտի՝ Մոսկվայից Կոստանդնուպոլիս կատարած ճամփորդության ուղեգրությունը (շարադրված XIV դ. 90-ական թթ.)[46] հնարավորություն է ընձեռում ճշգրիտ հետևելու Մոսկվա—Օկա—Դոն—Ազախ—Ղրիմ—Փոքր Ասիա գետային-ցամաքային-ծովային ճանապարհի ուղեգծին[47]։

Ուսումնասիրելով այդ մայրուղու ընթացքը և պարզելով դրան առնչվող և գիտական որոշակի հետաքրքրություն ներկայացնող մի շարք հարցեր, մեծանուն գիտնական Մ. Ն. Տիխոմիրովը հակված էր կարծելու, թե մոնղոլական արշավանքներից հետո, մինչև XIV դ. կեսերը, այս ճանապարհը շատ ավելի բանուկ է եղել, քան Մոսկվայից դեպի Սև ծով տանող Դնեպրյան կամ Վոլգա-Դոնյան ճանապարհը։ Թվում է, թե այս եզրակացությունը կարոտ է ավելի համոզիչ փաստարկների։ Միջազգային ապրանքափոխանակության համար Դոնը, անտարակույս, այս շրջանում կարևոր դեր կատարում էր, սակայն, հիմնականում իր ստորին հոսանքով, սերտորեն շաղկապված լինելով Վոլգայի հետ։ Դոնի գետաբերանում գտնվող Ազով քաղաքը, որ եվրոպական աղբյուրներում հայտնի է Տանա անունով, իսկ հայերի կողմից կոչվել է Ազախ, կարևոր նշանակություն է ունեցել ոչ միայն որպես միջազգային համբավ ձեռք բերած նավահանգստային քաղաք, այլև որպես ցամաքային ճանապարհների հանգուցակետ։ Ազովից էր սկսում հյուսիսային Կովկասով դեպի Վոլգայի գետաբերանը՝ Սարայ-Բաթու և Աստրախան, այնտեղից էլ դեպի Միջին Ասիա, այնուհետև դեպի Չինաստան ձգվող այն ճանապարհը, որն այնքան հանգամանորեն նկարագրված է Ֆլորենտացի վաճառական Ֆ. Բ. Պեգոլոտտիի կողմից՝ XIV դ. սկզբներին[48]։

Ղրիմի արևելյան ծովափում հաստատված և Կաֆայի տերը դարձած ջենովացիները մեծ ջանքեր թափեցին Ազովը ևս իրենց հենակետը դարձնելու համար, և այդ նրանց հաջողվեց 1316—1332 թթ.։ Սակայն քիչ անց ջենովացիների մրցակից վենետիկցիները, անշուշտ, նյութական մեծ միջոցներ վատնելով, կարողացան Ոսկե Հորդայի տիրակալ Ուզբեկ խանից հրովարտակ ստանալ Ազովում մշտական ներկայացուցիչ ունենալու և այդտեղ անարգել ու անմաքս առևտուր անելու համար։ Ազովը փաստորեն դարձավ վենետիկցիների միջնաբերդը։ Նրա տնտեսական նշանակությունը շատ մեծ էր. երբ 1343 թ. մոնղոլները ներխուժելով՝ ավերածություններ գործեցին այստեղ, և Ջանիբեկ

---

46 «Хождение Пимина в Царьград» (ПСРЛ, т. XI, էջ 95 և հտ.)։

47 Մոսկվա և Օկա գետերով նավարկելով և անցնելով Կոլոմնա, Պերեյասլավ (Ռյազան) քաղաքներով, ուղևորները դուրս էին գալիս ցամաք և շարժվում դեպի Դոնի ակունքները։ Դուբոկ քաղաքի մոտ կրկին նավակներ էին վերցնում և նավարկելով դեպի հարավ հասնում Դոնի գետաբերանի մոտ կառուցված Ազով (Տանա) քաղաքը։ Մոսկվայից Ազով ճանապարհը տևում էր շուրջ 40 օր։ Ազովից նավարկելով՝ 5 օրում հասնում էին Կաֆա, այնտեղից էլ նույնքան ժամանակում՝ Սինոպ, իսկ Սինոպից 18 օրում Կ. Պոլիս (տե՛ս М. Н. Тихомиров, Пути из России в Византию в XIV—XV вв. «Византийские очерки» (Труды советских ученых к XIV конгрессу византинистов), М., 1971, էջ 4—7։ Նույնի Россия и Византия в XIV—XV столетиях. «Зборник Радова Византолошког института», № 7, էջ 23—38։

48 Francesco Balducci Pegolotti. La pratica della mercatura. Ed. by A. Evans The Medival Academy of America, Cambridge (Mass.). 1936, էջ 21։

խանը ժամանակավորապես դադարեցրեց իտալացիների հետ առևտուրը, Իտալիայում կրկնակի բարձրացան մետաքսի և արևելյան համեմունքի գները[49]։

Արևելյան ապրանքները Ազովից արտահանվում էին ոչ միայն Իտալիա և հարավային Եվրոպայի ուրիշ երկրներ, այլ նաև Գերմանիա։ Նյուրնբերգցի մի վաճառական՝ Ուլման Շտրոմերն իր հետաքրքրական նոթերի մեջ արձանագրել է, որ իր հայրենի քաղաքը՝ Լվովի ճանապարհով արևելյան ապրանքներ է ստացել Տանա (Ազով) քաղաքից[50]։

Ազովը, ինչպես նշել է Հայդը, ծովային ճանապարհով կապված էր Աքքերմանի հետ։ Աքքերման հասցված ապրանքները Դնեստրի վրայով փոխադրվում էին Լվով, իսկ այնտեղից էլ՝ կենտրոնական Եվրոպայի շրջանները։ Եվ եթե նկատի ունենանք այն հանգամանքը, որ այդ բոլոր քաղաքներում (Աքքերման, Լվով և այլն) հայ վաճառականները կազմում էին բնակչության մի զգալի մասը, ապա կարելի կլինի առանց կասկածի հետևցնել, թե Ազովում ևս գոյություն է ունեցել կազմակերպված հայ գաղթօջախ։

Ազովը որպես ջրային ու ցամաքային ճանապարհների հանգուցակետ, իր բացառիկ դերը պահպանեց մինչև XV դ. սկզբները՝ երբ 1418 թ. մոնղոլները գրավեցին ու ավերեցին քաղաքը. վենետիկցիները վերջնականապես դուրս մղվեցին Սև և Ազովի ծովերից[51]։ Դոնի նշանակությունը ավելի նվազեց նույն դարի կեսերից, երբ թուրքերը գրավեցին Կոստանդնուպոլիսը, իսկ այնուհետև տեր դարձան Ղրիմին ու Դոնի գետաբերանին։

Անշուշտ, իրավացի էր ակադ. Մ. Ն. Տիխոմիրովը, երբ Թուրքիայի առաջխաղացումն ու գրավումները մեծ աղետ էր համարում ոչ միայն Վենետիկի ու Ջենովայի, այլև Ռուսաստանի համար, որը Կաֆայի և Ազովի անկումից հետո կորցրեց դեպի Եվրոպա բացված և իր տնտեսական զարգացման համար վճռական նշանակություն ունեցող «պատուհանը»[52]։

Ազովի հայկական գաղութի ու նրա տնտեսական դերի մասին աննշան տեղեկություններ են պահպանվել, սակայն, կասկածի ենթակա չէ, որ այնտեղ, քաղաքի ծաղկման շրջանում, ապրել են մեծ թվով հայեր, ունենալով համայնքային իրենց մարմինները և առնվազն մեկ եկեղեցի (Գրիգոր Լուսավորչի անունով)[53]։ 1341 թ. Տերտեր Երևանցի թափառական գրիչը այստեղ՝

49 *В. Е. Сыроечковский*. Гости-сурожане. М.—Л., 1935, էջ 1։

50 *В. Василевский*. Древняя торговля Киева с Регенсбургом. ЖМНП, 1888, июль, էջ 148։

51 *Е. С. Зевакин* и *Н. А. Пенчко*. Очерки по истории генуэзских колоний на западном Кавказе в XIII и XIV вв. «Исторические записки», 1938, № 3, էջ 76։ *Г. Гиббонс*. История торговли Европы. СПб., 1901, էջ 52։

52 Մեջ ենք բերում Մ. Տիխոմիրովի խոսքերը. «Донской путь и связи с Судаком, Кафой и Константинополем в XIV веке были своего рода «окном в Европу», непосредственной связью русских земель с богатым Средиземноморьем. Захват итальянских колоний в Крыму турками надо считать большим бедствием не только для итальянских торговых республик, в первую очередь для Венеции и Генуи, но и для России» (*М. Н. Тихомиров*. Средневековая Москва, էջ 131)։

53 Ասում ենք «առնվազն», նկատի ունենալով, որ 1341 թ. Նազխաթուն անունով մի կին, իր հանգուցյալ որդու հիշատակին մի Ավետարան է նվիրել Ազախի Ս. Գրիգոր եկեղեցուն. Հիշատակարանում գրված է. «Տուաւ ի սուրբ Գր[իգոր] յԱզախ քաղաք՝ եկեղեցին տէր Մանուէլի» («ԺԴ դարի... հիշատակարաններ», էջ 330)։ Այստեղից կարելի է հետևցնել, որ տէր Մանուէլի եկեղեցուց բացի, թերևս, Ազովում եղել է նաև մի ուրիշ հայկական եկեղեցի։ Ուշագրավ է

«աննման Աղախում» ընդօրինակել է բովանդակալից մի ժողովածու, հիշատակարանի մեջ գրելով նաև մեզ հետաքրքրող հետևյալ տողերը. «Գրեցաւ գիրքս յաշխարհիս ամենաւրհնեալ խան Աւզպէկին և բարեհամբաւ որդոյ իւրոյ Դինիպէկին, ի քաղաքս յԱղախս, առ դրան սուրբ Գրիգորոյ Լուսաւորչին, ի յառաջնորդութեանն տէր Ստեփաննոսի՝ որդոյ Գրիգորի քահանայի Սուղթացոյ, և յաւագերիցութեանն Սարգսի՝ որդոյ Մանուէլ քահանայի»[54]։

*1328—1365 թթ.* Ղրիմում գրված ձեռագրերի մեջ բազմիցս հիշատակված է Հայաստանյայց եկեղեցու Ամենայն հյուսիսական կողմանց կոչվող թեմի առաջնորդ Ստեփանոս եպիսկոպոսը կամ արքեպիսկոպոսը[55]։ Կարծում ենք, որ այստեղ ևս նույն գործչի անունն է տրված, ուստի Աղախը Ղրիմի հայ եպիսկոպոսի ենթակայության տակ եղող գաղթավայրերից է եղել։ Եպիսկոպոսի կողքին հիշատակված է Մանվելի որդի Սարգիս ավագերեցը, որպես Աղախի հայ գաղթօջախի հոգևոր առաջնորդ։ Ավագերեցի գոյությունն իսկ ենթադրել է տալիս մի քանի քահանաների առկայությունն այդ կենտրոնում, իսկ այդ հանգամանքն ինքնին Աղախի հայկական համայնքի բազմամարդության ստույգ վկայությունն է հանդիսանում։ Ըստ այդմ պետք չէ տարակուսել, որ Աղախի հայ վաճառականները գործոն դեր են կատարել վենետիկյան հասարակապետության տնտեսական խոշոր նշանակություն ունեցող այդ գաղութի կյանքում. ի թիվս այլ երկրների (Ոսկե Հորդա, Միջին Ասիա, Անդրկովկաս և այլն), նրանք սերտ կապեր պետք է հաստատած լինեին նաև կենտրոնական Ռուսաստանի բաժնետիրական իշխանությունների և, մասնավորապես, Մոսկովյան մեծ իշխանության հետ։

* * *

Որքան էլ կարևոր լիներ Աղախի դերն ու տնտեսական նշանակությունը եվրոպական երկրների առևտրական կապիտալի համար, այն չէր կարող մրցակցել Ղրիմի նշանավոր կենտրոն, ջենովական առևտրական կապիտալի խարսխակայան Կաֆայի հետ, որը XIII—XV դդ. (մինչև Թուրքիայի կողմից նվաճվելը) Արևելքի և Արևմուտքի ապրանքափոխանակության հիմնական կետն էր և մի շարք կողմերով առաջ էր անցել նույնիսկ Եվրոպայի ու Ասիայի ոսկե կամուրջը համարվող Կոստանդնուպոլսից։

Այստեղ անհրաժեշտություն է զգացվում նշելու, որ IX դ. սկսած արևելյան առևտրի հուշակավոր ճանապարհն անցնում էր Ղրիմի վրայով, և Սև ծովը միջազգային ապրանքափոխանակության ասպարեզում հաջողությամբ մրցում էր Միջերկրականի հետ։ Հայաստանի պատմության համար այդ բախտորոշ ժամանակաշրջան էր. դարավոր պայքարն օտար բռնակալության դեմ պսակվեց հաջողությամբ և ժողովուրդը, թոթափելով արաբական ծանր լուծը, վերստեղծեց իր նոր պետականությունն ու տնտեսական բարգավաճման ընթացքի մեջ մտավ։ Դրան նպաստեց նաև Հայաստանի աշխարհագրական դիրքը։ Հայ վաճառականները, ամենայն հավանականությամբ հենց այդ ժամանակ, տնտեսական սերտ կապեր հաստատեցին Ղրիմի վաճառաշահ քաղաք-

---

նաև, որ 1339 թ. այստեղ մի ձեռագիր է ընդօրինակել Մկրտիչ քահանան (նույն տեղում, էջ 321). ըստ այդմ Աղախը եղել է հայ գաղթաշխարհի գրչության կենտրոններից մեկը։

[54] «ԺԴ դարի... հիշատակարաններ», էջ 328—329։

[55] Մեկ անգամ միայն. 1328 թ. մի հիշատակարանի մեջ, կոչված է «արքեպիսկոպոս... Խրիմի աշխարհին» («ԺԴ դարի...հիշատակարաններ», էջ 208)։

ների հետ, բազմամարդ գաղթավայրեր հաստատելով նրա տարբեր մասերում։ Թուրք-սելջուկների աշխարհավեր արշավանքները և հայրենի երկրի տնտեսական կյանքի հետադիմությունը, անշուշտ, ժամանակավորապես խզեցին այդ կապերը։ Ղրիմի ու ողջ Սև ծովի առևտուրն ամբողջովին իրենց ձեռքն առնելու համար հրապարակ իջան իտալական երկու առևտրական հանրապետություններ՝ Վենետիկն ու Ջենովան։ Դրանց մրցակցությունը դարավոր պատմություն ուներ։ Վենետիկը, դեռևս 1082 թ., Բյուզանդական կայսրության սահմաններում անմաքս առևտուր անելու առանձնաշնորհումներ էր ստացել։ Երբ խաչակրաց IV արշավանքի հետևանքով 1204 թ. Բյուզանդական կայսրությունը բզկտվեց և Կոստանդնուպոլիսը գրավվեց եվրոպացիների կողմից, Վենետիկը տեր դարձավ կայսրության տարածքի երեքութերորդ մասին[56] և փորձեց իր ձեռքում կենտրոնացնել սևծովյան ողջ առևտուրը։ Այստեղ, սակայն, նա համառ դիմադրության հանդիպեց ջենովացիների կողմից, որոնք նույնպես գաղութատիրական մեծ ախորժակներ ունեին։ 1169 թ. Մանվել Ա կայսեր հետ կնքած պայմանագրով, որը վերահաստատվեց Իսահակ Անգելոս կայսեր կողմից 1192 թ., ջենովացիները ստացել էին Սև ծովում առևտուր անելու բացառիկ առանձնաշնորհումներ[57]։ 1260 թ. Ջենովան ռազմական օգնություն ցույց տվեց Միքայել Պալեոլոգին՝ լատինների դեմ նրա մղած պայքարում։ Ի տրիտուր այդ օգնության նա ստացավ Կ. Պոլսի Պերա և Գալաթա արվարձանները։ 1266 թ. ջենովացիները, թույլտվություն ստանալով Մանգու խանից, նախկինում քիչ հայտնի ծովափնյա մի բնակավայրում հիմնադրեցին իրենց առևտրական կենտրոնը՝ հետագայում մեծ հռչակ ստացած Կաֆա քաղաքը[58]։ Կան հիմքեր ենթադրելու, որ ջենովացիներից առաջ այդ վայրում հաստատված են եղել հայ գաղթականներ։ Շուտով Կաֆան դարձավ միջազգային առևտրի կարևորագույն կենտրոն։ Կաֆայեցի վաճառականները, ծովային ու ցամաքային ճանապարհներով, տնտեսական սերտ կապեր ստեղծեցին մերձավոր ու հեռավոր շատ երկրների հետ։ Առանց չափազանցության կարելի է ասել, որ սկսած XIII դ. վերջերից արևելյան ապրանքների հոսքը դեպի Եվրոպա մեծ չափով կատարվում էր Կաֆայի վրայով, և միջազգային ապրանքափոխանակության ասպարեզում Սև ծովը հաջողությամբ մրցում էր Միջերկրականի հետ[59]։ Բացառիկ նշանակություն ուներ Կաֆան Ռուսաստանի և, մասնավորապես, Մոսկովյան մեծ իշխանության համար։ Ռուսական բաժնետիրական իշխանությունների մեծագույն մասը ջենովական Կաֆայում էր անմիջական շփման մեջ մտնում կենտրոնական Եվրոպայի և Միջերկրածովյան ավազանի երկրների հետ։

Անշուշտ, իրավացի է ակադ. Մ. Ն. Տիխոմիրովը, երբ գրում է. «Նովգորոդն ու Մոսկվան իրենց առևտրական ջանքերն ուղղում էին տարբեր կողմեր։ Նովգորոդյան առևտուրը կողմնորոշված էր դեպի հյուսիս, իսկ մոսկով-

56 Վենետիկի տիրապետության տակ անցան Էպիրոսը, Ակառնանիան, Էտոլիան, Հոնիական կղզիները, Պելոպոնեսը, Արխիպելագի հարավային և արևմտյան կղզիները, Դարդանելի նեղուցի և Մարմարայի ծովի մի շարք քաղաքներ, Թրակիայի քաղաքներից շատերը (Ադրիանապոլիս և այլն), Կ. Պոլսի արվարձան Պերան, Կրետե կղզին և այլն (տե՛ս *Вернер Зомбарт*. Современный капитализм, т. I, М., էջ 311)։

57 *А. Л. Якобсон*, Крым в средние века, М., 1973, էջ 79 և հտ.։

58 *Е. С. Зевакин* и *Н. А. Панчко*, նշվ. աշխ., էջ 75։

59 «История стран зарубежной Азии в средние века», изд. «Наука», М., 1970, էջ 391։

յանը՝ դեպի Հարավ։ Նովգորոդը ապրանք էր մատակարարում գերմանական Հանզյան քաղաքներին, իսկ մոսկովյան առևտրական գործարքների մասնակիցները՝ իտալական հասարակապետություններն էին՝ Ջենովան և Վենետիկը»[60]։

1475 թ. թուրքերը նվաճեցին Ղրիմը և հետագա տասնամյակների ընթացքում իրենց հսկողության տակ առան Սև ծովի ողջ ավազանը։ Ղրիմի խանը դարձավ սուլթանի հպատակ-կամակատարը։ Անցնելով թուրքական տիրապետության տակ, ղրիմյան առևտրական մայրուղին կորցրեց իր նախկին նշանակությունը։ Թուրքերը ոչ միայն Սև ծովից դուրս շպրտեցին իտալացիներին, այլև ծանր հարված հասցրին Ռուսաստանի արտաքին առևտրին։ Հետագայում, տասնամյակների մաքառումից հետո, կիսակործան Կաֆան սկսեց կենդանության նշաններ ցույց տալ։ Կաֆայեցիների համառ ջանքերով հնարավոր եղավ մասամբ վերականգնել դարերի ընթացքում ամրապնդված տնտեսական առնչությունները՝ մեկ կողմից հյուսիսային Կովկասի, Իրանի և Թուրքիայի, մյուս կողմից՝ Լեհաստանի և Ռուսաստանի հետ։

Միջնադարյան Ղրիմի տնտեսական նշանակության մասին հանրահայտ փաստերի համառոտ այս շարադրանքից հետո՝ անհրաժեշտություն է առաջանում թռուցիկ մի ակնարկով վերաշարադրելու ղրիմահայության պատմության մասին գիտությանը հայտնի փաստերը, ըստ հնարավորի որոշ լրացումներ ու ճշգրտումներ կատարելով։ Բայց մինչև այդ հարկ ենք համարում մեր վերաբերմունքը ճշգրտել ղրիմահայության պատմության կարևորագույն սկզբնաղբյուր համարված Հիշատակարանի նկատմամբ։ Այն գրանցված է 1690 թ. Ղրիմում ընդօրինակված մի Հայսմավուրքի մեջ[61]։ Հայագիտական շրջաններին Հիշատակարանի բովանդակությունը հայտնի է եղել XVIII դ. վերջերից, բայց այն՝ գրեթե ամբողջությամբ, գիտական շրջանառության մեջ է դրվել Մ. Բժշկյանի կողմից՝ 1830 թ.[62]։

Այդ Հիշատակարանի հիմնական աղբյուրը՝ XVII դ. անվանի բանաստեղծ ու եկեղեցական գործիչ Մարտիրոս Ղրիմեցու չափածո Պատմությունն է, որ հենց հեղինակի ուղղակի վկայությամբ՝ հորինված է բանավոր զրույցների հիման վրա.

Քանզի պատմագրաց չունիմք նախնական
Գրեալ վասն նորին պարզ և յայտնի բան,

60 М. Н. Тихомиров. Средневековая Москва... էջ 136։

61 Մաշտոցի անվան Մատենադարան, ձեռ. № 7442, էջ 280ա—283ա։

62 Տե՛ս Մ. Բժշկյան, Ճանապարհորդութիւն ի Լեհաստան եւ այլ կողմանս բնակեալս ի հայազանց, սերելոց ի նախնեաց Անի քաղաքին, շարադրեալ հանդերձ զանազան բանասիրական տեղեկութեամբք, Վենետիկ, 1830, էջ 335—342։ Ինչպես տեսնում ենք, նույնիսկ իր աշխատության խորագիրը Մ. Բժշկյանը կազմել է հավատ ընծայելով Հիշատակարանի այն վկայությանը, որի համաձայն Ղրիմի, Լեհաստանի և շատ այլ երկրների հայկական գաղթօջախների բնակչությունը սերունդն է հանդիսանում Անի մայրաքաղաքից արտագաղթած հայերի։ Բնականաբար, թողնելով այլ հարցերի նվիրված այս ուսումնասիրության մեջ, մենք անկարող ենք հանգամանորեն անդրադառնալ այդ գրվածքի բոլոր մասերին։ Մեզ համար կարևոր է պարզել, թե որոնք են նրա աղբյուրները և թե որչափ են նրանք արժանահավատ։ Հիշատակարանի ամբողջական հրատարակությունն իրականացրել է Գյուտ Աղանյանցը. տե՛ս «Դիվան Հայոց պատմության», գիրք Ժ, Թիֆլիս, 1911, սյուն. 489—496։

Այլ անգիր գրուցաց՝ յարմար և պատկան
Առեալ՝ կամիմ լինել նորա պատմաբան[63]։

Մարտիրոս Ղրիմեցին «անգիր գրույցներին» հետամուտ է եղել XVII դ. երկրորդ հիսնամյակում (հավանաբար 70-ական թթ.), այսինքն՝ պատմական մի ժամանակաշրջանում, երբ Ղրիմի հայկական գաղթօջախները բոլորել էին իրենց պատմական գոյության առնվազն չորրորդ շրջափուլը[64]։

Տնտեսական ու քաղաքական բազմապիսի ազդակների (աշխարհավեր պատերազմներ, ծանր հարկապահանջություն, միջազգային ապրանքափոխանակության ուղիների փոփոխություն և այլն) հետևանքով, ինչպես Ղրիմում, այնպես էլ այլ երկրներում հաստատված հայկական գաղթավայրերը ոչ միայն ապրում էին տնտեսական աշխուժացման և փլուզման միմյանց հաջորդող շրջաններ, այլև փոխում էին իրենց բնակչության կազմը. գաղթօջախների հին բնակիչները (մանավանդ տնտեսական մեծ կարողություն ունեցող վաճառականները) տնտեսական գործունեության ավելի բարենպաստ պայմաններ գտնելու հույսով, զանգվածաբար արտագաղթում էին այլ երկրներ։ Ղրիմի հայկական գաղութն այսպիսով, ինչպես վկայում են շատ աղբյուրներ, շարունակաբար զրկվել է իր նախկին բնակիչներից, որոնք արտագաղթել են այլ երկրներ, ստեղծելով հայկական նոր գաղթօջախներ (Լվով, Կամենեց-Պոդոլսկ և այլն)։ Հին բնակիչների տեղը, հետագայում, գրավել են տնտեսական ու քաղաքական զարհուրելի պայմանների հետևանքով իրենց հայրենի տները լքած նոր գաղթականներ, որոնք ինչ-որ չափով շենացրել են Ղրիմի անշքացած հայկական բնակավայրերը, հայկական թարմ շունչ հաղորդելով նրանց։ Հասկանալի է, որ այդ փոփոխությունների հետևանքով խամրում էին պատմական հիշատակները, մոռացվում պատմական դեպքերի հաջորդական օղակներից շատերը, գունազարդվում շատ եղելություններ։ Այս բոլորից հետո դժվար չէ համոզվել այն բանում, որ XVII դ. երկրորդ կեսերին ղրիմահայերի միջավայրում պատմվող «անգիր գրույցները» հավաստի շինանյութ չէին կարող լինել ստույգ պատմության կերտելու համար։

Եվ այսպես, ձեռքի տակ չունենալով պատմական ստույգ աղբյուրներ, և հավատ ընծայելով ղրիմահայության որոշ շրջաններում տարածված զրույցներին, Մարտիրոս Ղրիմեցին հանգել է այն եզրակացության, որ ղրիմահայության հիմնական զանգվածն Անի մայրաքաղաքից է արտագաղթել Ղրիմի թերակղզի ու հաստատվել Կաֆա քաղաքում 1331 թ.՝ մինչև այդ երկար

---

[63] Ս. Ա. Մարտիրոսյան, Մարտիրոս Ղրիմեցի, Երևան, 1958, էջ 143։

[64] Ղրիմահայ գաղթօջախների պատմությունը կարելի է բաժանել չորս հիմնական շրջափուլերի. ա) Բագրատունյանց շրջան. այս շրջանում ստեղծված տնտեսական կապերը Ղրիմի թերակղզու հետ խզվում են, և հայկական գաղթօջախները խամրում են սելջուկյան արշավանքների ու տիրապետության առաջին շրջանում։ բ) Կրկին աշխուժանում են XII դ. վերջերին և XIII-ի սկզբներին, երբ պատմական Հայաստանի մի զգալի մասն ազատագրվում է սելջուկյան լծից։ գ) Նոր թափ են ստանում Իլխանության շրջանում, երբ Ջենովայի ու Վենետիկի առևտրական կապիտալի ջանքերով Սև ծովը առաջնային նշանակություն է ստանում՝ միջազգային չափանիշներով։ դ) Թուրքերի կողմից Կոստանդնուպոլսի և Կաֆայի նվաճումը ծանր հարված է հասցնում Ղրիմի առևտրական կենտրոններին։ Մի քանի տասնամյակ հետո միայն Կաֆան ուշքի է գալիս, վերականգնվում են նրա տնտեսական աշխարհատարած կապերի մի մասը, սակայն քաղաքն այլևս երբեք չի հասնում իր նախկին բարգավաճ վիճակին։

ժամանակ ապրած լինելով Վոլգայի գետաբերանի մերձակայքում գտնվող Աղսարայ կոչված քաղաքում։

Չափածո այս գրվածքը Մարտիրոս Ղրիմեցուց մեկ-երկու տասնամյակ հետո (1690 թ.), ավելի ընդարձակելով, ճոխացնելով և պատմական հիշատակարանի ձև տալով, մուծել է Հայսմավուրքի մեջ Դավիթ Ղրիմեցի անունով մի գրիչ։ Նրա պատկերացմամբ Անի մայրաքաղաքի բնակչությունը, մոնղոլների կողմից քաղաքը գրավվելուց հետո (այդ դեպքը կատարվել է 1236 թ.), ցրվել է աշխարհով մեկ. «Ոմանք գնացին ի Ճուղայ,— գրում է նա,— ոմանք ի Վան, և այլք ի Սիս. եւ այլք Ախսարայ եկին, հրաման առեալ ի Թաթար խանէն բնակեցան անդ ոչ բազում ժամանակս, որ էր զայս ՉԽԸ (1299) թուին»։

Անիի բնակչության արտագաղթի և Ջուղայում, Վանում, Սսում կամ պատմական Հայաստանի մի այլ կենտրոնում խարիսխ նետելու մասին այս հայտարարությունը չի հաստատվում XIII դ. մեր արժանահավատ սկզբնաղբյուրների՝ պատմագիրների և հիշատակարանների հաղորդած տվյալներով։ ՉԽԸ (1299) թվականը աղաղակող անախրոնիզմի արդյունք է։ Եվ եթե դրան ավելացնենք նաև Աղսարայ քաղաքի գտնվելու վայրի մասին Մարտիրոս Ղրիմեցու և Հիշատակարանի հեղինակի պատկերացումների իրարամերժ բովանդակությունը (ըստ Մ. Ղրիմեցու Աղսարայը գտնվել է Վոլգայի գետաբերանում, իսկ ըստ Հիշատակարանի՝ «ի մէջ Հաշտարխանու և Ղազանու»), ապա պարզ կլինի, որ երկու հեղինակներն էլ ո՛չ բավարար գիտելիքներ են ունեցել և ո՛չ էլ վստահելի նյութ՝ ղրիմահայության քիչ թե շատ հավաստի պատմություն շարադրելու համար։

Միանգամայն անհիմն ու հեքիաթային է նաև այդ զույգ աղբյուրների պնդումն այն մասին, որ Աղսարայում հաստատված հայերը («իշխանք և ազնիւք և հասարակ ժողովուրդք»), պայման կապելով ջենովացիների իշխանի հետ, որ բնակվում էր «ի Ֆռանկհիսարին Ֆէօտոսիու» Ղրիմ են փոխադրվում ճեղքելով հսկայական այդ տարածությունը՝ Աղսարայից մինչև Կաֆա, զինված պայքար մղելով թաթարների դեմ («վառեալք զինու, պատերազմելով ընդ թաթարացն, ճեղքեալ գան ի Ղրիմ»)։

Ջենովացիների և հայերի բարգավաճ վիճակը և կարևոր դերը միջազգային առևտրի մեջ XIII—XV դդ., սերտորեն առնչված էր Ոսկե Հորդայի հետ ունեցած նրանց տնտեսական կապերի հետ։ Թաթարների դեմ հայերի զինված ընդհարումը XIV դ. 30-ական թթ. բացառված է, քանի որ հայերը Կաֆայում և Ղրիմի մյուս կենտրոններում բնակություն էին հաստատում հաշվի առնելով հենց այդ կենտրոնների դերը միջազգային առևտրի մեջ, իսկ այդ առևտուրը չէր կարող բարգավաճել առանց Ոսկե Հորդայի վրայով անցնող առևտրական մայրուղիների։

Նկատի ունենալով այս և մի շարք այլ փաստեր, կարելի է եզրակացնել, որ Հիշատակարանի հիման վրա անհնարին է ճիշտ պատկերացում կազմել միջնադարյան հայկական ամենախոշոր ու նշանակալից գաղթօջախի՝ Ղրիմի հայոց պատմության հանգամանքների մասին։

Մարտիրոս Ղրիմեցու Պատմության և Հիշատակարանի մեջ շատ մեծ տեղ է հատկացված XVII դ. երկրորդ կեսերին ղրիմահայ գաղութում տնտեսական դրքով ու փարթամությամբ հռչակված մեծահարուստ ընտանիքների ծագման հարցերին։ Այդ հեղինակները, նույնիսկ տարրական գիտելիքներ

չունենալով միջնադարյան Հայաստանի ֆեոդալական տների ծննդաբանության և պատմական աշխարհագրության վերաբերյալ, ազնվական ծագում են վերագրել Պատմության պատվիրատուներին, մեկ հարվածով նրանց շաղկապելով միջնադարյան Հայաստանի գրեթե բոլոր իշխանական տների հետ։ Զավեշտական երանգ ունեն Հիշատակարանի այն տողերը, որոնք կոչված են բացահայտելու Բագրատունիների և Պահլավունիների հետ շաղկապվել երազող Աբրահամի որդի Տրդատի գերդաստանի տոհմաբանական շղթայի հին օղակները։

Հիշատակարանի հեղինակը տեղեկություն ունի, որ նրա նախնիները 1602 թ. Ջալալիների խժդժությունների հետևանքով Ղրիմ են ներգաղթել Պարսից աշխարհից։ Սրանց ազնվական ծագումը «հաստատելու» համար հարկ է եղել վերարծարծել ունիթոռների երդվյալ հակառակորդ Մաղաքիա Ղրիմեցու հիշատակը, նրա հետ Ղրիմից դեպի Հայաստան առաքել նրա ազգականներից մեկին («պարոն եղբօր որդուն»), որպեսզի սա, ինչ-որ հրաշքով, առնչվի Սյունյաց ոմն իշխան Իվանեի հետ, լինի նաև Աղթամարում և Նախիջևանում, սերունդներ ունենա, որոնցից սերված Աբրահամը կրկին վերադառնա Ղրիմ, Բագրատունի-Պահլավունի նորածիլ գերդաստանի հիմնադիրը հանդիսանալու համար[65]։

Ի՞նչ բանի համար է ստեղծված այս հեքիաթը։ Այս հարցի պատասխանը դյուրությամբ գտնում ենք, երբ հաշվի ենք առնում, որ «ազնվական» այս գերդաստանի բարեհիշատակ շառավիղ Տրդատ «Պահլավունին», իր քրոջ՝ Աննայի հետ միասին կառուցել է տվել Կաֆայի Ս. Նիկողայոս եկեղեցին, հանդիսացել է միաժամանակ այն անձնավորությունը, որի պատվերով Հիշատակարանի վերջում տեղադրվել է նրա իսկ ցանկությամբ կազմված ազգաբանական ծառը, և հրահանգ է տրվել գալիք սերունդներին՝ աճեցնել ծառի ճյուղերը հետագա ժառանգների անուններով[66]։

Ըստ այդմ Բագրատունի և Պահլավունի կոչվել ցանկացող Տրդատ Կաֆայեցու և նրա նախնիների հիշատակը հավերժացնելու անսքող մտահոգությամբ ստեղծված Պատմությունն ու Հիշատակարանը չեն կարող համարվել արժանահավատ այնպիսի աղբյուրներ, որոնց հիման վրա կարելի լիներ շարադրել ղրիմահայ գաղթօջախների ստույգ պատմությունը։ Հանգելով այս եզրակացությանը, մենք բնավ էլ այն կարծիքին չենք, թե նրանց մեջ դույզն

---

65 Մեջ ենք բերում Հիշատակարանի այդ հատվածն ամբողջությամբ։ «Տէր Մաղաքիայն ընդ պարոն եղբօր թոռոյն Պետրոսի եկեալ ի Ղրիմոյ գնացին ի յԱղթամարայ (այսպես— Լ. Խ.) առ Յօհաննէս վարդապետն, որ էր պարոն եղբօր որդի տէր Մաղաքիային և եղբայր Պետրոսի՝ հօրն Անանիային, որք էին որդիք Իվանայ, ի տոհմէ Պալհաւունեանց, ի զաւակէն Բրտանայ, ի քաղաքէն Վանանդու։ Զի Պետրոսս այս ծնաւ ի Նախիջևան քաղաքի զԴաւիթ, Դաւիթ զՍեդրակ, Սեդրակ զՄարգար. Մարգար զՍակի, Սակի զԱբրահամ...» և այլն (տե՛ս Մաշտոցի անվան Մատենադարան, ձեռ. № 7442, էջ 282բ)։ Այս տողերի հեղինակը պարզ երևում է, որ Թովմա Մեծոփեցուց և Հայսմավուրքից բացի ուրիշ «աղբյուր» չի ունեցել։ Տարբեր առիթներով այնտեղ պատմված առանձին դրվագներ (Մաղաքիա Ղրիմեցու Հայաստան գալը, Իվանե Օրբելյանի հետ կապված անցուդարձերը և այլն) շաղկապելով միմյանց, նա «ստեղծել» է իրենից ակնկալվող տոհմաբանական ծառը, ճիշտ այն հիմունքներով, ինչպես դրանք ուշ միջնադարում ստեղծվում էին ամենուրեք։

66 Այս մասին դեռևս մեր դարի առաջին թվականներին հետաքրքրական ու ճիշտ դատողություններ է արել Երվանդ Շահազիզը (տե՛ս «Նոր-Նախիջևանը և նոր-նախիջևանցիք», Թիֆլիս, 1903, էջ 26—27)։

իսկ չափով չկան պատմական անցուդարձերի իրական հիշատակներ։ Հավատացած ենք, օրինակ, որ ղրիմահայերը իրենց շաղկապել են Բագրատունյաց Հայաստանի մայրաքաղաք Անիի հետ ոչ միայն փառավոր անցյալով պճնվելու համար, այլև հենվելով պատմական հիմք ունեցող որոշ իրողության վրա. Անիի մեծահարուստ վաճառականներն էին առաջին հերթին (Արծնի, Կարսի և հայկական այլ քաղաքների վաճառականների հետ միասին), որ գործարար կապեր հաստատեցին Ղրիմի ծովափնյա քաղաքների հետ, նրանցից շատերում ստեղծեցին հենակետեր, պահեստներ ու մշտական կայաններ, որոնք հետագայում դարձան կենսունակ գաղթօջախներ[67]։

Պատմական ենթահող է նկատվում նաև XIV դ. 30-ական թթ. Աղսարայ քաղաքից մեծ թվով հայերի դեպի Կաֆա և Ղրիմի այլ քաղաքներ կատարած զանգվածային ներգաղթի զրույցի մեջ։ Մարտիրոս Ղրիմեցու կարծիքով Աղսարայը Ոսկե Հորդայի հին մայրաքաղաք Սարայ-Բաթուն է։ Իսկ ինչպես գիտենք, 1330-ական թվականներին էր հենց, որ դադարեց գոյություն ունենալուց Սարայ-Բաթուն, նշանավոր այն քաղաքը, ուր ապրում էին մեծ քանակությամբ հայեր, ունենալով իրենց եկեղեցին (զույգ՝ եկեղեցիները) և թեմական առաջնորդը։ Սարայ-Բաթուի անկման և Կաֆայի ծաղկման թվականների զարմանալի համընկնումները դժվար կլիներ պատահականության արդյունք համարել։ Ըստ այդմ ղրիմահայերի միջավայրում գոյություն ունեցող անգիր զրույցներից քաղված տվյալը 1330 (կամ 1331 կամ 1340) թվականին Աղսարայից Ղրիմ կատարված մեծ ներգաղթի մասին՝ որոշակի արժեք է ներկայացնում. ոչ այն առումով, որ ղրիմահայ գաղթօջախներն ստեղծվել են հենց այդ ներգաղթի հետևանքով (ինչպես կարծել են շատերը), այլ այն լուսաբանությամբ, թե այդ տարիներին, իրոք, Ղրիմի քաղաքներում բնակություն են հաստատել Վոլգայի գետաբերանից գաղթած բազմաթիվ հայ ընտանիքներ, որոնք նոր շունչ են հաղորդել վաղ ժամանակներից գոյություն ունեցող ղրիմահայ գաղթօջախներին։

Այսպիսով պարզ է դառնում, որ վաղուց ի վեր գիտական շրջանառության մեջ դրված Հիշատակարանը (Մարտիրոս Ղրիմեցու չափածո Պատմության հետ միասին) ուշադրության արժանի խիստ անբավարար տեղեկություններ է պարունակում ի նպաստ ղրիմահայ գաղթօջախների ստեղծման ժամանակագրական հարցերի և վաղ շրջանի պատմության ուսումնասիրության։ Այդ

67 Այս առիթով ընթերցողների ուշադրությունն ենք հրավիրում մի փաստի վրա, որը համոզիչ համարվելով կարող է լրացուցիչ կռվան դառնալ Անիի և Ղրիմի միջև XIII դ. և նրանից առաջ գործարար տնտեսական կապերի առկայությունը հաստատելու համար։ XIII դ. սկզբներին Անի քաղաքում տնտեսական բացառիկ դիրքի էին հասել Հոնենց կոչվող գերդաստանի անդամները, հատկապես Սմբատորենց Սուլեմայի որդի Տիգրան Հոնենցը, որը հսկայական հարստություններ էր դիզել՝ զբաղվելով առևտրական ու վաշխառուական ընդարձակ գործարքներով։ Նրա գործունեության մասին հետաքրքրական տեղեկություններ են գրանցված իր իսկ կողմից Անիում կառուցված եկեղեցու պատին փորագրված ընդարձակ արձանագրության մեջ (տե՛ս «Դիվան հայ վիմագրության», պրակ I, Անի քաղաք, կազմեց Հ. Ա. Օրբելի, Երևան, 1966, էջ 63)։ Միջնադարյան հայկական շատ աղբյուրներում (հատկապես ձեռագրական հիշատակարանների մեջ) Ղրիմի արևելյան ծովափը կոչվում էր Հոնաց աշխարհ. հաշվի առնելով այդ իրողությունը, կարելի է հետևցնել, որ Հոնենց գերդաստանի անունն առնչվում է հենց Հոնաց աշխարհի հետ։ Նրանք, ըստ երևույթին, տնտեսական սերտ կապեր են ունեցել առաջին հերթին Հոնաց աշխարհի (Ղրիմի) հետ, կամ էլ Անիում բնակություն են հաստատել՝ մինչ այդ ապրած լինելով Ղրիմում։

բացը վերացնելու համար այլ կարգի սկզբնաղբյուրների կարիք է զգացվում։ Բարեբախտաբար, այդպիսի սուուցգ աղբյուրներ՝ դիվանական փաստաթղթեր (նկատի ունենք հատկապես Ջենովայի արխիվներում պահպանված նյութերը), ձեռագրական հիշատակարաններ, ժամանակագրական տվյալներ և այլն՝ գոյություն ունեն բավարար քանակությամբ, և դրանց ժողովման, դասդասման ու մասնագիտական քննարկման գծով տարվող աշխատանքները նոր են միայն լայն ծավալ ստանում։

Հայկական հիշատակների անսպառ շտեմարան է հանդիսանում նաև Ղրիմի թերակղզին՝ վերգետնյա ու ստորգետնյա իր հուշարձաններով։ Չեռնարկելով դրանց համակողմանի ուսումնասիրությանը, ղրիմահայ գաղթօջախների պատմության հարցերը քննարկող մասնագետները կարողացել են ամբողջական պատկերն ուրվագծել եվրոպական որոշ աղբյուրներում «Ծովային Հայաստան» կոչված այդ թերակղզու հայկական գաղթօջախների պատմության[68]։

Ստորև փորձելու ենք համառոտակի վերաշարադրել այդ պատմության հիմնական դրվագները, կատարելով որոշ ճշգրտումներ ու լրացումներ։

* * *

IX—X դդ. հայ ժողովուրդը, Բագրատունիների գլխավորությամբ տևական և համառ պայքար մղելով արաբական բռնատիրության դեմ, թոթափեց օտար տիրապետության դարավոր լուծը և մտավ սոցիալ-քաղաքական ու տնտեսական բարգավաճման ընթացքի մեջ։ «Շնորհիվ միջազգային առևտրի գլխավոր ճանապարհներից մեկի վրա ունեցած իր դիրքի,— գրել է ակադ. Հ. Մանանդյանը,— Բագրատունյաց Հայաստանը... դառել էր իդեալական չեզոք երկիր տարանցիկ առևտրի և միջազգային հարաբերությունների համար»[69]։

Հեռավոր արևելյան երկրներից ցամաքային ու ծովային ճանապարհներով Պարսկաստան ներմուծվող և այդտեղից Հայաստանի վրայով դեպի Բյուզանդիա ու եվրոպական երկրներ արտահանվող ապրանքները (հում մետաքս, մետաքսե ոսկեհուռ գործվածքներ, համեմունք, բուրումնավետ նյութեր, թանկագին քարեր և այլն), ինչպես նաև հենց Հայաստանի քաղաքներում (մասնավորապես Դվինում և Անիում) արտադրվող ապրանքներ (գորգեր, բրդե զգեստներ, օթոցներ, ժանյակներ, գոտիներ, մետաքսե գործվածքներ, արծաթագործության և ոսկերչության արտադրանք, բարձրորակ ներկեր

---

68 Նկատի ունենք հատկապես Խ. Փորքշեյանին և Վ. Միքայելյանին, որոնց արժեքավոր ուսումնասիրությունները բազմիցս վկայակոչելու ենք հաջորդ էջերում։

69 *Я. А. Манандян*. О торговле и городах Армении в связи с мировой торговлей древних времен, 2-ое изд., Ереван, 1954, էջ 203։ Հ. Մանանդյանը վկայակոչում է Վ. Գուրկո-Կրյաժինին, որը նույնպես շեշտել է Հայաստանի բացառիկ նշանակությունն այդ շրջանում՝ «իբրև միակ տարանցիկ ճանապարհ, երկու կռվող կողմերի (իմա՝ Բյուզանդական կայսրության և արաբական խալիֆաթի—Լ. Խ.) առևտրական հարաբերությունների համար» (տե՛ս *В. Гурко-Кряжин*. Прошлое и настоящее Советской Армении. «Новый Восток», кн. 16—17, 1927, էջ 206)։

և այլն)[70], Հայաստանով անցնող կարավանային ճանապարհներով[71], մեծ մասամբ հենց հայ վաճառականների ջանքերով, հասցվում էին Սև ծովի հարավ-արևելյան նավահանգիստները, այնուհետև դեպի Կոստանդնուպոլիս, դեպի Դանուբի գետաբերան ու դեպի Ղրիմ։

Միջազգային առևտրի մեջ ներգրավված հայկական քաղաքների տնտեսական զարգացման ու հեռավոր երկրների հետ հաստատված կապերի մասին բավարար տեղեկություններ չեն պահպանվել։ Ուշագրավ են հատկապես Արիստակես Լաստիվերցու տվյալները Անի, Կարս և Արծն «հոյակապ», «ականավոր» ու «տիեզերահռչակ» քաղաքների մասին, որոնք «ի ծովէ և ի ցամաքէ ամբարեալ» փարթամացել էին «բազում ընչեղութեամբ» և մեծ հռչակ ձեռք բերել ամբողջ աշխարհում[72]։

Ղրիմը, անտարակույս, այն երկրամասն էր, ուր ամենից շատ էին այցելում հայ վաճառականները։ Հնագիտական շատ նյութեր, որ հայտնաբերվել են Ղրիմի տարբեր վայրերում (հատկապես Խերսոնեսում), հայկական մշակույթի անվիճելի ազդեցության հետքեր են կրում՝ վկայելով հայ տարրի գոյությունն այդ երկրամասում տակավին IX—XII դդ.[73]։ Այդ իրողությունը հաստատող գրավոր աղբյուրները, սակայն, XIII դ. երկրորդ հիսնամյակից

---

70 Հայաստանի քաղաքներում արտադրվող ու հեռավոր երկրներ արտահանվող ապրանքների տեսակների ու բարձր որակի մասին բազմաթիվ տեղեկություններ են գրանցված արաբական (ալ-Իսթախրի, իբն-Հաուկալ, ալ- Մուկադդասի և այլն) և պարսկական (Հուդուդ ալ-Ալամ) աղբյուրներում։ Դրանց մեծագույն մասը գիտական շրջանառության մեջ է դրել Ն. Լ. Կարաուլովը։ Տե՛ս Н. А. Караулов. Сведения арабских писателей о Кавказе, Армении и Азербайджане. «Сборник материалов для описания местностей и племен Кавказа», вып. XXIX (Тифлис, 1901), вып. XXXI (1902), вып. XXXVIII (1903). Այս նյութերը լայնորեն օգտագործվել ու մեկնաբանվել են Հ. Մանանդյանի, Բ. Առաքելյանի և այլոց աշխատություններում։

71 Այդ ճանապարհի սկզբները գտնվում էին հեռավոր արևելյան երկրներում՝ Չինաստանում, Հնդկաչինում, Հնդկաստանում, Արաբական և Աֆրիկյան երկրամասերում։ Ծովային ճանապարհներով այդ երկրների արտադրանքը հասցվում էր Պարսից ծոցի Բասրա նավահանգիստը, իսկ այդտեղից՝ դեպի Բաղդադ ու Թավրիզ (Ф. И. Успенский, Морское и сухопутное движение из центральной Азии в Европу и обратно в XIII—XIV вв. «Византийский временник», т. II (XXVII), էջ 271 և հտ.)։

Թավրիզից Հայաստան էր մտնում բանուկ այն ճանապարհը, որ հայկական Մարանդ քաղաքում բաժանվում էր երկու ճյուղի։ Մեկ ճյուղն անցնում էր Նախճավան—Դվին—Անի գծով, ուղղություն վերցնում Կարսի և Արտանուջի վրայով դեպի Ճորոխի գետաբերանը կամ էլ Կաղզվանի, Վաղարշակերտի, Արծնի ու Բաբերդի (ինչպես նաև Կարինի ու Երզնկայի) վրայով՝ դեպի Տրապիզոն։ Մյուս ուղեգիծը Մարանդից՝ Հերի (Խոյ) վրայով մտնում էր Վասպուրական, անցնում Վան, Բերկրի, Արճեշ քաղաքներով և Վաղարշակերտում միանում նախորդ ուղեգծին։ Կարևոր նշանակություն ուներ նաև Բաղդադից սկիզբ առնող այն ճանապարհը, որ Մերդինի ուղեգծով մտնում էր պատմական Հայաստանի հարավային շրջանները, անցնում հիմնականում հայ բնակչություն ունեցող Ամիդ—Խարբերդ—Մելիտինե—Սեբաստիա—Եվդոկիա (Թոխաթ)—Ամասիա քաղաքներով և կապվում էր Սև ծովի Սամսոն և Սինոպ նավահանգիստներին (տե՛ս «Հայ ժողովրդի պատմություն, 3-րդ հատորի (Երևան, 1976) մեջ տեղադրված «Հայաստանը և հարևան երկրները 855—953 թթ.» շատ արժեքավոր քարտեզը)։

72 Հմմտ. «Պատմութիւն Արիստակիսի Լաստիվերտցւոյ», աշխատասիրությամբ Կ. Ն. Յուզբաշյանի, Երևան, 1963, էջ 74, 75, 83, 133 և այլն։ Ուշագրավ է նաև բյուզանդական պատմագիր Միքայել Ատտալիատեսի վկայությունն Արծն քաղաքի մասին, ըստ որի այնտեղ վաճառվում էին Պարսկաստանից, Հնդկաստանից և Ասիական այլ երկրներից ներմուծվող ապրանքներ (Я. А. Манандян, նշվ. աշխ., էջ 215—216)։

73 А. Л. Якобсон, նշվ. աշխ., էջ 86—103։

են սկսում բազմանալ, կապված լինելով ջենովական արխիվներում պահպանված նյութերի հետ։

Ե՞րբ են հայերը հաստատվել Ղրիմում. այս հարցը հուզել է շատ ուսումնասիրողների։ Դեռևս անցյալ դարի 80-ական թթ. Ֆ. Բրունը, քննարկելով հարցին առնչվող սկզբնաղբյուրները, հանգել է այն եզրակացության, որ այդ կատարվել է ջենովացիների ու թաթարների Ղրիմում հաստատվելուց շատ առաջ[74]։

Ավելի հանգամանորեն հարցի գիտական քննությամբ զբաղվել է Խ. Փորքշեյանը։ Ջենովայի սուրբ Գեորգ բանկի արխիվում պահվում են 1290, 1313 և այլ թվականներին շարադրված փաստաթղթեր, որոնց մեջ հիշատակություններ կան Կաֆայի հայոց եպիսկոպոսին պատկանող ջրմուղի մասին։ 1316 թ. Կաֆայի ջենովական հյուպատոսին հասցեագրված մի գրության մեջ հրահանգված է հեռու մնալ քաղաքի այն հողամասից, որի վրա գտնվում են երեք հայկական եկեղեցիներ, երկուսը՝ գործող, մեկը՝ կիսակործան։ 1281—1290 թթ. գրանցված առևտրական մի շարք պայմանագրեր անհերքելիորեն հաստատում են, որ հայերը մեծ դեր են կատարել Ղրիմի տնտեսական կյանքի տարբեր ոլորտներում։ Նրանց մեջ տարբեր առիթներով հանվանե հիշատակված են կաֆայեցի բազմաթիվ հայեր. Տրապիզոն ցորեն փոխադրելու համար նավ վարձողներ, Սիրիա դրամ փոխադրողներ, Սինոպ ապրանք առաքողներ, իրենց արհեստի արտադրանքը վաճառքի հանողներ և այլն։

Մեջ բերելով այս կարգի ծանրակշիռ այլ փաստեր ևս, Խ. Փորքշեյանը վերջնականորեն ապացուցել է, որ հայերը Ղրիմում (մասնավորապես նրա արևելյան ծովափերին) հաստատվել և կարևոր դեր են ստանձնել՝ ջենովացիներից շատ առաջ[75]։ 1316 թ. Կաֆայում կիսակործան հայկական եկեղեցու գոյության փաստն ինքնին զորավոր ապացույց է այդտեղ կազմակերպորեն ձևավորված հայկական գաղութի առկայության՝ այդ տարեթվից առնվազն 2—3 հարյուրամյակ առաջ (հայկական քարաշեն տաճարները շատ ավելի երկար ժամանակ էին կանգուն մնում)։

Ղրիմի հայկական գաղթօջախների ժամանակագրական հարցերին անդրադարձել է նաև Վ. Միքայելյանը[76]։

Ղրիմի հայկական գաղթօջախներից շատերը և հատկապես Կաֆան ու Սուրխաթը եղել են հայ գրչության ու մանրանկարչության նշանավոր կենտրոններ[77]։ Նրանցում ընդօրինակված հայերեն ձեռագրերից շատերը պահպանվել ու հասել են մեզ՝ փաստահեղ վկաները հանդիսանալով հայկական գաղթօջախների բնակչության գեղագիտական բարձր ճաշակի ու գրասիրության։ Ժամանակագրական առումով դրանք շատ հին չեն. Ղրիմում ստեղծված և մեզ

74 Ф. Брун. Черноморье, ч. II, Одесса, 1880, էջ 137 և հտ.։

75 Խ. Ա. Փորքշեյան, Ե՞րբ է կատարվել հայերի մուտքը Ղրիմ, «Պատմա-բանասիրական հանդես», 1962, № 2, էջ 104—117։ Հարկ է նշել, որ հանձինս Խ. Փորքշեյանի մենք ունեցել ենք հայ գաղթավայրերի (ղրիմահայության, չերքեզահայության, Նոր-Նախիջևանի հայության) պատմության հարցերի հմուտ ու խորագնին մի ուսումնասիրող, որի վաստակն ըստ արժանվույն չի գնահատվել։

76 Վ. Ա. Միքայելյան, Ղրիմի հայկական գաղութի պատմություն, Երևան, 1964, էջ 41—66 ևն։

77 «ԺԴ դարի ...հիշատակարաններ» ժողովածուի մեջ տեղ են գտել Ղրիմի տարբեր վայրերում ընդօրինակված 70-ից ավելի ձեռագրերի հիշատակարաններ, դրանցից 42-ը հատկապես շարադրված են Սուրխաթում, 20-ը՝ Կաֆայում, մյուսները այլ բնակավայրերում ու վանքերում։

հայտնի հնագույն հայերեն ձեռագիրն ընդօրինակված է 1328 թ., XIV դ. 30-ական թթ. պահպանվել են 2, 40-ական թվականներից՝ 6 ձեռագիր։ Երբ ուշադրությամբ ծանոթանում ենք դրանց հիշատակարաններին, դարձյալ հանգում ենք այն եզրակացության, որ Ղրիմում հայկական գաղթօջախներ գոյություն են ունեցել XIV դ. շատ առաջ։ 1328 թ. շարադրված հիշատակարանի մեջ, օրինակ, որպես Ղրիմի հայ արքեպիսկոպոս հիշատակված է Ստեփանոսը՝ եղբայրը պարոն Տուրայի, որ անվանված է «վերադիտող խրիմին»[78]։ Մեկ ուրիշ հիշատակարանից տեղեկանում ենք, որ այս Ստեփանոսը որդին է Սուղդացի (Սուրոժցի) Գրիգոր քահանայի։ 1320-ական թթ. արդեն եպիսկոպոս դարձած Ստեփանոսը անտարակույս ծնված պետք է լիներ դրանից առնվազն 30 տարի առաջ, ուստի XIII դ. վերջերին։ Պարզ է, ուրեմն, որ այդ ժամանակ Սուղդայում (Սուրոժում) ապրել է ոմն Գրիգոր քահանա՝ հայրը պարոն Տուրայի և Ստեփանոսի, այլ խոսքով՝ Կաֆայի և Սուրոժի հայկական գաղութների գոյությունը XIII դ. հաստատվում է նաև հայերեն հիշատակարանների տվյալներով։

1334 թ. Կաֆայում շարադրված մի հիշատակարանի մեջ[79] թվարկված են մի քանի կաֆայեցի հայեր, որոնք իրենց կարողության համեմատ նպաստել են մի ձեռագիր Հայսմավուրքի ընդօրինակության աշխատանքներին։ Հատկապես նշանակալից է մանկավագ Կաղուրի հիշատակությունն այդ ձեռագրի մեջ. եթե վերհիշենք, որ մանկտավագ կամ մանկավագ էին կոչվում հայկական միջնադարյան քաղաքների երիտասարդ առևտրականներին ու արհեստավորներին միավորող կազմակերպությունների՝ կտրիճվորաց եղբայրությունների ղեկավարները[80], ապա պարզ կլինի, որ 1334 թվականին արդեն հայկական Կաֆան օժտված է եղել միջնադարյան հայկական քաղաքներին բնորոշ հասարակական կազմակերպություններով, ուստի որպես համայնք կազմակերպվել է XIV դ. 20-ական թթ. շատ առաջ։

Նույն այդ ձեռագրում, որի մեջ հիշված է մանկավագ Կաղուրը, տվյալ կա նաև Կաֆայի մերձակայքում գոյություն ունեցող Գամճակ (կամ Քամճակ) հայկական վանքի մասին, որի շրջակայքում կառուցվել է Աստվածածնի անվան մի նոր եկեղեցի։ Վանական հաստատության առկայությունն իր հերթին այդ գաղթավայրի հնության, բազմամարդության և նյութական բարօրության պերճ վկայություն պիտի համարել։

Նույնը կարելի է ասել նաև Սուրխաթի մասին (հին հիշատակարանների քաղաքն ավելի շատ կոչված է Սուլխաթ կամ Ղրիմ)։ Մեծ հավանականությամբ այստեղ՝ XIV դ. 40-ական թթ. բազմավաստակ գրիչ Նատերի կողմից ընդօրինակված է մի Ճաշոց գիրք՝ բազմաթիվ մանր հիշատակագրություններով։ Դրանց մեջ որպես գրքի ընդօրինակության գործին նյութապես օժանդակողներ հիշված են մի քանի տասնյակ քաղաքացիներ՝ տղամարդ ու կին, որոնցից շատերը ծանուցվել են իրենց մասնագիտությունը նշող անվանումներով։ Ըստ այդմ պարզ է դառնում, որ այդ քաղաքում ապրել են հետևյալ արհեստի .

---

78 «ԺԴ դարի... հիշատակարաններ», էջ 208։

79 Տե՛ս Բ. Սարգիսյան, Մայր ցուցակ հայերէն ձեռագրաց մատենադարանին Մխիթարեանց ի Վենետիկ, Բ, 1924, էջ 511—512 (նաև «ԺԴ դարի...հիշատակարաններ», էջ 265—266)։ Այդ ձեռագրի գրության թվականը որոշ չէ. կարող է լինել նաև 1305-ը։

80 Լ. Խաչիկյան, Երզնկայում 1280 թ. կազմակերպված «եղբայրությունը», «Տեղեկագիր», 1951, № 12, էջ 79—81։

տեր մարդիկ՝ կոշկակար, բազազ, ճոն, ջուլհակ, ոսկերիչ, ներկարար, դանկրար-դանակագործ, կտավագործ, քթանագործ, ալրեփեց, հուս (հյուսն), թավկիր, դերձակ, դարբին, գինեձախ, սանրագործ, այգեպան (թվարկումն կատարում ենք ըստ ձեռագրի համապատասխան գրանցումների հաջորդականության)[81]: Այսպիսով, Սուրխաթի հայ գաղութում ապրել ու աշխատել են բազմապիսի արհեստների տեր անձինք, իսկ այդ կարող էր լինել գաղութի սկզբնավորումից առնվազն մի քանի տասնամյակ (եթե ոչ հարյուրամյակ) հետո:

Ղրիմահայ գաղթօջախների հնության վկայություններ են նաև վիմական բազմաթիվ այն արձանագրությունները, որոնք տակավին նախանցյալ դարի կեսերին պահպանված են եղել Կաֆայի և այլ քաղաքների հայկական եկեղեցիների պատերին, կամ խաչքարերի վրա (դրանցից մի քանի տասնյակ միավորներ կաֆացիներն իրենց հետ փոխադրել են Նոր Նախիջևան և երկյուղածությամբ օգտագործել նոր եկեղեցիների կառուցման ժամանակ):

Որոշ ուսումնասիրողներ (նկատի ունենք հատկապես Խ. Քուչուկ-Հովհաննիսյանին), բավարար գիտելիքներ չունենալով հայ վիմագրությունից, հրատարակել են հայկական մի շարք վիմական արձանագրություններ, որոնցից շատերն ունեցել են ստույգ տարեթիվ: Եթե դրանք ճիշտ վերծանված լինեին, մենք հնարավորություն կունենայինք այսօր խոսք բացելու նաև Կաֆայի հայ բնակչության մասին տակավին XI դ., բայց ինչպես ասված է արդեն[82], վերծանումների զգալի մասը եղել է սխալ կամ հույժ կասկածելի: Ըստ այդմ ղրիմահայ վիմագրական նյութերի ուսումնասիրության արդի վիճակը թույլ չի տալիս դրանք ևս օգտագործելու ժամանակագրական հարցերի պարզաբանման համար:

Ղրիմի վերը հիշատակված վաճառաշահ կենտրոններում, ինչպես նաև այլ քաղաքներում (Խերսոնես, Մանգուպ և այլն) XIII դ. առաջ հայ բնակչության առկայության մասին պատմագիտական գրականության մեջ արդեն հավաքված բոլոր տվյալների թվարկումով՝ մենք շատ պիտի հեռանայինք առաջադրված նպատակից: Ժամանակագրական հարցերից ավելի կարևոր նշանակություն ունեն Ղրիմի նշանավոր առևտրական կենտրոններում (հատկապես Կաֆայում) հայերի կատարած դերի, բնակչության թվական կազմում նրանց գրաված տեղի ճշգրտման հետ առնչվող հարցերը:

Բարեբախտաբար հարցերի այս փունջը լուսաբանող շատ փաստաթղթեր արդեն դրված են գիտական շրջանառության մեջ: Կարևոր նշանակություն ունի այս առումով ջենովական հյուպատոսին առնթեր գործող խորհրդի 1455 թ. մի արձանագրությունը, որի մեջ ուղղակի ասված է, որ Ղրիմը «մեծ մասով բնակեցված է հայերով, որոնք հանդիսանում են մեր (այսինքն՝ ջենովացիների—Լ. Խ.) հավատարիմ վաճառականները»[83]: Մի այլ փաստաթղթի համաձայն, թուրքերի կողմից քաղաքի գրավման նախօրեին Կաֆան ունեցել

81 «ԺԵ դարի... հիշատակարաններ», էջ 359—367:

82 И. А. Орбели. Два серебряных ковша XVI века с армянской и греческой надписями. «Избранные труды», Ереван, 1963, էջ 214:

83 Е. С. Зевакин и Н. А. Пенчко, նշվ. աշխ., «Исторические записки», 1938, № 3, էջ 127. Հմմտ. Աշ. Հովհաննիսյան, Դրվագներ հայ ազատագրական մտքի պատմության, Բ, Երևան, էջ 431:

*է 70 հազար բնակիչ, որի երկու-երրորդը (այսինքն 46 հազարը)՝ հայեր*[84]*։ Նույնն են հաստատում նաև թուրքական տվյալները (70 հազարից 65 տոկոսը՝ հայ)*[85]*։*

*Այսպիսի ճշգրիտ տվյալներ մյուս քաղաքների վերաբերյալ չեն պահպանվել, բայց ըստ որոշ հետազոտությունների, հայերը մեծամասնություն են կազմել նաև Սուրխաթ և Սուրոժ քաղաքներում*[86]*։ Եվ եթե, այնուամենայնիվ, հետագայում պարզվի, որ տնտեսական որոշ կենտրոններում հայերից ավելի մեծ թիվ են կազմել թաթարները, հույները կամ այլ ազգության պատկանող բնակիչներ, անփոփոխ պետք է մնա այն հիմնական եզրակացությունը, թե տնտեսական գործունեության բոլոր ոլորտներում հայերը գրավել են առաջատար բնագծեր։*

*Այս առումով խիստ հետաքրքրական է Ղրիմի հարավային ծովափնյա քաղաքների տնտեսական պատմության հմուտ ուսումնասիրողներ Ե. Զևակինի ու Ն. Պենչկոյի տեսակետը. «Իտալական սկզբնաղբյուրների հիման վրա Ղրիմի հարավային ծովափի միջնադարյան քաղաքների մասին նյութի մշակումը մեր կողմից թույլ է տալիս հաստատելու, որ գլխավոր դերը Ղրիմում, ըստ երևույթին կատարել է հայկական առևտրական բուրժուազիան։ Սև ծովի ջենովական կենտրոն Կաֆայում հաստատապես հայերը կազմում էին քաղաքային բնակչության երկու-երրորդը, և հայ վաշխառուների ոչ մեծ խումբը (XV դ.)՝ իր ձեռքում էր պահում քաղաքի տնտեսական հանգույցները։ Այս հանգամանքը նույնիսկ անհանգստություն է պատճառել ջենովական կառավարչությանը՝ Կաֆայում քաղաքական իշխանությունը պահպանելու առումով»*[87]*։*

* * *

*Այստեղ անհրաժեշտություն է առաջանում մի հայացք նետել նաև Ղրիմի տնտեսական զարկերակներից մեկի՝ Թամանյան թերակղզու և Հյուսիսային Կովկասի արևմտյան շրջանների վրա, որոնք հնագույն ժամանակներից որոշակի դեր են կատարել Անդրկովկասյան երկրների և Ռուսաստանի միջև տնտեսական կապերի իրականացման բնագավառում։*

*Թամանյան թերակղզին դարեր շարունակ տնտեսապես եղել է Ղրիմի անբաժան մասը, քաղաքականապես ևս հաճախ շաղկապված լինելով նրա հետ։ Հնդկաստանից, Միջին Ասիայից, Իրանից և Անդրկովկասից դեպի Ղրիմ տանող ցամաքային ճանապարհները խաչավորվում էին Թամանում։ Ընդամենը 4—15 կմ լայնություն ունեցող Կերչյան նեղուցը արգելք չէր հանդիսանում*

---

84 Vigna. Codice diplomatico, t. I, *էջ 365 (տեղեկությունը քաղել ենք Վ. Միքայելյանի վերը նշված աշխատությունից)։*

85 Վ. Միքայելյան, նշվ. աշխ., էջ 102։

86 *Տես օրինակ Ф. Брун,* Черноморье, ч. II, Одесса, 1880, *էջ 140։ (Հմմ. Խ. Փորքշեյան, նշվ. հոդվածը, էջ 109)։*

87 «Разработка нами на основании итальянских первоисточников темы о средневековых городах южного берега Крыма позволяет установить, что главную роль в Крыму, по-видимому, играла армянская торговая буржуазия. По крайней мере, в генуэзском центре на Черном море—Каффе—армяне составляли 2/3 городского населения и небольшая кучка армян—ростовщиков (в XV в.) держала в своих руках экономические нити города; это даже вызывало опасения генуэзской администрации за политическое господство в Каффе» («Исторические записки», 1938, № 3, *էջ 127)։*

արևելքից արևմուտք և հակառակ ուղղությամբ կատարվող միջազգային նշանակություն ունեցող ապրանքափոխանակության համար։ Դրանով է բացատրվում այն հանգամանքը, որ Թամանյան թերակղզին, իր հարևան շրջանների հետ միասին, երկար դարեր շարունակ կռվախնձոր է հանդիսացել հզոր պետությունների միջև։ X դ. կեսերին լուրջ քայլեր կատարվեցին Թամանյան թերակղզին Կիևյան Ռուսիային ենթարկելու ուղղությամբ։ Կիևի մեծ իշխան Սվյատոսլավ Իգորևիչը Դոնի գետաբերանում 965 թ. ջախջախիչ հարված հասցրեց խազարներին, վռնդեց նրանց այդ վայրերից. այնուհետև շարժվելով դեպի հարավ, հարձակվեց խազարներին ենթակա յասերի ու կասոգների վրա և իր տիրապետության տակ առավ ընդարձակ մի երկրամաս, որը ձգվում էր մինչև Կովկասյան լեռնաշղթա։ Ռազմական այս հաջողությունների հետևանքով X դ. 80-ական թթ. Թամանյան թերակղզում և նրան կից շրջաններում ստեղծվեց Տմուտարականի բաժնեկալվածային ռուսական իշխանությունը, որը պահպանեց իր գոյությունը մեկ դարից ավելի՝ զգալի դեր կատարելով հին Ռուսիայի պատմության մեջ[88]։

Առատ տվյալներ՝ նորանվաճ ռուսական այս երկրամասում հայ գաղթավայրերի գոյության և նրա տնտեսական կյանքում հայերի կատարած դերի մասին, ցավոք, չեն պահպանվել։ Վաղուց ի վեր գիտական շրջանառության մեջ է դրված Գալիցիայի ռուս իշխան Թեոդոր Դմիտրիևիչի 1062 թ. մի հրովարտակը՝ ուղղված կոսոխացի հայերին (kosochackim Armenam), որով նրանք հրավիրվել են մշտական բնակության Գալիցիա՝ երեք տարի հարկերից ազատ լինելու արտոնությամբ[89]։ Բազմաթիվ փորձեր են եղել որոշելու, թե ում է հասցեագրված այդ հրավեր-հրովարտակը և արդյոք այն XI դ. հավաստի փաստաթո՞ւղթ է, թե՞ ստեղծվել է հետագա դարերում Գալիցիայի հայերի կողմից, իրենց հեղինակությունը բարձրացնելու նպատակով[90]։

Ո՞ւմ է հասցեագրված այդ հրովարտակը. այս հարցին տրված բազմաթիվ պատասխաններից ամենից հավանականը պետք է համարել Խ. Փորքշեյանի առաջադրած և բազմաթիվ փաստերով ու նկատառումներով հիմնավորված պատասխանը։ Հաշվի առնելով այն հանգամանքը, որ Տմուտարականի բնակիչները բյուզանդական, ռուսական և այլ հին աղբյուրներում կոչված են կասոխ կամ կոսոխ[91], Խ. Փորքշեյանը հանգում է այն հավանական եզրակացության, որ ռուս իշխան Թեոդոր Դմիտրիևիչը Գալիցիա է հրավիրել հենց

---

88 «Очерки истории СССР», ч. I, 1953, էջ 400—406։ Խ. Փորքշեյան, Երբ և որտեղից են հայերը գաղթել Չերքեզիա, ՊԲՀ, 1959, № 2—3, էջ 235։

89 Մ. Բժշկյան, Ճանապարհորդություն, էջ 85։

90 Վերջերս այս տեսակետը հիմնավորելու մի անհաջող փորձ կատարեց ուկրաինահայ գաղթավայրերի վաստակավոր ուսումնասիրող Յա. Դաշկևիչը (տե՛ս նրա «Грамота Феодора Дмитриевича 1062 г.» հոդվածը, տպագրված հետևյալ պարբերականում. «Науково-інформаційний бюлетень Архівного управління УРСР», Киев, 1962 № 4, էջ 9—20)։ Հանգամանորեն քննարկելով Յա. Դաշկևիչի բոլոր առարկությունները, Վ. Միքայելյանը «Ղրիմի հայկական գաղութի պատմություն» (Երևան, 1964, էջ 54—63) իր արժեքավոր մենագրության մեջ արդեն ցույց է տվել, որ բավարար հիմքեր չկան այդ հրովարտակը հետագա դարերի կեղծիք համարելու։ Ընդհակառակը, հին ու հավաստի փաստաթուղթ լինելու մի շարք հատկանիշներ ունենալով՝ հրովարտակը արժանի է վստահության։ Մենք բաժանում ենք այդ տեսակետը։

91 Ըստ Խ. Փորքշեյանի՝ այդ անվանումը ալանական ծագում ունի. ալանների հետնորդները այժմ էլ չերքեզներին անվանում են «կաշեկներ»։

Տմուտարականի իշխանության սահմաններում բնակություն հաստատած և իրենց առևտրական գործարքներով ողջ հին Ռուսիայում հռչակված հայերին:

XI դ. վերջին տասնամյակներին Տմուտարականը դառնում է արյունալի բախումների թատերաբեմ, որի գլխավոր դերերը ստանձնում են ինչպես ռուսական մրցակից իշխանները, այնպես էլ Բյուզանդական կայսրության պետական պաշտոնյաները: XII դ. այդ շրջանները գտնվում են Բյուզանդիայի տնտեսական ու քաղաքական ազդեցության ոլորտի մեջ, իսկ այնուհետև տեղական ցեղապետերի իշխանության ներքո, որոնք ընդունել էին ղփչախների գերիշխանությունը:

XIII դ. երկրորդ հիսնամյակում Կաֆայում հաստատված ջենովացիներն աստիճանաբար իրենց ազդեցությունը տարածում են Ղրիմի թերակղզու արևելյան ծովափնյա քաղաքների վրա, ապա ամուր հենակետեր ստեղծում Սև և Ազովի ծովերի Կովկասյան առափնյա շրջաններում: Դոնի գետաբերանից մինչև Սուխում ընկած տարածքի վրա, ըստ մի շարք հին քարտեզների, XIV դ. ընթացքում գոյություն են ունեցել 39 իտալական առևտրական հենակետեր: Դրանց մեջ բացառիկ նշանակություն ունեին հատկապես երկուսը՝ Մատրեգան և Կոպան[92]:

Մատրեգան պատմական գրականության մեջ հայտնի է տարբեր անուններով՝ Մատրախա, Տամատարխա, Տմուտարական և այլն: Այն գտնվել է Կուբանի գետաբերաններից մեկում, որն այժմ գոյություն չունի: Նրա նավահանգստում խարիսխ էին նետում առևտրական խոշոր նավեր, որոնք Ազովի ծովի ծանծաղության պատճառով անկարող էին հասնել Ազով: Մեծ էր նրա նշանակությունը ոչ միայն որպես միջազգային ապրանքափոխանակության հանգրվան, այլև որպես Հյուսիսային Կովկասի արևմտյան շրջանների տնտեսական կենտրոն: Շրջակա ցեղերն այստեղ աշխույժ փոխանակություն էին կատարում, իրենց արտադրանքը՝ ձուկ, ձկնկիթ, մեղր, մեղրամոմ, տարբեր տեսակի փայտանյութ (հատկապես՝ տոսախ)՝ փոխանակելով արևելյան և արևմտյան երկրներից ստացվող ապրանքների հետ: Ջենովացիները Մատրեգայում ունեին հյուպատոսարան և առևտրական հաստատություններ:

Իր նշանակությամբ երկրորդ տեղն էր գրավում Կոպա (նաև Լոկոպա, Կոպարիո) կոչվող քաղաքը, որի տեղադրությունը տակավին չի որոշված: Այստեղ ևս եղել է ջենովական հյուպատոսարան, կառուցվել են եկեղեցիներ, գոյություն են ունեցել առևտրական գրասենյակներ, չափ ու կշռի կետեր և տոնավաճառ, որն սկսվել է ապրիլի վերջերին ու տևել մինչև մայիսի 15-ը: Կոպայի վաճառականները մեծ քանակությամբ ձուկ և ձկնկիթ են արտահանել Կոստանդնուպոլիս: Տնտեսական որոշակի նշանակություն են ունեցել նաև Անապան, Գելենջիկը և այլ նավահանգիստներ:

Ջենովացիների ազդեցության ժամանակաշրջանում կարգի էին բերվել Հյուսիսային Կովկասով անցնող կարավանային ճանապարհները[93]: Կաֆա

---

92 Е. С. Зевакин и Н. А. Пенчко, նշվ. աշխ., էջ 78—86:

93 Գլխավոր ճանապարհը Կուբանի աջ ափով ձգվում էր դեպի արևելք և Թերեքի ափերով հասնում մինչև Կասպից ծով: Կովկասյան լեռնականների հետ ստեղծված տնտեսական աշխույժ կապերին նպաստում էր Անապայից սկսվող ճանապարհը, որը Կովկասյան լեռնաշղթայի հյուսիսով անցնում էր դեպի արևելք և կտրելով Կուբանի լեռնային վտակները (Կեֆար, Մեծ Զելենչուկ, Մարուխա, Թեբերդա) հասնում մինչև գետի վերին հոսանքները, ապա Կուրաշայ:

*քաղաքը միջազգային հռչակ էր ձեռք բերել ոչ միայն որպես անգերազանցելի նավահանգիստ, այլև կիզակետն էր դարձել բոլոր այն ճանապարհների, որոնցով հյուսիսային Կովկասի և Անդրկովկասի ժողովուրդները Թամանյան թերակղզու վրայով հաղորդակցվում էին Ղրիմի, իսկ նրա միջնորդությամբ Ռուսաստանի և եվրոպական երկրների հետ։*

*Արդ, բուն նյութին անցնելով, նշենք, որ հյուսիս-արևմտյան Կովկասի վերոհիշյալ կենտրոններում և այդ կենտրոնները Անդրկովկասի ու Իրանի հետ շաղկապող ճանապարհների բոլոր հանգուցակետերում՝ հայ առևտրական կապիտալի ներկայացուցիչները հենակետեր էին ստեղծել և տնտեսական աշխույժ գործունեություն ծավալել ջենովացիների բեմելից դարեր առաջ։*

*Հայկական աղբյուրներում շատ քիչ տեղեկություններ կան այդ մասին։ XIX դ. սկզբներին եղել են ինչ-որ տվյալներ, որոնց հիման վրա Հովհաննես Ղրիմեցին գրել է այսպիսի տողեր. «...Այլ եւ աշխարհն Ափխազաց, եւ աշխարհն Եգերացւոց, այսինքն Չէրքեզաց, ի նախկին ժամանակս, յորս էին հայք բազումք ի հնումն, ըստ ակնարկելոյ պատմութեանց. եւ այժմ իսկ ի հիւսիսային ծագս այսորիկ աշխարհաց գտանին ոչ սակաւ տունք հայոց՝ ի հին ժամանակաց անտի մնացեալք»*[94]*։*

*Ցավով պետք է նշել, որ առ այսօր ծրագրված աշխատանք չի կատարված հնագույն այդ գաղթավայրերի հետքերը որոնելու ուղղությամբ։ Սակայն պատահականորեն հայտնաբերված նյութերն իսկ հնամենի ու սերտ կապերի առկայության օգտին են վկայում։*

*Դեռևս անցյալ դարի վերջերին Մայկոպի շրջանում, Բելայա գետի ափին, Բելորեչենսկայա և Խանսկայա ստանիցաների մերձակայքում հայտնաբերվել էին քառանկյուն (9×5,7 մետր) հատակագիծ և կիսաշրջան աբսիդ ունեցող քարակոփ մի եկեղեցու ավերակներ։ Այդ եկեղեցու բարավորը, որ այժմ պահվում է Վրացական ՍՍՀ Պետական թանգարանում, կրում է անվարժ-ուռուցիկ տառերով փորագրված այսպիսի արձանագրություն.* ԿԱՏԱՐԵՑԱՒ ԵԿԵՂԵՑԻՍ ՁԵՌԱՄԲ ՔԱՐԳՈՐԾ ԽՐԸՄՊԷԻՆ ԿԱՑԱՑՈՒՆ[95]։

---

*Այստեղ ճանապարհը բաժանվում էր երկու ուղղության. մեկը կտրելով Կովկասյան լեռնաշղթան, մտնում էր Անդրկովկաս, մյուսը՝ Թերեքի ափերով հասնում Կասպից ծով։ Այս ճանապարհի հետքերը պահպանվել էին մինչև անցյալ դարի 60-ական թվականները (տե՛ս* «Исторические записки», *1938, № 3, էջ 87—88)։*

94 *Յովհաննու Ղրիմեցւոյ Պատմութիւն հռչակաւոր վանից Հաղբատայ Ս. Նշանի, հրատարակեց Հ. Համազասպ Ոսկեան, Վիեննա, 1965, էջ 92։*

95 *Այս արձանագրության զարմանալի սխալ վերծանությունը տպագրել է դեռևս 1893 թ., հայ բանասիրության մեջ բազմաթիվ թյուրիմացությունների դուռ բացած Խ. Քուչուկ-Հովհաննիսյանը։ Ըստ նրա՝ արձանագրությունը պետք է կարդալ այսպես.* ԿԱՏԱՐԵՑԱՒ ԵԿԵՂԵՑԻՍ ՁԵՌԱՄԲ ՔԱՐԳՈՐԾԻՍ Մ... ՐՊԷԻՆ. ՀԱՅՈՑ... ՈՒ.Ն, *և պետք է թարգմանել այսպես.* Церковь построена каменщиком (имя неразборчиво)... в 620 году армянской эры, т. е. в 1171 году (*տե՛ս Х. И. Кучук-Иоаннесов.* Христианская надпись XII столетия. «Материалы по археологии Кавказа, собранные экспедициями московского археологического общества», вып. III, М., 1893, *էջ 106—109)։*

*Արձանագրությունը փորագրված համարելով 1171 թ., Քուչուկ-Հովհաննիսյանը գիտական արժեքից զուրկ դատողություններ է արել հյուսիսային Կովկասի այդ շրջաններում հայկական եկեղեցու գոյության պատմական պատճառների մասին։ Նույն արձանագրության վերծանության և արժեքավորման մի փորձ էլ կատարվեց վերջերս։ Հայ արվեստին նվիրված միջազգային 2-րդ սիմպոզիումին զեկուցումով հանդես եկավ հնագետ Մ. Լոժկինը, որը, սակայն, էական առարկություններ չարեց Խ. Քուչուկ-Հովհաննիսյանին (տե՛ս Михаил Ложкин,* Об армянской церкви XII века в Белореченске, Ереван, 1978, *էջ 2 և 8)։*

XVII դ. 80-ական թթ. Ղրիմում ստեղծագործել է Սիմեոն Կաֆացի անունով մի տաղասաց, որի հոր անունը եղել է Խրմզէլ[96]: Նույնացնելով քարգործ (իմա՛ ճարտարապետ վարպետ) Խրմզէլ Կաֆացուն տաղասացի հոր հետ, որ շատ հավանական է (արձանագրության տառաձևերը բնորոշ են հենց այդ ժամանակաշրջանին), կարող ենք եկեղեցու կառուցման ժամանակը համարել, մերձավորապես, 1650-ական թվականները: Բայց չի բացառված, որ այստեղ հայեր են հաստատված եղել այդ ժամանակից շատ դարեր առաջ, իսկ որ նրանք սերտորեն կապված են եղել Ղրիմի հետ, այդ երևում է այն իրողությունից, որ եկեղեցու կառուցման համար հրավիրվել է կաֆայեցի մի վարպետ: Ինչպե՞ս է կոչվել հայկական այդ բնակավայրը, չգիտենք: Եվ եթե հետագայում գիտական պեղումներ կատարվեն եկեղեցուց ոչ հեռու գտնվող տարածություններում, թերևս հնարավոր լինի պարզել, որ հենց այստեղ է գտնվել միջնադարում շատ հայտնի վերոհիշյալ Կոպա քաղաքը[97]:

Ժամանակագրական առումով շատ ավելի հին կարող են լինել պատմական Չերքեզիայի մի այլ անկյունում՝ Կարաչայ-չերքեզների ինքնավար մարզում, Մեծ Զելենչուկ գետի միջին հոսանքից ոչ հեռու գտնվող երեք եկեղեցիները: Դրանցից ամենամեծը, որ գտնվում է շատ խարխուլ վիճակում, երեք տասնամյակ առաջ ենթարկվել է հնագիտական հետախուզման: Եկեղեցու հատակի մի անկյունում հայտնաբերված 1,5 մետր խորություն ունեցող փոսից դուրս են բերվել ոսկեղեն առարկաներ, մատանիներ, օղեր, զարդասեղներ, թանկագին քարեր և, որ ամենակարևորն է, Աշոտ Ա Բագրատունի Հայոց թագավորի (885—890 թթ.) մատանի-կնիքը, արաբերեն հստակ ընթերցվող՝ «Աշուտ բն Սնբատ» (այսինքն՝ «Աշոտ Սմբատի որդի») մակագրությամբ[98]:

Ցավոք, հայտնաբերված առարկաները առ այսօր մասնագիտական քննության բովով չեն անցել: Մեծ հավանականությամբ նրանք, կնիքի հետ միասին, բերվել ու պահվել են եկեղեցու դարաններից մեկում Բագրատունյաց հարստության անկումից հետո՝ XI դ. կեսերին, խոսուն վկաները լինելով Հա-

---

96 Հ. Աճառյան, *Հայոց անձնանունների բառարան*, հատոր Դ, Երևան, 1948, էջ 517:

97 Իտալական աղբյուրների տվյալներով Կոպան գտնվել է Կուբանի գետաբերանից 280 մղոն (շուրջ 400 կմ) հեռավորության վրա՝ գետափին: Եթե քաղաքի հետքերը փնտրելու համար նկատի առնվի Կուբան մայր գետը և անտեսվեն նրա խոշոր վտակները, ապա որոնումները պետք է կենտրոնացվեն ներկայիս Կրապոտկինի շրջանում, բայց եթե Կուբան գետի հետ շաղկապենք նրա խոշոր վտակներից՝ Բելայա կոչվածը, ապա Կոպայի ավերակների հետքերը կարող են հայտնաբերվել վերոհիշյալ եկեղեցու մերձակայքում: Այս առումով հատուկ ուշադրություն պետք է դարձնել նաև այն փաստի վրա, որ Բելորեչենսկայա ստանիցայի մոտ գտնվող հին գերեզմանատան պեղումներից ևս հայտնաբերվել են հայկական նյութեր: Մասնավորապես արժեքավոր են մի զույգ արծաթե ճարմանդները, որոնք անտարակույս միջնադարյան հայկական արհեստագործության գեղեցիկ նմուշներից են: Դրանց հրատարակիչ Կ. Ա. Ռոկտինան (*К. А. Роктина*. Группа серебряных украшений из кубанских могильников XIV—XV вв. «Труды отдела истории культуры и искусства Востока Гос. Эрмитажа», т. III, Л., 1940, էջ 211 և II, 4, 5 պատկերներ) հայտնել է այն կարծիքը, որ դրանք արտադրվել են Կիլիկյան Հայաստանում XV դ.: Մեր կարծիքով, սակայն, ոչ մի արգելք չկա դրանց ժամանակը մի քանի դարով ետ տանելու և դրանք կենտրոնական Հայաստանի հետ կապելու համար:

98 *В. А. Крачковская*. Печать Багратида Ашота с арабской надписью. «Краткие сообщения о докладах и полевых исследованиях Института истории материальной культуры», XII, М.—Л., 1946, էջ 112—117: Նաև Հ. Օ. Լայպունով, Աշոտ Բագրատունու կնիքը («Տեղեկագիր», 1955, № 2, էջ 97—98), որը նորություն չի պարունակում:

*յաստանի և Հյուսիսային Կովկասի միջև գոյություն ունեցած տնտեսական սերտ առնչությունների։*

*Հյուսիս-արևմտյան Կովկասի վաճառաշահ կենտրոնների բնակչության ազգային կազմի մասին աննշան տեղեկություններ են պահպանվել։ Ե. Ջևյակինն ու Ն. Պենչկոն իրենց վերոհիշյալ հոդվածում ոչ միայն տարբեր առիթներով խոսել են Մատրեգայում և Կոպայում հայ բնակչության առկայության մասին, այլև հանգել են այն եզրակացության, որ հավանաբար հայ առևտրական կապիտալն է այդ գաղթավայրում կատարել առաջնային դեր*[99]*։*

*Այս երկրամասում հայկական հիշատակների հայտնաբերման ուղղությամբ աշխատանքները պետք է շարունակել, օգտագործելով ինչպես մայրենի լեզուն մոռացած չերքեզահայերի մասին դեռևս գիտական շրջանառության մեջ չդրված աղբյուրները (այդպիսիք պետք է որ լինեն ռուսական արխիվներում), այնպես էլ հայկական մատենագրության մեջ գոյություն ունեցող ակնարկները։*

*Այս առումով ուշադրության արժանի են Քաշտա կոչվող երկրամասի և ցեղանվան մասին առկա ցաքուցրիվ տեղեկությունները։ Կիևյան Ռուսիայի տարեգիրները, ինչպես նաև բյուզանդական որոշ հեղինակներ, խոսելով Տմուտարականի ռուսական իշխանության բուն բնակիչների՝ հին չերքեզների մասին, դրանց միշտ անվանում են կասոգներ կամ կոսոգներ* (касоги *կամ* косоги)*։ Այդ ցեղանունը տարբեր ժողովուրդների կողմից ու տարբեր ժամանակներում արտաբերվել է իրարից շատ տարբերվող ձևափոխություններով. կասոխ, կոսող, կասախ, խազուխ, քեշակ, քաշայի, քաշտա*[100]*։ Այս վերջին (քաշտա) ձևը կամ ստեղծվել է հայերի միջավայրում, կամ էլ գերադասվել նրանց կողմից՝ որպես ավելի հարազատ ու դյուրալուր ձև։*

*Կաֆա քաղաքի պարիսպներից դուրս XV—XVII դդ. գոյություն է ունեցել հայկական մի թաղամաս Քաշտա անունով*[101]*։ Մեծ հավանականությամբ կարելի է հետևցնել, որ այդ վայրի հայ բնակչության մեծամասնությունը գաղթել է այստեղ Թամանյան թերակղզուց կամ պատմական Չերքեզիայի Թամանից ոչ հեռու գտնվող շրջաններից, կամ էլ տնտեսական սերտ կապերի մեջ է եղել նույն այդ շրջանների (այսինքն՝ բուն Քաշտայի) հետ։*

---

99 *Նրանք բառացի գրել են.* «Без сомнения армянский торговый капитал проник и на Западный Кавказ и быть может играл в тамошних колониях первенствующую роль» («Исторические записки», 1938, № 3, *էջ 127*)։

100 «История Кабарды с древнейших времен до наших дней», М., 1957, *էջ 22—25։ Տեղեկությունը քաղել ենք Խ. Փորքշեյանի վերոհիշյալ հոդվածից։*

101 *«Այլ արտաքոյ (Կաֆայ) քաղաքին մէկ մահալա թաղ հայք կային, որ Քաշտա ասեն»,— գրում է նրա մասին Գր. Դարանաղցին (տե՛ս «Ժամանակագրութիւն Գրիգոր վարդապետի Կամախեցւոյ կամ Դարանաղեցւոյ», հրատարակեց Մեսրոպ վրդ. Նշանյան, Երուսաղեմ, 1915, էջ 80)։*

*1458 թ. Կաֆայում գինեծախ Ավդուլը ընդօրինակել է տվել մի ձեռագիր՝ Քաշտայի սուրբ Գեորգ զորավարի եկեղեցուն նվիրաբերելու համար («ԺԵ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ», մասն Բ, Երևան, 1958, էջ 112)։ Խաչատուր Կաֆայեցի տարեգիրը 1649 թ. դեպքերի կապակցությամբ հայտնում է, որ ապրիլի 15-ին Գրիգոր պարոնտերը ամն Սիմեոնի քահանա է ձեռնադրել «ի վերայ Քաշտային» («Մանր ժամանակագրություններ 13—18-րդ դդ.», հատոր I, կազմեց Վ. Ա. Հակոբյան, Երևան, 1951, էջ 225)։ Ըստ այդմ Կաֆայի Քաշտա կոչվող թաղամասի գոյությունը հաստատվում է XV—XVII դդ. աղբյուրներով։*

Խաչատուր Կաֆայեցու ժամանակագրության մեջ, 1624 և 1628 թթ. կատարված դեպքերի առնչությամբ, Քաշոտի մասին գտնում ենք երկու կարևոր գրանցում.

1. «Թվին ՌՀԳ (1624)... ապրիլի ԺԱ (11) կիրակին Քաշոտի յուռուսն կոխեց Խրիմին վերի մահալան և քրիստոնեայքն գերեցոյց, և պարծանքըն քրիստոնէից՝ Սուրբ Նշանն գերի վերուց, և խաւարեցոյց վանքն տէր Մովսէսի»[102]:

2. «Թվին ՌՀէ (1628), ապրիլի Ի (20), աւր կիրակի, Քաշատի ուռուսն Կաֆան կոխեց, մահալան Համբարձման։ Անիծածն, որ է որդի Թումանպէին, եկաւ գերեցուց, ոմանս թալլեց, ոմանս ի սուր մաշեց, և այլ շատ չարիք գործեց»[103]:

Այս կարևոր տեղեկությունները, անտարակույս, վերաբերում են Դոնի կազակների դեպի Ղրիմ (Սուրխաթ, Կաֆա) կատարած արշավանքներին[104]:

Խիստ ուշագրավ է այն հանգամանքը, որ կազակներն այստեղ կոչված են «Քաշոտի ուռուս». սրանից կարելի է հետևցնել, որ Դոնի կազակները արդեն XVII դ. իրենց ազդեցությունը տարածել էին Ազովի ծովի արևելյան ափերը եզերող պատմական Չերքեզիայի շրջանների վրա, ու թերևս, այդ կողմերում ունեին իրենց հենակետերը, որոնք կորիզը հանդիսացան ավելի քան մեկ դար հետո Կուբանի շրջանում ձևավորված կազակական զորքերի[105]:

102 «Մանր ժամանակագրություններ», I, էջ 212:

103 Նույն տեղում, էջ 217:

104 Քաշոտի տեղադրությունը որոշելու անհաջող ու երկչոտ մի փորձ է կատարել Խաչատուր Կաֆայեցու «Տարեգրության» հրատարակիչը, տալով այսպիսի բացատրություն. «Արդյո՞ք Կաղոխը չէ, Անապայի և Նովորոսիյսկի մոտերը, թերևս ավելի հյուսիս» (տե՛ս «Մանր ժամանակագրություններ» I, էջ 231):

Հունգարացի վաստակավոր արևելագետ է. Շյուցը, որ հրատարակել է Տարեգրության գերմաներեն թարգմանությունը, օժտել է այն շատ արժեքավոր ծանոթագրություններով ու ճշգրտել նրա անհասկանալի բազմաթիվ հատվածները, զատել է միմյանցից Կաֆայի հայկական թաղամաս Քաշոտը «Դոնի կազակների բնակավայր» Քաշոտից։ Այս բնակավայրի տեղադրությունը որոշելու նպատակով նա որոնումներ է կատարել, անդրադարձել է Կուբան գետի Կոճետի վտակի անվանը, ինչպես նաև Վոլգայի կալմիկների Կոշոտ կոչվող բնակավայրին և այլն (տե՛ս E. Schütz. Eine Armenische Chronik von Kaffa aus der ersten Hälfte des 17. Jahrhunderts. „Acta Orientalia Academia Scientiarum Hungaricae", 1975. Hung. Tomus XXIX, Fasc. 2, էջ 167—181:

Մեր կարծիքը Քաշոտի մասին՝ շարադրված է վերը։

Շեղվելով բուն նյութից, անդրադառնալու ենք Խաչատուր Կաֆայեցու Տարեգրության մեջ «հայ» բառի տարօրինակ գործածությանը, որ տարակուսանքների տեղիք է տվել։ Ըստ Տարեգրության, օրինակ, 1628 թ. Ղրիմ է ներխուժել 12 հազար հայ, մեկ տարի հետո՝ 40 հազար հայ և նողայ և այլն (տե՛ս «Մանր ժամանակագրություններ», I, էջ 214, 215 և այլն)։ Խաչատուրը խոսում է թուրքերի՝ Մալթայում տարած հաղթանակի մասին, ասելով, որ «մէկ գիրն հայն սպաննէր է ի կռուին», նկարագրում է Ազովի հերոսական պաշտպանությունը Դոնի կազակների կողմից, դերակատարներին դարձյալ «հայ» անվանելով և այլն (տե՛ս նույն տեղում, էջ 223)։

Կնճիռը հարթվում է դյուրությամբ։ Մեր հեղինակը «հայ» բառը գործածում է նաև «քրիստոնյա» բառի փոխարեն. «Հայ» են կոչվում և՛ Զապորոժյան կազակները, և՛ Դոնի կազակները, և՛ Մալթայի պաշտպան վենետիկցիները, և՛ այլ քրիստոնյա ժողովուրդներ։

105 Քաշոտը Տմուտարական ռուսական բաժնետիրական իշխանության տարածքն էր միաժամանակ։ Կարելի՞ է, արդյոք, այս հանգամանքը նկատի առնելով մտածել, թե աշխար-

Սրանք են, ահա, մեզ հասած տեղեկությունները Ղրիմի հետ տնտեսապես շաղկապված Թամանյան թերակղզում և պատմական Չերքեզիայի այլ շրջաններում երկար դարեր գոյատևած հայկական գաղթօջախների մասին։ Դրանք ցաք ու ցրիվ են ու աղքատիկ, բայց, այնուամենայնիվ, հնարավորություն են ընձեռում հանգելու այն եզրակացության, որ այս վայրերում խարխուխ նետած հայերը ևս կարևոր դեր են կատարել Ղրիմի վրայով Ռուսական իշխանությունների և Արևմտյան Եվրոպայի այլ երկրների հետ առևտրական կապերի ստեղծման ու իրականացման բնագավառում։

* * *

Այսպիսով, պարզ է դառնում, որ Ղրիմը կապված է եղել Անդրկովկասի, Իրանի, Միջին Ասիայի և Հեռավոր Արևելքի հետ միջազգային նշանակություն ունեցող ծովային ու ցամաքային մի շարք ճանապարհներով։ Հայաստան—Ղրիմ կապերն իրագործվել են ա) Սև ծովի հարավային և արևելյան նավահանգիստներից՝ ծովային ճանապարհով, բ) Սև ծովի արևմտյան եզերքով և Կովկասյան լեռնաշղթան հատող կածաններով, որոնց հանգրվանն էր Թամանյան թերակղզին, գ) Դերբենդի կիրճով դեպի հյուսիս ուղղված ճանապարհով, որը Հյուսիսային Կովկասում երկճյուղվում էր. ճյուղերից մեկն ուղղություն էր վերցնում դարձյալ դեպի Թաման, մյուսը՝ դեպի Վոլգայի գետաբերան, դ) Ռուսաստանից և Միջին Ասիայից, տարբեր ճանապարհներով արևելյան ապրանքներ էին հասցվում Ազով, այնտեղից էլ՝ Ղրիմ. այս ուղեգծի վրա ևս հայերը որպես տնտեսապես շահագրգռված կողմ, ունեին իրենց գաղթօջախները։

Կաֆա քաղաքն այս ճանապարհներով ստացվող ապրանքների վիթխարի մի պահեստ էր դարձել։

Այդ ապրանքների մի զգալի մասը արտահանվում էր Արևելյան Եվրոպա կարավանային բանուկ այն ճանապարհով, որ կտրում էր Ղրիմի թերակղզին հարավ-արևմուտքից հյուսիս-արևելք և, անցնելով Պերեկոպը (հայկական միջնադարյան աղբյուրներում՝ կոչված Օր, Օրինբերան)՝ ուղղություն էր վերցնում դեպի Կիև։

Պետք է ենթադրել, որ Պերեկոպում, առնվազն XIV դ. սկզբներից գոյություն է ունեցել հայկական կայուն գաղթօջախ, որի մասին, ցավոք, հին տեղեկություններ չեն պահպանվել։ Այստեղ հաստատված հայերն ունեին իրենց եկեղեցին. քաղաքում կային հայերին պատկանող կարավանատներ, պահեստներ և այլն[106]։ XVIII դ. 30-ական թթ. ռազմական գործողությունների հետևանքով տուժած Պերեկոպի դերն իր վրա է վերցնում նրա մոտակայքում հայերի կողմից հիմնադրված և Արմյանսկի բազար (Հայկական շուկա) անունն ստացած բնակավայրը, որը հռչակված էր իր շուկայով, անընդմեջ ծը-

---

խազարական այդ միջավայրում, Տմուտարականի իշխանության անկումից դարեր հետո ևս պահպանվել էին ռուսական համայնքներ, որոնք աշխուժացել էին Դոնի գետաբերանի շրջակայքում հաստատված կազակների ազդեցությունը կրելով։

106 Վ. Միքայելյան, նշվ. աշխ., էջ 114 (վկայակոչված է «Заседания Одесского общества истории и древностей», т. I, 1844, էջ 602)։

խացող խոհանոցներով, որոնցում ընտիր կերակուրներ էին պատրաստվում անցնող ու դարձող ճանապարհորդների համար[107]։

Պերեկոպից հյուսիս, մինչև Կիև ձգվող ճանապարհը միշտ էլ եղել է շատ վտանգավոր, ենթակա լինելով հարավային Ռուսաստանի տափաստաններում մեկը մյուսին հաջորդող վաչկատուն ժողովուրդների շարունակական ավազակային հարձակումներին։ Հայտնի է, որ 915—1036 թթ. ընթացքում Կիևի իշխանները մարտնչել են պեչենեգների դեմ, մանր միջադեպերը չհաշված 16 անգամ[108]։ Եվ այդ պարբերականությունը պահպանվել, նույնիսկ ավելի հաճախակի է դարձել հաջորդ դարերում, երբ թաթարները, ապա նաև թուրքերը, գրեթե ամեն տարի ներխուժում էին ռուսական երկրամասերը, ավերում բնակավայրերը, ամայացնում երկիրն ու իրենց հետ տանում հազարավոր գերիներ[109]։

Այս պայմաններում կարավանային առևտրի ասպարեզում առաջնային դերը գրաված հայ վաճառականները միաժամանակ հանդիսանում էին զինվոր-մարտիկներ։ Մենք դեռևս առիթ կունենանք ավելի հանգամանորեն շոշափելու այս հարցը, բացահայտելով հայերի դերը Դնեպրի աջափնյա տարածություններում ստեղծված նշանավոր բերդ-քաղաքների տնտեսական և քաղաքական կյանքի տարբեր ասպարեզներում։

* * *

Հին Ռուսիայի նշանավոր Կիև մայրաքաղաքը դարեր շարունակ եղել է հայ-ռուսական տնտեսական ու մշակութային կապերի դարբնոց, ուստի նրա ներսում ծաղկած հայկական գաղթօջախի պատմությունն արժանի է ավելի հանգամանալից քննության։

Կիևի հին պատմությունը լուսաբանող գրավոր աղբյուրներ գրեթե չեն պահպանվել։ Մեծ իշխան Անդրեյ Բոգոլյուբսկու գործած ավերածություններին (1169 թ.), մոնղոլական զույգ արշավանքներին (1240 և 1263 թթ.), ինչպես և բազմիցս կրկնվող ամենակուլ հրդեհներին՝ զոհ են գնացել նաև քաղաքի պատմության ձեռագրական սկզբնաղբյուրները։

Հնագիտական նյութի ուսումնասիրությունը մասնագետներին բերել է այն համոզման, որ մերձդնեպրյան շրջանները Կովկասի ու Սև ծովի ափամերձ հունական գաղթօջախների հետ տնտեսական որոշ կապեր են ունեցել տակավին մ. թ. ա. V—IV դդ.։ Մեր թվարկության առաջին հարյուրամյակների ընթացքում տևական տնտեսական կապեր են հաստատվել Հռոմեական կայսրության, իսկ III—IV դդ. նաև գոթերի հետ։

VIII դ. միջազգային ապրանքափոխանակության համար մեծ նշանակություն է ստանում Բալթիկ և Սև ծովերը միմյանց շաղկապող գետային այն մայրուղին, որ հայտնի է պատմագրության մեջ «Վարյագներից դեպի Հունաստան» («Из Варяг в Греки») անունով։ Այդ մայրուղու շնորհիվ բարգավաճում են Ռուսաստանի պատմության մեջ հսկայական դեր կատարած մի շարք քաղաքներ, մանավորապես Մեծ Նովգորոդը և «ռուսական քաղաքների մայր» Կիևը։

---

107 Նույն տեղում, էջ 114—115։

108 *Б. Д. Греков*. Киевская Русь, М., 1949, էջ 463։

109 «Очерки истории СССР», т. II, էջ 556։

Կիևը դառնում է արհեստագործության և առևտրի խոշոր կենտրոն հենց այն ժամանակաշրջանում, երբ հայ ժողովուրդը, Բագրատունիների գլխավորությամբ թոթափելով արաբական լուծը, քաղաքական ու տնտեսական առաջադիմության ընթացքի մեջ էր մտել՝ դառնալով «իդեալական չեզոք երկիր տարանցիկ առևտրի և միջազգային հարաբերությունների համար» (Հ. Մանանդյան)։

Հայաստանի քաղաքներից շատերը, մանավորապես՝ Դվինը, Անին, Կարսը, Արծնը ոչ միայն դարձել էին տարբեր ճանապարհներով արևելյան երկրներից Հայաստան ներմուծվող, այստեղից էլ եվրոպական երկրներ արտահանվող ապրանքների ապահով պահեստատեղիներ ու փոխանակային առևտրի կենտրոններ, այլև մասնակցում էին միջազգային առևտրին իրենց սեփական արտադրանքով։

«Ի ծովէ և ի ցամաքէ» ճոխացած հայ վաճառականները ամենայն հավանականությամբ տնտեսական կապեր էին ստեղծել նաև «Վարյագներից դեպի Հունաստան» ճանապարհի նշանավոր կանգառներում։ Գոտլանդ կղզում, Լադոգայում, Նովգորոդում, Մոգիլևում և Կիևում հայտնաբերված հազարավոր դրամների մեջ կան նաև Դվինում VIII—X դդ. կտրված դրամների բազմաթիվ նմուշներ, որոնք տնտեսական այդ կապերի խոսուն վկաներն են[110]։ Կիևի մերձակայքում գտնվել են նաև ականջօղեր և այլ զարդեր, որոնք, մեծ նմանություն ունենալով Դվինից հայտնաբերված ոսկերչական իրերի հետ, ըստ մասնագետների՝ դարձյալ իրեղեն վկայություններ են Հայաստանի և Կիևի միջև գոյություն ունեցած առևտրական կապերի[111]։

Ավելի պերճախոս են սակավաթիվ գրավոր աղբյուրները և, մանավորապես, Կիևի Պեչորյան վանքի նշանավոր Հարանց վարքը։ Ռուսական հին գրականության մեծարժեք այդ հուշարձանի մեջ ուրույն տեղ է գրավում վանքի նշանավոր միաբաններից մեկի՝ երանելի Ագապիտի կյանքի պատմությունը[112], որի մեջ արժեքավոր տվյալներ են գրանցված Վսեվոլոդ Յարոսլավիչի և, մանավանդ, նրա որդու՝ Վլադիմիր Մոնոմախի իշխանության տարիների, այսինքն XI դ. վերջերի և XII դ. առաջին տասնամյակների մասին։ Այստեղ, մանավորապես, ասված է, որ այդ ժամանակ Կիևում բնակվել է հմուտ ու ճարտար մի հայ բժիշկ. երբ Չերնիգովում հիվանդացել է Մոնոմախը, «նրան ջանադրությամբ բուժել է այդ հայը»։ Այստեղ խոսք կա և այն մասին, որ Կիևում բնակվել են նաև հայ բժշկի բազմաթիվ հավատակիցները։ «Հարանց վարքի» մի այլ հոդվածից պարզվում է, որ վանքի միաբան-

110 Գիտական մեծ նշանակություն ունի 1913 թ. Կիևում հայտնաբերված գանձը, բաղկացած VIII—X դդ. կտրված 2760 արծաթե դրամներից։ Դրանց մեջ կան Հայաստանում կտրված արաբական դրամներ։ Այս նյութերը խնամքով հավաքել և գիտականորեն արժեքավորել է անվանի դրամագետ Խ. Մուշեղյանը (տե՛ս Х. А. Мушегян, Денежное обращение Двина по нумизматическим данным, Ереван, 1962, էջ 160—165)։

111 Տե՛ս Н. П. Кондаков. Русские клады. Исследование древностей великокняжеского периода, т. I, СПб., 1896, էջ 128։ Կ. Ղաֆադարյան, Դվին քաղաքը և նրա պեղումները, Երևան, 1952, էջ 176։

112 Патерик Киево-Печерского монастыря, СПб., 1911 («Памятники славяно-русской письменности», т. 2)։ Տե՛ս նաև՝ Л. Меликсет-Бек. Древняя Русь и Армения («Сборник трудов Института языка АН Арм. ССР», Ереван, 1946, էջ 122), Լ. Խաչիկյան, Հայկական գաղթավայրերը Ուկրաինայում 16—17-րդ դարերում («Տեղեկագիր»), 1954, № 4, էջ 47) և այլն։

ներից մեկ ուրիշը հաճախակի այցելել է Կիևի այն թաղը, ուր ապրել են հայերը, և դավանաբանական հարցերի շուրջ բուռն վեճեր բորբոքել նրանց հետ[113]։ Այս տվյալներն ի նկատի ունենալով ակադ. Մ. Տիխոմիրովը հանգել է այն եզրակացության, որ Կիևում «եղել է լիակազմ հայկական մի գաղութ»[114]։

Կիևի Պեչորյան վանքն իր հիմնադրման օրից լինելով ռուսական եկեղեցու շահերի արտահայտիչ, մաքառել է բյուզանդական եկեղեցու քաղաքական ու մշակութային ճնշումների դեմ։ Այստեղ են ստեղծվել ռուս պատմագրության և վարքագրության առաջին ինքնուրույն ստեղծագործությունները, որոնց մեջ, ի հակադրություն հունարենից կատարված թարգմանական երկերի, փառաբանվել են հանուն Ռուսաստանի և ռուս եկեղեցու նահատակված հերոսները։ Այդ բնույթի ստեղծագործությունների առաջնեկը «Բորիսի և Գլեբի վարքն» էր («Сказание о Борисе и Глебе»)։ Ռուսաստանում բարձր եկեղեցական պաշտոններ գրաված հույն կղերականները հարկադրված էին ճանաչել այս գործիչների «սրբությունը»։ Ավելի բացահայտ կերպարանք ստացավ ռուս-բյուզանդական հակամարտությունը, երբ փորձեր կատարվեցին սրբերի շարքը դասելու ազգությամբ ռուս այլ նահատակների[115]։

Խիստ ուշագրավ է, որ նույն այս ժամանակաշրջանում բյուզանդական եկեղեցու ոտնձգությունների դեմ համառ պայքար մղող հայ եկեղեցին՝ առանց հապաղումի, ճանաչեց Բորիսի և Գլեբի (նրանց քրիստոնեական անուններն էին՝ Ռոման և Դավիթ) «սրբությունը». նրանց վարքը վերաշարադրվեց հայերեն և մուծվեց հայկական Հայսմավուրքի մեջ։ Վարքի հայերեն խմբագրության վերջում ասված է, որ այդ սրբերի մասունքները նորանոր սքանչելագործությունների աղբյուր են հանդիսանում և նոր հրաշքներ գործում, որոնց «բազում[ք] ի մերոյ աշխարհէս տեսողք եղեալ, պատմեն մեզ»[116]։ Այս արդեն որոշակի փաստ է այն մասին, որ «ի մերոյ աշխարհէս», այսինքն՝ Հայաստանից շատ-շատերը այցելելով Կիև և վերադառնալով հայրենիք, վարքի հայ խմբագրողին վկայություն են տվել ռուսական սրբերի նոր «հրաշագործությունների» մասին։

Ըստ Մ. Էմինի, որ առաջին անգամ ուշադրություն դարձրեց այս բնագրի վրա՝ ուսումնասիրեց և հրատարակեց նրա ռուսերեն թարգմանությունը, վարքի հայկական խմբագրությունն ստեղծվել է XII դ. Կիլիկյան Հայաստանում[117]։ Որոշակի փաստեր ի հիմնավորումն այս ենթադրության չկան, ուստի բացառված չի կարելի համարել և այն վարկածը, որ այդ աշխատանքը կատարվել է մայր երկրի այն շրջաններից մեկում, որը տնտեսական սերտ կապեր է ունեցել Ղրիմի ու Կիևյան Ռուսիայի հետ։

---

113 Изложение веры церкви Армянской, историко-догматическое исследование И. Троицкого, СПб., 1875, էջ 245—247։

114 *М. Н. Тихомиров.* Древнерусские города, М., 1956, էջ 293։ Անվանի գիտնականից առաջ և հետո նույն եզրակացությանը հանգել են և այլ բազմաթիվ ուսումնասիրողներ։

115 *Б. Д. Греков,* նշվ. աշխ., էջ 406—408։

116 Յայսմաւուրք ըստ կարգի ընտրելագոյն աւրինակի Յայսմաւուրաց տէր Իսրայէլի, Կ. Պոլիս, 1834։

117 *Н. О. Эмин.* Сказание о святых Романе и Давиде (Борисе и Глебе) и о кончине русского епископа св. Фомы. По армянским четые-минеям. «Русский архив», М., 1877, I, էջ 273—288։ Նաև «Переводы и статьи Н. О. Эмина по духовной армянской литературе (за 1859—1882 гг.). апокрифы, жития, слова и др.» М., 1899, էջ 150—167։

Այս առնչությամբ տեղին է հիշել Գրիգոր Տղա կաթողիկոսի և Հյուսիսային Հայաստանի նշանավոր եկեղեցական գործիչ Գրիգոր Տուտեորդու 1170-ական թթ. թղթակցությունը: Նամակներից մեկում Տուտեորդին ջերմ խոսքերով մեծարում է ռուսական եկեղեցին, կոչելով այն «քրիստոնէութեամբ պատուեալ մեծափառ եկեղեցիս Ռուզաց»[118]: Քաղկեդոնականության դեմ անհաշտ պայքարի քաղաքականության ջատագով սանահինցիների գաղափարական ղեկավարը երկաբնակ դավանանքի որևէ եկեղեցի «քրիստոնէութեամբ պատուեալ» կամ «մեծափառ» կարող էր կոչել այն դեպքում միայն, եթե նա լուր ունենար հունական ճնշումների դեմ նույն այդ եկեղեցու ընդվզումների մասին: Դավանանքով տարբեր, բայց գոյավիճակով նման հայ և ռուս եկեղեցիների շահերն այս հարցում համընկնում էին:

Սրանք են, ահա, սակավաթիվ այն նյութերը, որոնք լույս են սփռում կիևահայ գաղթօջախի պատմության հնագույն շրջանի վրա:

XII դ. կեսերից Կիևի պատմության համար սկսվում է նոր շրջան՝ ի հետևանս, նախ, ռուսական բաժնեկալվածային իշխանությունների միջև ծայր առած գզվռտոցների, և ապա ավելի մեծ չափով, միջազգային ապրանքափոխանակության մայրուղիների փոփոխության:

Սելջուկ-թուրքերի աշխարհավեր արշավանքները և Իրանի, Անդրկովկասի ու Փոքր Ասիայի բռնագրավումը, խաչակրաց արշավանքները՝ դեպի մերձավոր արևելյան երկրներ, Երուսաղեմի, Անտիոքի, Կիպրոսի խաչակիր իշխանությունների ստեղծումը Միջերկրականի ափերին, Կիլիկիայի հայկական պետության տնտեսական ու քաղաքական հաջողությունները և, մանավանդ, բյուզանդական կայսրության ամենազարգացած շրջանների բռնագրավումը խաչակիրների կողմից և լատինական կայսրության ստեղծումը այդ

---

118 Ա. Տեր-Միքելյան, *Միջին դարերի կաթողիկոսների ձգտումները եկեղեցական խաղաղության համար* («Արարատ», 1893, № 4, էջ 349), նաև՝ Ատ. Մնացականյան, *Մոսկվան միջնադարյան հայկական մի պոեմում* («Տեղեկագիր», 1948, № 3, էջ 49): Գրիգոր Տուտեորդուց վկայակոչված հատվածը ճիշտ մեկնաբանելու համար պետք է խորամուխ լինել թղթագրության հանգամանքների ու բովանդակության մեջ: Գրիգոր Տղա կաթողիկոսը Տուտեորդուն հասցեագրած իր երկու նամակներով անդրադառնում է բյուզանդացիների հետ եկեղեցական միության ստեղծելու նպատակով տարվող բանակցությունների ընթացքին: Նրա միտք բանին այս է. հայերը Քրիստոսի բնության մասին հույների հետ վիճաբանելիս՝ ամուր դիրքի վրա չեն գտնվում, ուստի ստիպված են որոշ զիջումներ կատարել: Իր պատասխան թղթով, Տուտեորդին, ամենայն վճռականությամբ մերժում է ավանդական դիրքերից գույզն իսկ զիջում կատարելու հնարավորությունը: Վերջում, չթաքցնելով նուրբ հեգնանքը, նա խորհուրդ է տալիս եկեղեցական միությունը գլուխ բերել՝ հայոց դավանանքը պարտադրելով մյուս եկեղեցիներին, այսինքն վճռականորեն մերժում է միության գաղափարն իսկ, քաջ գիտակցելով, որ հույներն ու ֆռանկները միության կոչեր են անում Հայաստանում և հայկական գաղթավայրերում իրենց ազդեցությունն ուժեղացնելու նպատակով: Սանահինցիների առաջնորդը գրում է. «Ի Հռոմս երթիցես, տուր առ նոսա հաւանութիւն և ամենայն ազգին ֆռանկաց, առ ասորիս և քրիստոնէութեամբ պատուել մեծափառ եկեղեցիս Ռուզաց, խնդրեալ զպատշաճս ի նոցանէ. և միով հաւանութեամբ թէ տայցեն՝ ճանապարհորդեա ի քաղաքն Կոստանդնուպօլիս, տուր զմկրտութիւն լուսաւորութեան, և ըստ օրինաց՝ նախնի քոց հարցն՝ օրհնութեամբ պսակեա զսուրբ Սոփիա, որեարք (տպված է՝ որ է այրք—Լ. Խ.) նոցա, և քրիստոսազարդ փառօքն զարդարեալ, յարեմտից ծագեալ ընդ հիւսիս կոչել յորդեգրութիւն հաւատոյ սրբոյ աւազանին ծննդեամբ զբարեյաղթ քրիստոսապսակեալ թագաւորս մեր՝ զսիրելի ամենեցուն, այպէս հաստատեալ պարծանս առ աստուած, ասելով. «Ահա ես և մանկունք իմ» («Արարատ», 1893, էջ 349):

երկրամասերում, հսկայական ու հեղաբեկիչ հետևանքներ ունեցան Արևելքի ու Արևմուտքի քաղաքական, տնտեսական և մշակութային կյանքի բոլոր բնագավառներում։

Մենք արդեն առիթ ենք ունեցել անդրադառնալու իտալական քաղաքապետությունների՝ Ջենովայի ու Վենետիկի, դեպի Սև ծովի ավազանը կատարած առաջխաղացման և միջազգային նշանակություն ունեցող ճանապարհների հանգույցներում հենակետեր ստեղծելու պատմական դրվագներին։ Այդ երկու թշնամի քաղաքների հակամարտությունից, ի վերջո, հաղթանակով դուրս եկավ Ջենովան. մինչև Կաֆայի գրավումը թուրքերի կողմից (1475 թ.), նրա հսկողության տակ էին գտնվում Ղրիմից և Կովկասի հյուսիս-արևմտյան շրջաններից դեպի եվրոպական երկրներ ձգվող ծովային ու ցամաքային գլխավոր ճանապարհները, որոնց երթուղիների մեջ ևս կատարվեցին փոփոխություններ։ Կիևահայ գաղթօջախի պատմության առնչությամբ առաջին հերթին անհրաժեշտ է հիշատակել, որ «Վարյագներից դեպի Հունաստան» տանող հին ճանապարհը կորցրեց իր երբեմնի նշանակությունը, և նրա դերն իր վրա առավ նախկին ուղեգծից դեպի արևմուտք ձգվող այն նոր մայրուղին, որը Բալթիկ ծովը շաղկապում էր Սև ծովին՝ Վիսլա—Արևմտյան Բուգ—Դնեստր գետերի միջնորդությամբ[119]։

Այս նոր ճանապարհի տարբեր հատվածներում բարգավաճեցին առևտրաարհեստագործական մեծ նշանակություն ունեցող նոր քաղաքներ. Աքքերմանը՝ Դնեստրի գետաբերանի ծովախորշում, Կամենեց-Պոդոլսկը՝ Ռուսաստանից դեպի Մոլդավիա և դեպի Հարավային Եվրոպայի այլ երկրներ տանող ճանապարհների վրա և մանավանդ՝ Լվովը, որը երկու նշանավոր ճանապարհներով (via nova և via antique) կապված էր Լեհաստանի ու կենտրոնական Եվրոպայի երկրների հետ։ Միջազգային ճանաչում ստացան նաև Լուցկ և Վլադիմիր (հայկական աղբյուրներում՝ Օլատիմիր) քաղաքները, որոնց վրայով աշխույժ ապրանքափոխանակություն էր կատարվում Կիևայի, հյուսիսային Լեհաստանի, Մագդեբուրգի և Հանզայի մեջ ընդգրկված մերձբալթյան քաղաքների հետ[120]։

Կամենեց-Պոդոլսկ և Լվով քաղաքների հայկական ինքնավար մարմինների մեծաքանակ արձանագրությունները և հայերեն, ղփչախերեն, լեհերեն լեզուներով պահպանված դիվանական բազմաթիվ փաստաթղթերն ու այլ սկզբնաղբյուրներ հնարավորություն են ընձեռում հանգամանորեն լուսաբանելու հայկական այդ խոշոր գաղթօջախների և նրանց հետ կապված մյուս բնակավայրերի պատմության հետ կապված շատ դրվագներ, բացահայտելու նրանց կատարած դերը Հարավային Ռուսաստանի (մասնավորապես Գալիցյան և Վոլինյան երկրամասերի) տնտեսական կյանքի տարբեր բնագավառներում։

Առանց չափազանցության կարելի է հաստատել, գրել է այդ մասին պրոֆ. Ի. Լիննիչենկոն, որ Հարավային Ռուսիայի ամենանշանավոր հայկական կենտրոնները՝ Լվովը, Լուցկը, Կամենեց-Պոդոլսկը, իրենց հարստությամբ, փարթամությամբ և նշանակությամբ՝ մեծ մասամբ ու հատկապես պարտական են

---

119 *В. Т. Пашуто*. Очерки по истории Галицко-Волынской Руси, 1950, էջ 167։

120 *Я. Д. Исаевич*. Культура Галицко-Волынской Руси («Вопросы истории», 1973, № 1, էջ 94—95)։

հայերին։ Այս ճարպիկ, աշխույժ և բոլոր ասպարեզներում հաջողակ ժողովրդի շնորհիվ էր հատկապես, որ Հարավային Ռուսիայի առևտրական կենտրոնները միջնորդի դեր կատարեցին Արևելքի և Արևմուտքի առևտրի ասպարեզում[121]։

Հարավային Ռուսաստանում և Լեհաստանում այնքան էին սովոր հայերին տեսնել միայն արևելյան ապրանքներ վաճառողի մենաշնորհային դերում, որ մի ամբողջ շարք արևելյան ապրանքներ՝ «հայկական ապրանք» էին կոչվում[122]։

Քաղաքական ու տնտեսական այս տեղաշարժերի հետևանքով XII դ. վերջին տասնամյակներից սկսած Կիևը դադարեց ռուս իշխանների աթոռանիստ կենտրոն լինելուց և զրկվեց դարերի ընթացքում հաստատած միջազգային իր կապերի մի մասից։ 1240 թ. մոնղոլական հորդաները գրավեցին Կիևը ու այնպիսի ծանր հարված հասցրին նրա տնտեսությանը, որ քաղաքն այլևս անկարող եղավ վերահաստատելու իր գերագահությունը միջնադարյան ռուսական քաղաքների շարքում[123]։ Շուտով ռուսական եկեղեցու հոգևոր պետը մետրոպոլիտական իր աթոռը Կիևից փոխադրեց Մոսկվայից ոչ հեռու՝ Կլյազմայի վրա գտնվող Վլադիմիր բարգավաճ քաղաքը։

1362—1471 թթ. Կիևը գտնվում էր Լիտովյան մեծ իշխանության տիրապետության տակ, իսկ այնուհետև, մինչև Ուկրաինայի վերամիավորումը Ռուսաստանի հետ (1654 թ.) ենթակա էր Լեհաստանին, հանդիսանալով Կիևյան վոյեվոդության վարչական կենտրոնը։

Պատմական ձախորդ այս հանգամանքների հետևանքով, ինչպես տեսանք, Կիևը մեծապես տուժել էր ու զրկվել իր երբեմնի փառքից, սակայն սխալ կլիներ կարծել, թե երկարատև այդ դարերի ընթացքում քաղաքը չի ապրել վերելքի ու ծաղկման պահեր։ Կան որոշակի փաստեր այն մասին, որ չնայած տնտեսական ու քաղաքական ծանր պայմաններին, XIV դ. վերջերին վերականգնվել էին Կիևի կապերը Մոսկվայի հետ, և Լեհաստանից Ռուսաստան ձգվող հիմնական ճանապարհն այդ ժամանակ էլ անցնում էր նրա վրայով։ Լեհ անվանի գիտնական Մ. Մալովիստի կարծիքով XV դ. Կիևը Մոսկվայից դեպի Կաֆա տանող հիմնական ճանապարհի կարևորագույն հանգրվանն էր։ Մոսկվայից Կիև էին ժամանում պատմական նախորդ շրջանից հայտնի ուղիներով, այնուհետև անցնում էին Կանև ու Չերկաս և միշտ երկյուղ կրելով թաթարական հարձակումներից՝ սայլերով ու բեռնակիր անասուններով կտրում էին տափաստանը, Պերեկոպով մտնում էին Ղրիմ։ Ըստ նույն գիտնականի այս երթուղին, չնայած իր վտանգավորությանը, ավելի բանուկ էր, քան այն ճանապարհները, որոնք Մոսկվան կապում էի Կաֆայի հետ Վոլգայի կամ Դոնի վրայով[124]։

---

121 Տե՛ս Ի. Ա. Լինիչենկո, *Լեհաստանի և արևմտյան-հարավային Ռուսիայի հայերը, Մոսկվա, 1894, էջ 3 (համմ.* Վ. Ռ. Գրիգորյան, *Կամենեց-Պոդոլսկի հայկական դատարանի արձանագրությունները, էջ 37—38)։*

122 *Л. Меликсет-Бек,* նշվ. աշխ., էջ 113։

123 *Б. Д. Греков.* նշվ. աշխ., էջ 501—507։ *В. Васильевский.* նշվ. հոդված։ ЖМНП, 1888, июль, էջ 148։

124 *Marian Malowist.* Kaffa-kolonia genuèska na Krymie i problem vschodni w latach 1453—1475, Warszawa, 1947 (հմմ. *М. Н. Тихомиров.* Пути из России в Византию, էջ 18—19)։

Այս ճանապարհի առևտրական նշանակության և Կիևի արտաքին կապերի ընդլայնման մասին ուշագրավ տվյալներ է հաղորդում նաև Միխայիլ Լիտվինը՝ լավատեղյակ մի անձնավորություն (Լիտվայի դիվանագիտական ներկայացուցիչը Ղրիմում), որը հեղինակն է 1548—1551 թթ. ընդգրկող մի հուշագրության. «Կիևը,— գրում է նա,— լի է օտարերկրյա ապրանքներով, քանի որ չկա ավելի սովորական մի ճանապարհ, քան այն հին ու հանրահայտ ճանապարհը, որը տանում է... դեպի Դնեպրի Տավանյան գետանցը, իսկ այնտեղից էլ տափաստանով դեպի Կիև: Այս ճանապարհով Ասիայից, Պարսկաստանից, Հնդկաստանից, Արաբիայից, Սիրիայից առաքվում են դեպի Մոսկվա, դեպի Պսկով ու Նովգորոդ... արևելյան բոլոր ապրանքները, այսինքն՝ թանկարժեք քարեր, մետաքս, մետաքսե գործվածքներ, խունկ, բուրավետ նյութեր, զաֆրան, պղպեղ և այլ համեմունք: Այս ճանապարհով հաճախ ուղևորվում են օտարերկրյա վաճառականներ. նրանք կազմում են կարավան կոչվող խմբեր, երբեմն բաղկացած 1000 մարդուց և շարժվում են բազմաթիվ բարձված սայլերի և բեռնավորված ուղտերի ուղեկցությամբ»[125]:

Այստեղ թվարկված ապրանքներն են հենց, որ «հայկական ապրանք» անունն էին ստացել. ուստի պետք չէ տարակուսել, որ Կիևի վրայով դեպի հյուսիս ու, մասնավորապես, դեպի Մոսկվա ուղևորվող «օտարերկրյա վաճառականների» շարքում հայերը կենտրոնական տեղ են գրավել:

Այս ժամանակաշրջանի Կիևի հայկական գաղթօջախի մասին համեմատաբար ավելի առատ տեղեկություններ են պահպանվել: Հայ-ուկրաինական հարաբերությունների վաստակաշատ ուսումնասիրող Յա. Դաշկևիչը Լվովի հնադարաններում պահվող մի քանի տասնյակ փաստաթղթերի վրա հայտնաբերեց Կիևի հայկական գաղութի ինքնավարության ղեկավար մարմնի՝ տանուտերերի խորհրդի կնքադրոշմը. ԱՅՍ Է ՄՈՀՐՆ ՄԱՆԳԵՐՄԱՆԻ ՏԱՆՈՒՏՐԱՑ մակագրությամբ: Կնիքը բոլորաձև է. կենտրոնում պատկերված է գառն աստուծո՝ խաչակերպ վերջավորությամբ մի դրոշ պարզած[126]: Այս գյուտով հաստատվեց, որ կիևահայերը կազմակերպված են եղել և ճանաչվել պետության կողմից որպես առանձին համայնք, ունենալով իրենց ինքնավար մարմինները:

Ինչպիսի՞ իրավունքներով է օժտված եղել տանուտերերի այս խորհուրդը հարցին կարելի է պատասխանել հաշվի առնելով այն տվյալները, որոնք վերաբերում են Ուկրաինայի մյուս հայկական գաղթօջախների ինքնավար մարմիններին: 1572—1619 թթ. Լվովի հայկական համայնքի դատարանում որպես

---

125 «Мемуары, относящиеся к истории Южной Руси», т. I, Киев, 1890, էջ 51 (հմմ. М. Фехнер. նշվ. աշխ., էջ 19—20):

126 Я. Р. Дашкевич. Армянские общественные печати на Украине. «Բանբեր Մատենադարանի», № 11, 1973, էջ 240:

Կնիքի դրոշմը կրող փաստաթղթերի ծայրային թվականներն են 1648—1730 թթ.: Այդ շրջանում Կիևի հայկական համայնքը, ինչպես տեսնելու ենք ստորև, այլևս գոյություն չուներ. քաղաքում ապրում էր միայն մի քանի հայ ընտանիք: Սակայն Լվովի հայ տանուտերերը տնօրինում էին եկեղեցուն պատկանող կալվածքների հասույթները և շեն էին պահում եկեղեցին: Կնիքը գործածում էին հաստատելու համար այն փաստաթղթերը, որոնք առնչվում էին մարած գաղթօջախի եկեղեցուն պատկանող կալվածքներին ու հասույթներին: Այդ հանգամանքը, սակայն, կնիքի իրավական ուժի վրա չի ազդել. պետական մարմինները, քաջ տեղյակ լինելով, որ կիևահայ գաղութը ունեցել է իր ինքնավար մարմինը, նրա մարումից հետո էլ վավերական են ճանաչել այդ մարմնի կնիքը կրող փաստաթղթերը:

գրագիր աշխատող Մինաս Թոխաթեցի բանաստեղծը հայ դատավորների իրավունքների մասին գրել է այսպիսի տողեր.

ԶՀայոց ազգն դորա դատեն,
Ուխտ և դաշինք կու հաստատեն,
Զապստամբեալսն խրատեն,
Զկարգ և զսահմանքն կու պընդեն:
Երկոտասան դատաւորք են,
Զծուռն և զշիտակն դորա քննեն,
Զմեղապարտսն վիրաւորեն
Եւ զուղիղսն ազատեն[127]:

«Այսօրինակ դատաւորք,— ասում է նրանց մասին Մ. Բժշկյանը,— կոչէին տանուտերք, և ամենայն ինչ, թէ աշխարհական և թէ եկեղեցական, նոցին վճռաւ որոշեալ լինէր»[128]:

Համայնքին վերաբերող հարցերով նրանք իրավասու էին դիմելու պետական իշխանություններին, անմիջական հարաբերությունների մեջ մտնելու պետական բարձրագույն ատյանների, նույնիսկ թագավորի հետ, տնօրինելու համայնքի ներքին գործերը, ղեկավարելու բարեգործական հաստատությունները և այլն[129]: Այդպիսի իրավունքներով էր օժտված, անշուշտ, նաև կիևահայերի տանուտերերի խորհուրդը:

Ստույգ հայտնի է, որ Պոդոլ թաղամասում կիևահայերն ունեցել են համայնքի միջոցներով կառուցված ու շեն պահվող հիվանդանոց, որի գոյությունն իսկ առհավատչյան է համայնքի ինքնավար մարմինների աշխույժ գործունեության և նյութական միջոցների առատության[130]:

Հաշվի առնելով Հայաստանի խոշոր քաղաքների և Արևելյան Եվրոպայի հայկական մի շարք գաղթավայրերի մասին առկա տվյալները, կարելի է ենթադրել, որ Կիևի հայկական ինքնավար մարմինները ևս մեծ չափով մասնակցել են քաղաքի ինքնապաշտպանության աշխատանքներին. ամրությունների կառուցման համար նյութական միջոցներ ու աշխատուժ են տրամադրել, աշխարհազորային ռազմունակ ուժեր են կազմակերպել ու վտանգի պահին դրանք ռազմի դաշտ առաջնորդել[131]: Կիևահայերի գործունեության այս կողմը լուսաբանելու համար ևս հարկադրական մի շեղում ենք կատարելու:

---

127 Ն. Ակինյան, *Հինգ պանդուխտ տաղասացներ*, Վիեննա, 1921, էջ 80. Համտ. Վ. Գրիգորյան, *Կամենեց-Պոդոլսկ քաղաքի հայկական դատարանի արձանագրությունները*, Երևան, 1963, էջ 56:

128 Մ. Բժշկյան, Նշվ. աշխ., էջ 216:

129 Վ. Գրիգորյան, Նշվ. աշխ., էջ 56—57:

130 *Д. И. Мышко*. О жизни армян в Киеве в XV—первой половине XVII вв. «Исторические связи и дружба украинского и армянского народов». Киев, 1965, էջ 113—121:

131 Հայտնի է, օրինակ, որ Կամենեց-Պոդոլսկի հայերն իրենց միջոցներով կառուցել ու դարերի ընթացքում հաճախ վերանորոգել են քաղաքի պարիսպների մի հատվածը, որ հայտնի է Հայկական ամրություն (Армянский редут) անունով: Պարիսպների այդ հատվածի պաշտպանությունը հայերի պարտականությունն է եղել, և նրանք քաջաբար են կատարել իրենց քաղաքացիական պարտքը (Համտ. Մ. Բժշկյան, Նշվ. աշխ., էջ 135, Վ. Գրիգորյան, Նշվ. աշխ., էջ 34 և այլն):

Հարավային Ռուսաստանի Կիևյան, Վոլինյան և Պոդոլյան երկրամասերի աշխարհագրական դիրքն ու դարավոր հարևանությունը միմյանց հաջորդող վաչկատուն ժողովուրդների՝ պեչենեգների (IX—XI դդ.), ղփչախների (XI—XIII դդ.), թաթար-մոնղոլների (XIII—XVIII դդ.) հետ՝ իր խորը կնիքն էր դրել նրանց բնակչության կյանքի ու կենցաղի վրա։ Արևելյան երկրների հետ հաղորդակցվելու խոշոր գետային ու ցամաքային ճանապարհները՝ «Վարյագներից դեպի Հունաստան» ձգվող գետային ուղին և, մանավանդ, Կիևից Ղրիմ տանող կարավանային ճանապարհը՝ անցնում էին քոչվորների հսկողության տակ գտնվող երկրամասերով. և նրանք ոչ միայն դարանակալ հարձակումներ էին գործում անցնող ու դարձող կարավանների վրա, այլև պարբերաբար, զինական մեծ ուժերով, հարձակվում էին ռուսական քաղաքների վրա՝ ավարում, ավերում, գերեվարում։ Այդ արշավանքներն ավելի հաճախակի էին դարձել XV դ. 80-ական թթ. հետո, երբ թուրքերին հպատակված Ղրիմի խաները, գրեթե ամեն տարի, իսկ երբեմն նույնիսկ տարին մի քանի անգամ, արշավում էին դեպի Կիև ու հարևան շրջանները՝ հսկայական նյութական կորուստներ պատճառելով խաղաղ բնակչությանը[132]։

Ավազակային այս ներխուժումների առաջն առնելու համար Կիևի իշխանության հարավային շրջաններում տակավին XI դ. կառուցվել էին մի շարք բերդ-ամրոցներ, որոնք՝ հետագա դարերում ավելի ընդարձակվելով՝ վեր էին ածվել ռազմական ու տնտեսական խոշոր կենտրոնների։ XV—XVI դդ. Դնեպրի աջափնյա տարածություններում քոչվորների դեմ մարտնչում էին Կիևը, Կանևը, Չերկասը, Ժիտոմիրը, Բրասլավը, Վիննիցան, Կրեմենեցը, Կամենեց-Պոդոլսկը, Լվովը, Գալիչը[133] և այլ քաղաքներ։ Այդ ամրոց-քաղաքներում էին պատսպարվում նաև շրջակա գյուղերի բնակիչները, որոնք դաշտային աշխատանքների էին դուրս գալիս զինավառ։ Քաղաքացիները իրենց ձիերով ու զեն-

---

132 «Очерки истории СССР», II, էջ 556. *М. Грушевский*. Иллюстрированная история украинского народа, СПб., 1913, էջ 154։

133 Հին Գալիչի հայկական գաղութի պատմության համար զգալի հետաքրքրություն են ներկայացնում վերջերս այդ քաղաքի մոտ Պանտելեյմոն եկեղեցում հայտնաբերված հայերեն արձանագրությունները, որոնց գծագրությունները բերված են Օ. Խալփախչյանի «Культурные связи Владимиро-Суздальской Руси и Армении» հետաքրքրական աշխատության մեջ։ Ամբողջովին պահպանված և լավ ընթերցվող միակ արձանագրությունը վերծանվում է այսպես (վերծանությունն առաջարկում ենք ձեռքի տակ ունենալով հաջող մի լուսանկար, որ ժամանակին մեզ ուղարկել էր Յա. Դաշկևիչը). «Ես Ավխատուրս Թուլայլին որդին գիրեց գիրս. թվ. ՊՂԴ (1444)»։ Օ. Խալփախչյանը Թուլայլ անձնանունը վերծանել է «Թուլայգ» (Тулайг) սխալ ձևով, մինչդեռ ճիշտ ձևն ուշադրավ է՝ առնչվելով թոնդրակեցիներին տրված թուլայլեցի անվանը։

Օգտվելով առիթից, առաջարկում ենք և մեկ ճշգրտում։

Օ. Խալփախչյանն իր այս ուսումնասիրության մեջ, ինչպես նաև «Պատմա-բանասիրական հանդեսի» 1971 թ. № 2-ում (էջ 254—262) տպագրած հոդվածում, վերատպել է Սերբիայի Պետրովիցի քաղաքից 10 կմ արևելք գտնվող Վիտովնիցա վանքի եկեղեցիներից մեկի հայերեն կառուցողական արձանագրությունը, որը պատմական կարևոր արժեք է ներկայացնում՝ լինելով հավաստի փաստ այդ երկրամասում հայկական հին գաղթավայրի գոյության։ Ցավոք պետք է նշել, սակայն, որ Օ. Խալփախչյանը (ինչպես և նրանից առաջ ուրիշներ) ճիշտ չի վերծանել արձանագրության ամենակարևոր մասը՝ թարեթիվը։ Արձանագրության վերջին փակագիր «Ամէն» բառից առաջ պարզ կարդացվում է «ՈԻԷ» (1178) թվականը։ Տասնավոր «Ի» թվի ձախակողմյան ուղղահայաց գծի ներքևի հատվածը կարճ է փորագրված, ճիշտ այնպես, ինչպես կարճ են այդ տառի բոլոր գրությունները նույն արձանագրության մեջ։ Հաշվի առնելով այդ հանգամանքը, «Ի»-ի փոխարեն հարգելի գիտնականը «Կ» է կարդացել, որի հետևանքով եկեղեցու կառուցման թվականը, 1178-ի փոխարեն համարել է 1218-ը։

քերով պարտավոր էին մասնակցել ինչպես պաշտպանական մարտերին, այնպես էլ թշնամուն հակահարված տալու նպատակով կազմակերպվող արշավներին։ Այս պայմաններում քաղաքացիներից յուրաքանչյուրը (արհեստավոր կամ առևտրական) միաժամանակ զենքի սովոր ռազմիկ էր[134]։ Առավել չափով ռազմունակ էին վաճառականները, որոնք ստիպված էին զենք կրելու և ըստ հարկի այն օգտագործելու առևտրի նպատակով ձեռնարկած իրենց ուղևորությունների ժամանակ։ Ըստ ինքյան հասկանալի է, որ կիևահայերը բացառություն չէին կազմում։ Նրանք էին հենց կարավաններ կազմած մշտապես երթևեկում վերը հիշատակված վտանգավոր ճանապարհներով։ Ուստի հարաժամ պատրաստ պիտի լինեին կողոպտիչներին դիմագրավելու, իրենց անձն ու գույքը պաշտպանելու[135]։

Այս անհրաժեշտ ներածականից հետո դյուրավ պիտի հասկանանք և ըստ արժանվույն գնահատենք Սիմեոն Լեհացու հաղորդած խիստ արժեքավոր տվյալը Մանքերման-Կիևի հայերի մասին։ Վերհիշելով հայկական այդ հին գաղութի փառավոր անցյալը, հայրենասեր հեղինակը ցավով է արձանագրում, որ իր ապրած ժամանակներում, այսինքն XVII դ. սկզբներին՝ նախկին բազմամարդ ու շեն գաղութից պահպանվել են միայն տխուր հիշատակներ։ Նա գրում է. «Եւ մեծն Մանքէրման ասին թէ յորժամ սէֆէր լինէր, հինգհարիւր հոգի կելէր Հայոց ի պատերազմ, եարար պահատուրնի (այսինքն՝ արի դյուցազուններ—Լ. Խ.). Եւ այժմ չորս տուն հայի մնացել է, բայց շատ խանութնի, վախըֆ տներ, ջաղացք, արտեր, պախչանի և այլք դեռ հայոց ձեռքն է»[136]։ Ըստ այսմ կիևահայերը վտանգի պահին թշնամու դեմ դուրս էին բերում 500 ռազմիկ-քաղաքացիներ։ Այս ուշագրավ տվյալը, գրանցված արժանահավատ ու ճշմարտախոս հեղինակի կողմից, բացառիկ արժեք ունի XV—XVI դդ. Կիևում բնակություն հաստատած հայերի մոտավոր թիվը որոշելու համար։ Եթե նույնիսկ ենթադրենք, որ կիևահայ ընտանիքներից յուրաքանչյուրն ի վիճակի էր աշխարհազորային ունենալու, ապա ընտանիքների թիվը պետք է առնվազն 500 լիներ, իսկ հայ բնակիչների թիվը՝ 2500-ից ոչ պակաս (ամեն մի ընտանիք 5 անձից բաղկացած համարելով)[137]։ Բայց նկատի պետք է առնել և այն հանգամանքը, որ քաղաքում կային նաև երիտասարդ որդի կամ հասուն տղամարդ չունեցող բազմաթիվ ընտանիքներ. Եթե նրանց նվազագույն թիվը 100 հաշվենք, ապա՝ կիևահայության թիվը կավելանա ևս մի քանի հարյուրով։

134 Առավել կամ նվազ չափով ռազմիկներ էին միջնադարյան բոլոր քաղաքների բնակիչները, և արևմտյան, և արևելյան երկրներում։ Հայտնի է, որ XIII դ. 30-ական թթ. Հայաստան ներխուժած մոնղոլական նվաճողների դեմ հերոսաբար մարտնչեցին հենց քաղաքացի-աշխարհազորայինները՝ Գանձակի, Անիի, Կարսի, Երզնկայի և այլ քաղաքների աշխատավոր բնակչությունը։

135 Լեհ պետական պաշտոնյաները վկայել են, որ Կիևի ու մյուս սահմանամերձ քաղաքների բնակիչները զինված են հրացաններով և գիտեն գնդակ կրակել» (*М. Грушевский*, նշվ. աշխ., էջ 154)։ Կիևցիները 1523 թ. բողոքագիր են ներկայացրել լեհ իշխանություններին ու մեղադրել իրենց վոյեվոդ Անդրեյ Նեմիրովիչին այն բանում, որ նա անօրեն քայլեր է կատարում, բռնագրավում է իրենց ձիերն ու զենքերը, ստիպում արշավի դուրս գալ հետիոտն և այլն (*Н. Костомаров*. Богдан Хмельницкий, историческая монография, т. I, СПб., 1884, էջ 11)։

136 Սիմէոնի դպրի Լեհացւոյ Ուղեգրութիւն, ուսումնասիրեց և հրատարակեց Ն. Ակինեան, Վիեննա, 1936, էջ 347—348։

137 Այս հաշվով են առաջնորդվում միջնադարյան քաղաքների բնակչության թիվը մերձավորապես որոշել ցանկացող ուսումնասիրողները։

Թվական այս արդյունքը գուցե և փոքր-ինչ չափազանցված, արտահայտել է իրական պատկերը։ Հայտնի է, որ նույն այդ ժամանակներում Լուցկ քաղաքում բնակվել է 800 հայ ընտանիք (այսինքն շուրջ 4000 անձ)[138]. 1566 թ. հայերը Կամենեց-Պոդոլսկում ունեցել են 900 տուն (ընտանիքների թիվը հասել է մինչև 1200-ի)[139]. բազմամարդ է եղել նաև Լվովի հայկական գաղութը։ Մոլդավիայի Սուչավա մայրաքաղաքում հայերի թիվն անցել է 3000-ից[140] և այլն։

Իրականին մոտ համարելով Սիմեոն Լեհացու տվյալները, կարող ենք հետևցնել, որ Կիևի հայ աշխարհազորայինները պատկառելի ռազմական ուժ լինելով՝ ի վիճակի էին ոչ միայն արժանավայել տեղ գրավելու քաղաքի պաշտպանական համակարգում, այլև ապահովելու կիևահայ վաճառականների բոլոր ուղղություններով շարժվող կարավանները հափշտակիչների հարձակումներից։

Ի լրումն վերոհիշյալի հարկ է նշել, որ մեջբերված փաստերի լույսի տակ այլևս կասկածելի չեն կարող համարվել գերմանական ասպետական միաբանությունների և թուրք-թաթարական զավթիչների դեմ ռուս, լիտվացի և լեհ ժողովուրդների մղած կենաց ու մահու մարտերին հայերի բերած մասնակցության մասին առկա տեղեկություններն ու ակնարկները[141]։

Կիևի հայոց ինքնավար մարմնի՝ «Տանուտիրաց խորհրդի» հետ միասին, գաղութի կյանքում մեծ դեր է կատարել հայ եկեղեցին՝ միջնադարյան այն միակ կազմակերպությունը, որը սերտ կապեր պահպանելով հայրենի երկրի հետ ու իր հսկողության տակ պահելով գաղափարական ազդեցության բոլոր զսպանակները՝ հսկայական ազդեցություն է ունեցել մայր երկրից ծովերով ու ցամաքներով բաժանված գաղթօջախների բնակչության բոլոր խավերի վրա։

Շուրջ 3000 բնակիչ ունեցող գաղթօջախում, անշուշտ, պետք է գոյություն ունենային մի քանի հայկական եկեղեցիներ, որոնցից միայն մեկի՝ Աստվածածնի վերափոխման եկեղեցու մասին ունենք ստույգ տեղեկություն։ Այն կառուցվել է XV դ. կեսերին[142]։ Տվյալներ կան նաև Կիևի մերձակայքում Գրիգոր Լուսավորչին նվիրված մի տաճարի վերաբերյալ, բայց հայտնի չէ. հայերի՞ն է պատկանել այն, թե եղել է ռուսական տաճար[143]։ Ուշագրավ է, որ կիևահայերը, մանավանդ ուրիշ վայրերից Կիև ժամանած հայ վաճառականները, հոգևոր իրենց կարիքները բավարարելու համար օգտվել են նաև ռուսական եկե-

---

138 Սիմեոն Լեհացի, էջ 347։

139 Վ. Գրիգորյան, նշվ. աշխ., էջ 19։

140 «Ученые записки Молдавского филиала АН СССР», том VI (серия историческая), Кишинев, 1957, էջ 262։

141 Նկատի ունենք, մասնավորապես, 1410 թ. Գրյունվալդի և 1444 թ. Վառնայի ճակատամարտերը։

142 *Н. Закревский*. Описание Киева, том II, М., 1868, էջ 859, том I, М., էջ 453—454 (օգտվել ենք Գ. Միքկոյի վերոհիշյալ հոդվածից)։

143 *Л. Меликсет-Бек*, նշվ. աշխ., էջ 120։ Ռուսաստանի տարբեր վայրերում եղել են Գրիգոր Լուսավորչին նվիրված տաճարներ և, ավելի մեծ քանակությամբ՝ առանձին խորաններ. օրինակ Նովգորոդի մոտ գտնվող և 1198 թ. կառուցված Փրկչի եկեղեցու (Спас Нередицы) խորանի աբսիդի վրա նկարված են Գր. Լուսավորիչը, իսկ հյուսիսային պատին՝ Հռիփսիմյան կույսերը։ Գր. Լուսավորիչը պատկերված է նաև Խուտինի վանքի հենց Լուսավորչի անվամբ 1445 թ. կառուցված եկեղեցում և այլն (տե՛ս О. Х. Халпахчьян, նշվ. աշխ., էջ 12—13)։

*ղեցիներից։ Այդ եկեղեցիների մայրը համարվող Սբ. Սոֆիայի տաճարում՝ Սբ. Անտոնի և Սբ. Թեոդորոսի խորանի հյուսիսային պատին, պահպանվել են Գրիգոր Լուսավորչի և Հռիփսիմեի որմնանկարները. դրանց՝ ինչպես և տաճարի այլ մասերի որմնանկարների վրա վերջերս հայտնաբերվեցին Ղրիմից, Աղքերմանից և այլ վայրերից Կիև այցելած հայ վաճառականների և հոգևորականների կողմից խազված 24 հիշատակագրություններ*[144]*. հայերեն տառերի հետքեր նկատվում են նաև տաճարում գտնվող Յարոսլավ Իմաստունի սարկոֆագի կափարիչի վրա*[145]*։*

*Վերջերս հայտնի դարձավ, որ Կիևո-Պեչորյան վանքի ստորգետնյա նորահայտ լաբիրինթոսներում ի հայտ են բերվել բացառիկ արժեք ունեցող ռուսերեն, լեհերեն և հայերեն արձանագրություններ։ Ցավոք, դրանք դեռևս չեն հրապարակվել, ուստի հայտնի չէ, թե երբ են գրվել և ինչ բովանդակություն ունեն*[146]*։*

*Կիևում մեկից ավելի հայկական եկեղեցիներ լինելու մեր ենթադրությունն ուժ է ստանում լեհական աղբյուրներից քաղված մի վկայությամբ, ուր խոսք կա 1371—1378 թթ. Կիևում հայ եպիսկոպոսության առկայության մասին*[147]*։ Մի նոր շեղում կատարելով, փորձենք լուսաբանել այս հարցը։*

*1328 թ. մի հիշատակարանի մեջ, առաջին անգամ լինելով, հիշվում է Սուղդացի (Սուրոժցի) Գրիգոր քահանայի որդի Ստեփանոս եպիսկոպոսը, որպես «երջանիկ արքեպիսկոպոս... Խրիմի աշխարհին»։ Նրա թեմի կենտրոնն է Կաֆա քաղաքը։ Չի անցնում երկու տասնամյակ և նույն այդ հոգևոր գործիչը հիշատակվում է իր ժամանակակիցների կողմից՝ արդեն որպես «Ամենայն հիւսիսային (կամ հիւսիսական) կողմանց» կոչվող թեմի առաջնորդ*[148]*։ Դժվար չէ կռահել, որ այն ժամանակ Կաֆայում նստող հայ արքեպիսկոպոսին էին ենթարկվում Ղրիմից հյուսիս ընկած երկրամասերը, ուստի նաև Կիևում բնակություն հաստատած հայերը։ Կացությունն, ըստ երևույթին, փոխվել է 1360—1370-ական թթ., երբ, ինչպես ասացինք վերը, Կիևում հայտնվում է ինչ-որ հայ եպիսկոպոս։ Այդ մասին լուր ունի նաև Ալոյսիուս Պիզոն. «զԿիև ասեն լինել նախկին աթոռանիստ քաղաք արքեպիսկոպոսին հայոց, ուրանօր*

---

[144] *Այս կարևոր արձանագրությունների մեծ մասը թվագրված է. կան 1507, 1510, 1514, 1537, 1545, 1556, 1557, 1551, 1575, 1577, 1605, 1607 թթ. հիշատակագրություններ, որոնք խնամքով հրատարակել է արձանագրագետ Գ. Գրիգորյանը (տե՛ս նրա* «Армянские надписи Киевского собора святой Софии» *հոդվածը՝ «Լրաբեր», 1979, № 4, էջ 85—93)։ Դրանց մեջ Կիևը հիշատակված է իր Մանքրման (նաև՝ Մանկրման) անունով, ճիշտ այնպես, ինչպես կոչվում էր այդ քաղաքը միջնադարյան պարսկերեն, արաբերեն, լատիներեն, հայերեն մի շարք աղբյուրներում (տե՛ս Л. С. Хачикян.* Новые материалы о древней армянской колонии Киева. «Исторические связи и дружба украинского и армянского народов», Ереван, 1961, *էջ 110—120։*

[145] *Վ. Հարությունյան, Հայկական մի արձանագրության մասին («Տեղեկագիր», 1956, № 5, էջ 110։*

[146] *Е. Оберемок.* Встреча с легендой. «Комсомольская правда», 1979 г. 30 июня, *էջ 4։*

[147] *Я. Р. Дашкевич, նշվ. հոդվածը, «Բանբեր Մատենադարանի», № 11, 1973, էջ 241։*

[148] *«ԺԴ դարի... հիշատակարաններ», էջ 208, 350, 370, 397, 400, 410։*

պատրիարք կոչէր արքեպիսկոպոսն և էր ընդ իշխանութեամբ կաթողիկոսին... այլ և իրաւունս ունէր ձեռնադրելոյ եպիսկոպոսունս»,— գրում է նա[149]։

Լվովի հայկական առաջնորդարանում անցյալ դարի վերջերին պահվում էին Հայոց կաթողիկոսների կողմից առաքված բազմաթիվ կոնդակներ. դրանք խնամքով հրատարակված են Ղ. Ալիշանի կողմից։ Կոնդակներից առաջինը՝ տրված Մեսրոպ կաթողիկոսի կողմից, կրում է 1364 թվականը և ծանուցում է Լվով կենտրոնով եկեղեցական մի նոր թեմ ստեղծելու վճիռը[150]։ Այնտեղ միաժամանակ ասված է, որ տարիներ առաջ, նույն այդ կողմերում եղել են ուրիշ առաջնորդ-եպիսկոպոսներ, որոնք, սակայն, գործել են «առանց մերոյ աթոռոյս հրամանի»։ Ինչպե՞ս հասկանալ այս տեղեկությունը։ Արդյո՞ք Գանձասարի կաթողիկոսներն են առաջին քայլերը կատարել այս երկրամասերում հայկական եկեղեցական թեմ հաստատելու ուղղությամբ, թե՞ ինքնագլուխ ինչ-որ եկեղեցականներ են հրապարակ իջել, ենթակա չլինելով որևէ կաթողիկոսի։ Այս հարցերին առայժմ չենք կարող հիմնավոր պատասխան տալ։

Հաշվի առնելով, ահա, այդ հանգամանքը, Մեսրոպ կաթողիկոսը եպիսկոպոս է օծում Գրիգոր անունով մի հոգևորականի և թեմական առաջնորդի պաշտոնով ուղարկում Լվով։ Կոնդակի մեջ նորաստեղծ թեմի սահմանները նշված են այսպես. «Այլ և մերով բարձր առաքելական և հայրապետական ամենընկալելի հրամանաւդ պարգևեցաք զձեզ՝ ըզԼաւվդ, և ըզՎլատիմիր, իւր սահմանեաւ վիճակաւդ՝ Լուցկայիւ», այսինքն՝ Գալիցիայի և Վոլինիայի նշանավոր քաղաքները՝ Լվովը, Վլադիմիրը և Լուցկը[151]։ Կիևն այստեղ չի հիշատակված և գուցե այն պատճառով, որ Կիև կենտրոնով եղել է հայ եկեղեցու մի ուրույն թեմ։ Պետք է նշել, սակայն, որ մի քանի տարի անց փոխվում է իրավիճակը. 1379 թ. պարոն Նասրատինի որդի Հովհաննես կրոնավորը, հավանաբար Կաֆա քաղաքից մեկնում է Սիս՝ ինչ-որ թեմի (բացառված չէ, որ հենց Կիևի) եպիսկոպոս ձեռնադրվելու համար։ Կաթողիկոսը, գժտված լինելով Լվովի առաջնորդ վերոհիշյալ Գրիգոր եպիսկոպոսի հետ, այս Հովհաննեսին եպիսկոպոս է կարգում ոչ միայն Լվով, Վլադիմիր ու Լուցկ քաղաքներն

149 Ա. Պիդու, Կարճառոտ տեղեկութիւնք զարգի վիճակէ, զսկզբանէ և ծաւալմանէ առաքելական քարոզութեանն առ Հայս Լեհաստանի, Վալախիոյ և մերձակայ աշխարհաց (տե՛ս «Թանի միութիւն հայոց Լեհաստանի ընդ եկեղեցւոյն Հռովմայ, ժամանակակից յիշատակարանք», Ս. Պետերբուրգ, 1884, էջ 16)։ Կիևի հայ եպիսկոպոսի մասին Ա. Պիդուի հաղորդած տվյալները՝ գրավոր հիմք չեն ունեցել (նա գրում է «...ասեն լինել...»)։ Կարելի է կարծել, որ նա կամ իր տեղեկատուն Կիևի երբեմնի հայ եպիսկոպոսին օժտել է պատրիարքական իրավունքներով (այդ եպիսկոպոսն, իբր, իրավունք է ունեցել նույնիսկ ինքնագլուխ կերպով ուրիշ եպիսկոպոսներ ձեռնադրելու...), փորձելով «փաստերով» հիմնավորել Նիկոլ Թորոսովիչի անօրինական գործողությունները և պայքարը Հայոց եկեղեցու գերագահության դեմ (հիշենք, որ Ա. Պիդուն կաթոլիկ կղերական էր, որ միջոցների առջև կանգ չէր առնում, Նիկոլ Թորոսովիչի հետ միասին, Լվովի հայերին բռնի կաթոլիկ դարձնելու համար)։

150 Ղ. Ալիշան, Կամենից, տարեգիրք հայոց Լեհաստանի և Ռումենիոյ հաւաքեալ յաւելուածովք, Վենետիկ, 1896, էջ 5—8։

151 Լուցկի հայոց եկեղեցին սուրբ Ստեփանոսի անվան էր. գոյություն է ունեցել 1445-ից շատ առաջ։ Այդ թվականին Լիտվական իշխան Սվիդրիգայլոն հայկական այդ եկեղեցուն նվիրել է Ցեպերով գյուղը. հետագայում եկեղեցին ձեռք է բերել նաև այլ կալվածքներ («Հայ ժողովրդի պատմություն», հատոր IV, Երևան, 1972, էջ 362։ Տե՛ս նաև Б. В. Колосок, П. П. Мах, Л. П. Санжаров. Луцьк, Київ, 1972, էջ 17, ուր գրված է. «Գալիցա-Վոլինյան առևտրի բնագավառում հայերի կատարած դերը փոքր չէ. Վոլինում նրանք հաստատվել են արդեն XIII դ.։ XIV—XV դդ. նրանք Լուցկում կառուցել են եկեղեցիներ»)։

ընդգրկող թեմի վրա, այլև մեծապես ընդարձակում է հայ գաղթաշխարհի այդ առաջնորդության սահմանները՝ նրան ենթակա դարձնելով հին Ռուսիայի և Մոլդավիայի բոլոր հայկական գաղթօջախները։ Թեմական նոր առաջնորդ Հովհաննես եպիսկոպոսը մի կարևոր հիշատակարանի մեջ կոչված է «Ամենայն Ռուսաց և Աւլախաց աշխարհի» հայոց առաջնորդ[152], իսկ նրա գլխավորած ընդարձակ թեմի սահմանները 1388 թ. կաթողիկոսական կոնդակի մեջ թվարկված են այսպես. «...գրեմք ի յամէնօրհնեալ և յաստուածապահ, յանուանի և յականաւոր թագաւորանիստ քրիստոսական մայրաքաղաքն ի Լովն և յամենայն վիճակն իւր բոլորովին. ի Սերաթն, ի Ջիչովն, ի Կամենեցն, ի Լուցկայն, ի յԱւլատէմուրն, ի Մանքրման, ի Վըլախաց երկիրն, և ի Պոտինն, ի յԸնկի-Սալայն, և ի յայլ ամենայն թեմն իւր առ հասարակ»[153]։

Այստեղ հիշատակված են, առաջին հերթին, Մոլդավական, ապա Գալիցիայի և Վոլինիայի ամենանշանավոր ու բազմամարդ հայկական գաղթօջախները։ Թվարկումը կատարված է հաշվի առնելով նրանց աշխարհագրական դիրքը՝ հարավից հյուսիս. նախ Մոլդավիայի Սերաթ և Սեչով (գրված՝ Ջիչով) քաղաքները, ապա Կամենեց-Պոդոլսկը, Լուցկը, Վլադիմիրը, Կիևը (Մանքրման)[154]. այնուհետև հիշատակված է Վլախաց երկիրը՝ միջնադարյան Վալախիան, որի նշանավոր քաղաքներում ևս (Տրգովիշտեում, Բուխարեստում և այլն) վաղ ժամանակներից բնակվել են հայ գաղթականներ։ Որոշ դժվարությունների ենք հանդիպում վերջին երկու՝ Պոտին և Ընկի-Սալայ տեղանունների ճշգրտման ճանապարհին։

Ղ. Ալիշանը, կասկածանքով, Պոտինը նույնացրել է Հունգարիայի մայրաքաղաք Պուտա-Բէշտի (իմա՛ Բուդապեշտ) հետ[155]։ Կարծում ենք, որ կասկածների հիմք չկա, քանի որ Կամենիցյան «Տարեգրքում», 1526 թ. վերաբերող մի գրանցման մեջ այդ մասին ասված է շատ որոշակի. «զՊուտին քաղաքն՝ որ էր դախթն Մաճարաց» (այսինքն՝ «Պուտին քաղաքը, որ Մաջարների աթոռանիստն էր»)[156]։

Մնում է պարզել Ընկի-Սալայ կոչված բնակավայրի տեղադրությունը։ Մեր կարծիքով կաթողիկոսական կոնդակը հարդարող գրագիրը կամ Ղ. Ալիշանի համար արտագրող անձնավորությունը՝ այս տեղանունը սխալ է վերծանել. բնագրում, մեծ հավանականությամբ, եղել է Ընկի-Սարայ, այսինքն՝ Ենկի (Նոր) Սարայ. հայտնի է, որ այդպես էր կոչվում Ոսկե Հորդայի նոր մայրաքաղաքը՝ Սարայ-Բերքեն, ուր, ինչպես ասել ենք արդեն, հաստատվել էին մեծ քանակությամբ հայ գաղթականներ։

Կրկին դառնալով հայ եկեղեցու «Ամենայն Ռուսաց և Աւլախաց» կոչվող թեմին, պետք է եզրակացնենք, որ այդ թեմի առաջնորդի հոգևոր իշխանությունը, ընդգրկելով անծայրածիր տարածություններ, իր մեջ է առել Ոսկե

---

152 Մաշտոցի անվան Մատենադարան, ձեռ. № 1527, էջ 7ա, 667բ (հմմտ. «ԺԴ դարի... հիշատակարաններ», էջ 529)։

153 Ղ. Ալիշան, Կամենից, էջ 9. տե՛ս Թեոդորոս կաթողիկոսի կոնդակը։

154 Մանքերմանի կապակցությամբ Ղ. Ալիշանը գրել է. «Համարիմք Ագքերման», այսինքն՝ նույնացրել է Դնեստրի գետաբերանի նշանավոր նավահանգիստ, վաճառաշահ Աքքերմանի հետ։ Արդեն ապացուցել ենք, որ Մանքերմանը Կիևն է (տե՛ս մեր «Новые материалы о древней армянской колонии Киева», վերոհիշյալ հոդվածը)։

155 Ղ. Ալիշան, նշվ. աշխ., էջ 4։

156 Նույն տեղում, էջ 17։

Հորդայի մայրաքաղաքից սկսած մինչև Հունգարիայի մայրաքաղաքն ընկած երկրամասերի հայկական գաղթօջախները։

Կիև-Մանքերմանը, եթե նույնիսկ չի եղել երբևէ աթոռանիստ կենտրոն, ապա, անտարակույս, նշանակալից դեր է կատարել՝ որպես այս թեմի ամենաբազմամարդ հայկական գաղթօջախներից մեկը։

Լիտվայի մեծ իշխան, նշանավոր Կազիմիր IV-ի[157] կողմից տրված հրովարտակներով կիևահայերը քաղաքի բուն բնակիչներին համահավասար իրավունքներ են ձեռք բերել տնտեսական գործունեության բոլոր մարզերում. ազատորեն զբաղվել են առևտրով ու արհեստներով, կառուցել են տներ, ունեցել բանջարանոցներ և այլն։

Հայերի բնակության հիմնական վայրը եղել է Պոդոլ թաղամասը՝ Դնեպրի ափին. այստեղ նրանք ունեցել են իրենց հավաքատեղին, բազմաթիվ բնակելի տներ, արհեստանոցներ, խանութներ ու պահեստներ[158]։ Գաղթօջախի բնակչության մեծամասնությունն, անշուշտ, զբաղված է եղել առևտրով։ Եղել են մեծահարուստ վաճառականներ, որոնք մտել են քաղաքի արտոնյալ դասի մեջ և օգտվել Մագդեբուրգյան իրավունքից[159]։ Կարելի է ենթադրել, որ այդ դասի մեջ էին մտնում նաև հայազգի սակավաթիվ պետական պաշտոնյաները[160], ինչպես նաև թարգմանի պաշտոն ունեցող անձինք, որոնք հաճախ կատարում էին դիվանագիտական հանձնարարություններ։ Հայեր են եղել նաև բերդաբնակ քաղաքացիների մեջ, բայց հայերի մեծամասնությունը, ինչպես ասվեց, բնակվել է Պոդոլ թաղամասում. այստեղ է կառուցված եղել նաև Աստվածածնի վերափոխման եկեղեցին։

Վաճառականներից և առևտրի հետ աղերսվող այլ զբաղմունքի տեր քաղաքացիներից բացի, կիևահայերի մեջ եղել են մեծ թվով արհեստավորներ. կաշեգործներ, մուշտակագործներ, կոշկակարներ, գինեգործներ, ջրաղացպաններ և այլն։

Հայկական գաղթօջախների պատմությանը նվիրված ուսումնասիրություններում, ինչպես և սպասելի էր, կենտրոնական տեղ է հատկացվում առևտրական դասի գործունեության հարցերին։ Արհեստագործության տարբեր ճյուղերի զարգացման գործում հայերի կատարած դերի մասին նույնպես որոշ նյութեր են դրվել շրջանառության մեջ։ Գրեթե անտեսված է, սակայն, գյուղատնտեսության բնագավառը։ Միջնադարյան քաղաքների բնակչության մի զգալի մասն զբաղվել է գյուղատնտեսությամբ։ Անվարան կարելի է նշել, որ գրեթե բոլոր երկրներում, ուր ստիպված խարիսխ են նետել տարագիր հայ զանգվածներ, նրանց մեջ եղել են հմուտ այգեգործներ և բանջարաբույծներ։

---

157 Մեծ իշխան է եղել 1440—1447 թթ., այնուհետև դարձել է Լեհաստանի թագավոր. մահացել է 1492 թ.։

158 Д. М. Мышко, նշվ. աշխ., էջ 115—116։

159 Մագդեբուրգյան իրավունքից օգտվող, ուստի հայկական ինքնավար մարմինների իրավասությունից դուրս գտնվող մեծահարուստ բոլոր հայ վաճառականներին ճանաչելն անհնարին է. Նրանցից շատերի անուն-ազգանունները ռուսականացված են այն աստիճան, որ հայկական ծագման հետքերն իսպառ ջնջվել են։ Անկասկած հայեր են ստորև հիշատակվողները. Իլյա Օրմենին, Յուլյան Օրմենին, Մորոզին Օրմենին, Կիրկոր Օզիրկովիչ, Ֆեդկո Սերկիզին (տե՛ս Д. М. Мышко, նշվ. աշխ., էջ 117)։

160 Այդպիսի բարձրաստիճան մի պաշտոնյա է եղել Փիլիպպոս Հայը, որը երկարամյա ծառայությունների դիմաց 1540 թ. Լիտվայի մեծ իշխան Սիգիզմունդից կալվածքներ է ստացել Կիևի շրջակայքում (Д. М. Мышко, նշվ. աշխ., էջ 115)։

*եվ նրանք մեծ ջանքեր են գործադրել իրենց նոր բնակավայրերում արմատավորելու գյուղատնտեսական բարձր կուլտուրաների մշակությունը։ Նույնը պետք է ասել նաև կիևահայերի մասին։ Քաղաքից դուրս՝ շրջակա գյուղերում*[161], *և քաղաքի տարբեր թաղամասերում՝ Շչեկավիցայում, Օբոլոնում, Վիշգորոդի մոտակայքում, և, մանավանդ, իրենց բնակության բուն վայրում՝ Պոդոլում, հայերն ունեցել են այգիներ, ստեղծել են գինեգործարաններ, և իրենք էլ վաճառքի են հանել իրենց պատրաստած գինիները։ «Հայերը,— իրավացիորեն նշել է Դ. Միշկոն,— որպես գինեգործության բնագավառի մասնագետներ, եռանդուն կերպով նպաստել են խաղողագործության զարգացմանը Կիևում»*[162]*։*

*Գաղթած լինելով դաշտավարական և այգեգործական մշակույթի հազարամյա ավանդույթներ ունեցող մի երկրից, գյուղատնտեսության մարզում աշխատող կիևցի հայերը, անտարակույս, կիրառելու էին երկրագործության մշակույթի իրենց նախնիներից ժառանգած արդյունավետ եղանակները, հայ-*

---

161 *«Պատմական փաստաթղթերը,— գրել է Դ. Միշկոն,— վկայում են, որ այդ ժամանակ (XV դ.) հայերը Կիևի մոտակայքում՝ Կուրենևկայում, Սիրեցում, Ժիտոմիրյան ճանապարհի երկայնքով՝ ունեցել ու մշակել են բանջարանոցներ՝ և այգիներ» (նշվ. աշխ., էջ 114)։*

162 *Այս առիթով հարկ ենք համարում, մի փոքր շեղում կատարելով, հարևանցիորեն անդրադառնալ միջնադարյան Ղրիմի խաղողագործության զարգացման գործում հայերի կատարած դերին, որ երբեմն անտեսվում է որոշ ուսումնասիրողների կողմից (տե՛ս, օրինակ,* М. К. *Старокадомская.* Русское торговое население генуэзской Каффы. «История и археология средневекового Крыма», М., 1958, *էջ 154)։ Վ. Միքայելյանն արդեն լույս է սփռել այս հարցի վրա (տե՛ս «Ղրիմի հայկական գաղութի պատմություն», I, էջ 201)։ Ավելացնենք, որ Սուրխաթում և Կաֆայում ընդօրինակված հայերեն ձեռագրերի հիշատակարաններում գրանցված են մի շարք հայ այգեգործ-գինեգործների անուններ. հիշատակված են, օրինակ, Գրիգորիս և Տուրք այգեպանները, Աղբարշահ, Էվատշահ և Օդուլ գինեգործ-գինեվաճառները (տե՛ս «ԺԴ դարի... հիշատակարաններ», էջ 366, 367, 576, «ԺԵ դարի... հիշատակարաններ», Բ, էջ 112)։*

*Դոնի ափաստանում, ինչպես և Հյուսիսային Կովկասի մի շարք շրջաններում ևս (մասնավորապես Ղզլարում և Մոզդոկում)՝ խաղողագործության զարգացումն անխզելիորեն կապված է հայերի անվան հետ (*Վ. Բ. Բարխուդարյան*, Նոր Նախիջևանի հայկական գաղութի պատմություն, Երևան, 1967, էջ 146)։ Ըստ որոշ տեղեկությունների, Ֆրանսիայի Փիլիպպոս Հանդուգն թագավորը (1342—1402) Հայաստանից հրավիրել է հայ գինեգործներ, որոնց գործած հնձանները ցարդ պահվում են Դիժոնի գինու գործարանում (*Ա. Ալպոյաճյան*, Պատմություն հայ գաղթականության, Բ, Գահիրե, 1955, էջ 618)։ Տեղեկություններ կան Աֆղանստանի Քաբուլ քաղաքում գինեգործությամբ զբաղված հայերի մասին և այլն։ Ի լրումն այս ամենի հիմքեր կան ենթադրելու, որ հայերը խաղողագործությամբ և գինեգործությամբ զբաղվելու որոշ փորձեր են կատարել նույնիսկ հեռավոր Չինաստանում, տակավին Թան դինաստիայի տիրապետության դարաշրջանում, այսինքն՝ 618—907 թթ. միջոցին։ Պահպանվել են այդ ժամանակ պատրաստված հախճապակե գունազարդ արձանիկներ՝ տարբեր ազգի մարդկանց՝ ույգուրների, թոխարցիների, կաշգարցիների, խորեզմցիների, պարսիկների, սեմական ժողովուրդների և այլոց դիմորոշ պատկերներով։ Դրանց շարքում ուշագրավ տեղ են գրավում հայի արտաքին հատկանիշներով (արծվակտուց-կեռ քիթ, սև բեխ ու մորուք) օժտված անձանց արձանիկները, որոնք կերտված են ծալապատիկ նստած և յուրաքանչյուրը մեկական գինով լի տիկ բռնած (*The werterners among the figurines of the t'ang dynasty o China, by Jane Gaston Mahler, Roma, *1959, գունավոր ներդիրը՝ դրված 94—95 էջերի միջև և պատկերների բաժնի III* a, b, c, d *սև-սպիտակ լուսանկարները)։*

*Այս մի քանի փաստերը հիշատակեցինք այն հույսով, որ առաջիկայում որևէ տնտեսագետ-պատմաբան, խնամքով հավաքելով ցաքուցրիվ բոլոր նյութերը, հատուկ հետազոտություն է գրելու տարբեր երկրների գյուղատնտեսության զարգացման գործում հայ գաղթականների կատարած դերի մասին։*

ընիքից բերած կամ հայրենի ավանդույթներով ստեղծած արտադրական գործիքները՝ նպաստելով դրանց տարածմանն ու արմատավորմանը աշխարհագրական այդ նոր միջավայրում[163]։

Այս առումով հետաքրքրական են նաև Կիևի հայկական համայնքին պատկանող ջրաղացների մասին առկա տեղեկությունները։ Սիմեոն Լեհացին իր «Ուղեգրության» մեր կողմից արդեն մեջբերված հատվածում հավաստում էր լոկ, որ Կիևում հին ժամանակներից մինչև իր օրերը, գործում էին հայերին պատկանող ջրաղացներ։ Դրանց մասին տեղեկություններ կան նաև օտար աղբյուրներում։ Փաստաթղթերը վկայում են, գրել է Դ. Միշկոն, որ հայերը Սիրեց գետի վրա ունեցել են ամբարտակ, արհեստական լճակ ու ջրաղաց, որից ստացվող եկամուտը հատկացված է եղել եկեղեցու կարիքներին[164]։ Հիշատակված ամբարտակն ստեղծվել է, անշուշտ, Սիրեց գետի ջուրը ջրաղացի թափանիվն աշխատացնելու համար անհրաժեշտ մակարդակի բարձրացնելու նպատակով։ Պետք է ենթադրել, որ Հայաստանում լայն տարածում գտած ջրաղացների նմանողությամբ Կիևի մերձակայքում կառուցված ջրաղացներն ընդօրինակվել են տեղացիների կողմից, տարածվել շրջակայքում, և իրենց նպաստը բերել հացահատիկի աղացման տաժանակիր աշխատանքի դյուրացման գործին։

Տնտեսության տարբեր բնագավառներում կիևահայերի ծավալած գործունեության բնագավառները վերոհիշյալով չեն կարող սպառված նկատվել։

Որոշ ուսումնասիրողներ, օրինակ, հարևանցիորեն նկատել են, որ հայ ճարտարապետության ու որմնանկարչության ազդեցության հետքեր են նկատվում սուրբ Սոֆիայի տաճարի, Միքայել հրեշտակապետի ոսկեգմբեթ վանքի և Կիևի ճարտարապետական հնագույն այլ հուշարձանների վրա[165]։ Կա՞ն արդյոք հիմնավոր փաստեր այսպիսի եզրահանգումների համար, չգիտենք։ Հարցը կարևոր է և կարոտ մասնագիտական անկանխակալ հետազոտությունների։

Ընթերցողների ուշադրությանն ենք հանձնում ևս մի հարց։ Հայտնի է, որ Լվովում՝ Գալիցյան Ռուսիայի հայաշատ այդ մայրաքաղաքում, հայ վարպետների կողմից, թերևս հենց հայ վաճառականների նախաձեռնությամբ, կտրվել են սեփական արծաթե դրամներ[166]։ Արծաթե նման դրամներ հատվել են

---

163 Նշանավոր հնագետ Ա. Վ. Արցիխովսկին, որ շեշտում է արտադրական գործիքների զարգացման փուլերի ուսումնասիրության սոցիոլոգիական կարևոր նշանակությունը, ձեռքի տակ չունենալով վստահելի աղբյուրներ, հեռամետ դատողություններ է անում քննարկման նյութ դարձնելով Հռոմի երկրագործական մշակույթի մասին հայտնի նյութերը, որոնք Ռուսաստանի հետ անմիջական առնչություն չունեն (տե՛ս А. В. Арциховский, Социологическое значение эволюции земледельческих орудий. «Труды социологической секции РАНИОН», 1927, էջ 133)։ Պետք է հուսալ, որ շոշափելի արդյունքներ կարելի է ստանալ հայկական նյութի օգտագործման ճանապարհով, նկատի առնելով հայկական բազմաթիվ գաղթօջախների գոյությունն ու հայ երկրագործների և այգեգործների գործունեությունը ռուսական այդ երկրամասերում։

164 Д. Мышко, նշվ. աշխ., էջ 115։

165 Նույն տեղում, էջ 114։

166 Я. Д. Исаевич. նշվ. աշխ., («Вопросы истории», 1973, № 1, էջ 95)։ Այստեղ ասված է, որ Մոլդավական դրամակշռային համակարգը ձևավորվել է Գալիցյան համակարգի օրինակով։ Նկատի ունենալով մոլդավական քաղաքներում հայ առևտրական կապիտալի կատարած մեծ դերը, կարելի է հետևցնել, որ դրամակտրության գործն այստեղ ևս հայերի մենաշնորհն է եղել։

*նաև Կիևում՝ X դ. վերջերին—XI-ի սկզբներին (դրանից հետո, երկար ժամանակ, շրջանառության մեջ են գտնվել Կիևում պատրաստված որոշակի կշիռ ունեցող արծաթե կշռաչափերը)*[167]*։ Դրամագետների գործն է, առաջիկայում հատուկ ուսումնասիրության նյութ դարձնելով այս հարցը, պարզել, թե Կիևյան դրամների ու կշռաչափերի արտադրության մեջ ինչ դեր է վիճակված եղել հայ վարպետներին։*

*Լուծման կարոտ հարցերի այս շարքը կարելի է լրացնել նոր կետերով, որոնք, վերը թվարկվածներին գումարվելով, հաստատելու են այն միտքը, թե կիևահայ գաղթօջախի պատմության ամբողջական պատկերը ուրվագծելու համար հաղթահարվելու են դեռևս շատ դժվարություններ։*

*Լեհաստանի և Լիտվական մեծ իշխանության միջև կնքված Լյուբլինյան դաշնագրից հետո (1569 թ.) Կիևի վիճակը ավելի է վատթարանում։ Լեհ ազնըվականությունն ու կաթոլիկ եկեղեցին սկսում են բռնագրավել ուկրաինացիներին և հայերին պատկանող քաղաքամերձ կալվածքները։ Ըստ երևույթին հենց այս ժամանակ մեծ ծավալ է ստանում կիևահայերի արտագաղթը հարավ-արևելյան Եվրոպայի վաճառաշահ այլ կենտրոններ։ Արտագաղթի հոսքը չի դադարում նաև այն բանից հետո, երբ Ռեչպոսպոլիտայի թագավոր Ստեփան Բատորին (1575—1586) հատուկ հրովարտակով վերահաստատում է հայերի իրավունքը՝ Կիևում կալվածքներ, խանութներ, արհեստանոցներ ունենալու 1596 թ. կնքվում է Բրեստի եկեղեցական ունիան. Ուկրաինական եկեղեցին ստիպողաբար միավորվում է կաթոլիկ եկեղեցու հետ և ընդունում Հռոմի պապի գերիշխանությունը։ Դրանից հետո, ինչպես իրավացիորեն նշում է Դ. Միշկոն, կիևահայերը շատ ավելի անզուսպ ճնշումների են ենթարկվում։ Կաթոլիկ և ունիթոռ հոգևորականները կանգ չեն առնում միջոցների առջև՝ հայերին ևս կաթոլիկ դարձնելու և հայ եկեղեցուն պատկանող կալվածքները բռնագրավելու ճանապարհին։ Կիևը չլքած սակավաթիվ հայերը, Լվովի հայկական մագիստրատի օժանդակությամբ, փորձում են դիմագրավել այդ ճնշումներին, իրենց ձեռքում պահել համայնապատկան կալվածքները, սակայն այդ պայքարն, ի վերջո, անհաջող վախճան է ունենում։*

*Եվ այսպես, XVII դ. կեսերին կիևահայ գաղութը՝ շուրջ վեց հարյուրամյակ գոյություն ունենալուց հետո եզրափակում է իր պատմության միջնադարյան շրջանը։ Խամրում է գաղթօջախը՝ հսկայական դեր կատարելով հայ և ռուս ժողովուրդների միջև տնտեսական ու մշակութային կապերի ստեղծման ու ամրապնդման բնագավառում, մի քանի տասնամյակ հետո, պատմական ու սոցիալ-տնտեսական նոր պայմաններում նորից վերակենդանանալու հեռանկար ունենալով։*

*Իրենց հայացքը դեպի Ռուսաստան ուղղած հայերի համար Կիևի տեղը բռնում է համայն Ռուսիայի նոր ու հզոր մայրաքաղաք Մոսկվան։*

*Ինչ ճանապարհով էին հայ վաճառականները Կիևից ուղևորվում Մոսկվա. առայժմ այդ հարցին պատասխանելու հնարավորություն չունենք։ Ամենակարճ ուղին Դեսնա գետի եզերքով էր ընթանալու և կանգառներ էր ունենալու Նովգորոդ-Սևերսկ ու Բրյանսկ քաղաքներում։ Սակայն չի բացառված նաև Դնեպրյան ուղին՝ Լյուբեչ, Գոմել, Սմոլենսկ կանգառներով։ Սրանցից որն է*

---

167 *В. Л. Янин.* Денежно-весовые системы русского средневековья. Домонгольский период, М., 1956.

ավելի բանուկ եղել և երբ, կարելի կլինի պարզել մանրակրկիտ հետազոտություններ կատարելուց հետո։

Հայտնի է, որ XV դ. սկսած Պուտիվլ քաղաքը դառնում է տնտեսական աշխույժ կապերի աչքի ընկնող կենտրոն։ Ղրիմից ու Թուրքիայից Պուտիվլ են ժամանում օտարազգի (նաև հայ) մեծաքանակ վաճառականներ, որոնք այստեղ հանդիպում են Մոսկվայի մեծ իշխանության Կոլոմնա ու Մոժայսկ քաղաքներից եկած ռուս վաճառականների հետ[168]։

Հայտնի է միաժամանակ, որ XVII դ. սկզբներից որոշակի դեր է սկսում կատարել նաև ուկրաինական կազակական ամենախոշոր զորամիավորման՝ Նեժինյան գնդի կենտրոնը հանդիսացող Նեժին քաղաքը։ Վերջերս գիտական շրջանառության մեջ դրվեցին մի շարք արխիվային փաստաթղթեր, որոնք հետաքրքրական տեղեկություններ են պարունակում XVIII դ. 30-ական թթ. այդ քաղաքում մշտական բնակություն հաստատած կամ առևտրական գործերով եկող ու գնացող բազմաթիվ հայ վաճառականների մասին[169]։

Նկատի ունենալով այդ փաստերը, մենք, այնուամենայնիվ, կարծում ենք, որ հայ վաճառականները Կիևից Մոսկվա երթևեկել են Պուտիվլ—Բրյանսկ ուղեգծով, սակայն այդ վայրերի քաղաքներում մշտական ու կայուն գաղթօջախներ չեն ստեղծել։

* * *

1380 թ. սեպտեմբերի 8-ին ռուսական 150-հազարանոց բանակը, որի մեջ միավորվել էին գրեթե բոլոր բաժնետիրական իշխանությունների գնդերը, պարտության մատնեցին Ոսկե Հորդայի կրկնապատիկ զորքերին, որոնք Թումանբեկ Մամայի գլխավորությամբ արշավանքի էին դուրս եկել Մոսկվայի վրա։ Այդ առաջին խոշոր հաղթանակն էր 150 տարի ռուսական հողը կեղեքող դաժան թշնամու դեմ։ Հաղթանակը ցույց տվեց, որ ռուսական իշխանությունների կոտորակված ուժերի միավորումն գրավականն է լինելու մոնղոլական անարգ լծի թոթափման, մի լուծ, որը «ոչ միայն ճնշում, այլև անպատվում ու ցամաքեցնում էր իր զոհը դարձած ժողովրդի հոգին իսկ» (Կ. Մարքս)։ Կուլիկովյան փառավոր հաղթանակով Մոսկովյան մեծ իշխանությունը վերջնականապես իր ձեռքն առավ ռուսական հողերի միավորման հայրենանվեր գործի ղեկավարությունը և դուրս եկավ տնտեսական ու քաղաքական զարգացման լայն ասպարեզ։

Ըստ երևույթին հենց այս ժամանակաշրջանում էր, որ հայերը հաստատվեցին Մոսկվայում և սկսեցին զգալի դեր կատարել տարեցտարի հզորացող ռուսական այդ իշխանության տնտեսական կյանքի տարբեր ոլորտներում, մասնավորապես՝ արտաքին առևտրի բնագավառում։

Բազմիցս վկայակոչվելով համընդհանուր ճանաչում է գտել ռուսական տարեգրություններից քաղված այն տեղեկությունը, որի համաձայն 1390 թ. Մոսկվայում ծագած հրդեհն սկսվել ու տարածվել է Աբրահամ անունով մի հայի բնակարանից. «Загореся посад за городом от Аврама некоего ар-

---

168 М. В. Фехнер. Նշվ. աշխ., էջ 62։

169 Վ. Ա. Միքայելյան. Ղրիմի հայկական գաղութի պատմություն, I, էջ 187—193։ Вардкес Микаелян, Ваграм Мартиросян. Материалы по истории армянского купечества в России (30-ые годы XVIII в.). «Լրաբեր» 1978, №4, էջ 79—99։

менина»[170]։ Մասնագետների կարծիքով, տարեգիրը «քաղաքից դուրս՝ առևտրա-արհեստագործական արվարձան» ասելով նկատի է ունեցել նշանավոր Կիտայգորոդը, որի Վարվարկա կոչվող ամենաբանուկ փողոցի վրա՝ դեռևս XVII դ. կար մի հատված, ուր «տեղավորվում էին հայերն ու հույները»[171]։ Ուրիշ հավաստի տեղեկություններ՝ Մոսկվայում բնակություն հաստատած կամ Մոսկվայի հետ տնտեսական սերտ կապեր ստեղծած հայերի մասին այս դարաշրջանից չեն պահպանվել։ Եվ այն կարծիքն է տիրապետում, որ հայերի համակողմանի կապերը համայն Ռուսիայի քաղաքական, տնտեսական ու մշակութային կենտրոն դառնալու ընթացքի մեջ մտած Մոսկվայի հետ՝ տեսանելիորեն ուրվագծվում են այս դեպքերից առնվազն մեկ դար հետո։ Այնուհանդերձ, սկզբնաղբյուրների մեջ առկա որոշ ակնարկներ հնարավորություն են ընձեռել ուսումնասիրողներին Մոսկվայի հայկական գաղութի պատմության ակունքները որոնել հենց այս ժամանակաշրջանում։

XIV—XV դդ. սահմանագլխին Մոսկվայի մետրոպոլիտն էր Կիպրիանոսը, որը կատաղի հարձակումներ էր գործում հայերի դեմ՝ նրանց դավանանքը համարելով խոտելի հերձված։ Նա խստիվ պատվիրում էր բոլոր ուղղափառներին՝ շփում չունենալ հայերի հետ, տոներին ու պասուց օրերին չընդունել նրանց իրենց հարկի տակ, չհաստատել նրանց հետ մտերմական կապեր և այլն։ Մետրոպոլիտն այսպիսի խիստ հրահանգներ չէր արձակի, եթե կյանքում հակառակը տեղի չունենար։ Ռուս հասարակ մարդիկ,— ինչպես իրավացիորեն նկատել է ակադեմիկոս Մ. Տիխոմիրովը,— էական տարբերություններ չէին տեսնում ռուս-ուղղափառ և հայ-լուսավորչական դավանանքների միջև, հաճույքով մտերմանում էին հայերի հետ, ընդունում էին նրանց իրենց եկեղեցիներում, խնամիական կապեր հաստատում և այլն։ Դրանց դեմն առնելու նպատակն էին հետապնդում Կիպրիանոսն ու նրա հետնորդները։ 1423 թ. հրատարակված եպիսկոպոսների ձեռնադրության ծեսի մեջ հատուկ կետ սահմանվեց այն մասին, որ պետք է խստագույնս արգելվեն հայերի և ուղղափառների (ռուսների) միջև տեղի ունեցող ամուսնությունները, խնամիությունը և այլն[172]։

Այս կարգի կողմնակի վկայությունները, որքան էլ հետաքրքրական համարվեն և արժանի լինեն ուշադրության՝ անկարող են բավարարել մեր հարցասիրությանը։ Հին Մոսկվայի հայկական գաղութի պատմության գիտական լուսաբանության համար նոր նյութեր են պետք։

Բարեբախտաբար, այդպիսի նյութեր կան. բայց դրանք կարող են օգտագործվել մեր առջև ծառացած խնդիրների լուծման համար այն բանից հետո միայն, երբ նախօրոք հարթված լինի Մոսկվայի միջնադարյան պատմության կնճիռներից մեկը՝ կապված Մոսկվայի տնտեսական կյանքում մեծ դեր կատարած «սուրոժցի հյուրերի» ազգային պատկանելության և գործունեության բնագավառների հետ։

---

170 «Троицкая летопись», էջ 436, ПСРЛ, т. XVIII, էջ 140. В. Е. Сыроечковский. Гости-Сурожане, М., 1935, էջ 23 և այլն։

171 М. Н. Тихомиров. Средневековая Москва..., էջ 215։ Մ. Տիխոմիրովը Վարվարկա (նախկին Վարսկայա) փողոցի մասին գրում է. «Улица быстро стала оживленной артерией великого посада. Одним концом она входила к торговым рядам и Кремлю, другим—к городскому рву» (նույն տեղում, էջ 47—48)։

172 М. Н. Тихомиров, նշվ. աշխ., էջ 216։

* * *

XIV դ. ընթացքում Մոսկվան բարգավաճել և դարավերջին դարձել էր Արևելյան Եվրոպայի ամենախոշոր տնտեսական կենտրոններից մեկը։ Մեծ էին նրա կապերը ինչպես թաթարական տափաստանների, այնպես էլ եվրոպական երկրների հետ։ Նովգորոդն ու Մոսկվան մրցակիցներ էին ռուսական իշխանությունների և Եվրոպայի միջև տեղի ունեցող ու շարունակ ավելի լայն ծավալ ընդունող ապրանքափոխանակության բնագավառում։ Եվ եթե Նովգորոդը ռուսական ապրանքներ էր մատակարարում Հանզայի քաղաքներին, Մոսկվան իր հիմնական ուշադրությունը սևեռել էր հարավի վրա, կապված լինելով իտալական նշանավոր քաղաք-պետությունների՝ Ջենովայի ու Վենետիկի հետ։ Տնտեսական այդ կապերի հանգուցակետը Ղրիմի նշանավոր ծովափնյա քաղաքներն էին՝ նախ Սուրոժը, ապա Կաֆան։ Մինչև XV դ. 70-ական թթ., այսինքն՝ մինչև Ղրիմի գրավումը թուրքերի կողմից, այդ քաղաքները (մանավորապես՝ Կաֆան) վիթխարի դեր էին կատարում Ռուսաստանի համար՝ լինելով միջերկրածովյան հարուստ երկրների հետ տնտեսական կապերի հանգուցակետ, դեպի Եվրոպա բացված լայնարձակ հորիզոն ունեցող մի պատուհան։

Մենք արդեն առիթ ենք ունեցել նշելու, որ Կաֆայում հայերը մեծամասնություն են կազմել, իսկ Սուրոժում շատ ազդեցիկ դիրք գրավել։ Հարցի ուսումնասիրության արդի վիճակում կարելի է ապացուցված համարել, որ հիմնականում այդ քաղաքների հայ վաճառականներն էին զբաղված արևելյան երկրներից ներմուծվող ապրանքների՝ մասնավորապես մետաքսե շքեղ գործվածքների, համեմունքի, բուրումնավետ նյութերի և թանկագին քարերի առևտրով։ Մոսկվայում արևելյան այդ ապրանքների առևտրի մենաշնորհը գտնվում էր վերոհիշյալ «սուրոժցի հյուր» («гости сурожане») կամ ուղղակի «սուրոժցի» («сурожанин») կոչվող վաճառականների ձեռքում[173]։

Եվ այսպես, «սուրոժցի հյուր» կամ «սուրոժցի» էին կոչվում Մոսկվայի բարձրագույն դասի վաճառականները, ի տարբերություն «սուկոննիկների» (մահուդավաճառների) և մյուս առևտրականների։ Սրանք իրավական իրենց գոյավիճակով հավասարեցված էին բոյարներին և հոգևորականությանը, ազատված էին մի շարք հարկերից ու մաքսերից, իրավասու էին առանց տուրք վճարելու իրենց տներում ոգելից խմիչք պահելու և, որ ամենակարևորն է, անմիջապես ենթակա էին մեծ իշխանի դատական ատյանին[174]։

---

173 Նշենք այստեղ, որ միջնադարյան տարբեր երկրներում լայնորեն գործածվել են որևէ քաղաքի անվան հետ աղերսված ուրիշ համանման տերմիններ։ Այսպես՝ օրինակ, Միջին Ասիայում արտաքին առևտուրը եղել է բուխարացի վաճառականների մենաշնորհը, և բոլոր այն մարդիկ, որոնք զբաղվել են այդ գործով, կոչվել են «բուխարայուրտուցի» («Очерки истории СССР», т. II, էջ 431)։ Թուրքական սուլթանները երկար ժամանակ Բարձր դռան թարգմանիչների պաշտոնին էին կոչում և Մոլդավիայի ու Վալախիայի գոսպոդարներ էին կարգում Կ. Պոլսի Ֆանար թաղամասի հույներին, ըստ այդմ վերոհիշյալ պաշտոնները գրաված անձինք կոչվում էին «ֆանարիոտներ»։ XVI դ. Մոսկվայում կար վաճառականների մի դաս, որին պատկանող անձինք կոչվում էին «սմոլենցի» («смоляне»), որոնք Սմոլենսկ քաղաքի բնակիչներ էին (Б. Н. Флоря. Привилегированное купечество... «История СССР», 1977, № 5, էջ 149)։ Այս կարգի փաստերի թիվը կարելի է կրկնապատկել։

174 М. Н. Тихомиров. Նշվ. աշխ., էջ 160։

«Սուրոժցի հյուր» կամ «սուրոժցի» տերմինները լայնորեն գործածական լինելով առտնին կենցաղում՝ կիրառվում էին նաև տարեգիրների կողմից, սակայն պաշտոնական հանգամանք չէին ստացել։ XIV—XV դդ. Մոսկվայի մեծ իշխանների ստորագրած պաշտոնական փաստաթղթերի մեջ վաճառականների այս դասը հիշատակվում է «հյուր» («ГОСТЬ») անունով միայն, մի տերմին, որ վաղ ժամանակներից հասկացվում էր «օտար երկրներից կամ այլ քաղաքներից ժամանած այն վաճառականներին, որոնք բնակվում կամ առևտուր էին անում ոչ այն վայրերում, ուր գրանցված էին»[175], այլ խոսքով «սուրոժցի» վաճառականները, չնայած Մոսկվայի տնտեսական կյանքում մեծ դեր էին կատարում, բայց իրենց գործունեության սկզբնական շրջանում, եթե նույնիսկ տարիներ շարունակ մնում էին Մոսկվայում՝ չէին համարվում այդ քաղաքի մշտական բնակիչներ։

Արդ՝ ո՞րն է եղել «սուրոժցիների» բուն բնակավայրը։ Այսպիսի հարց, որքան մեզ հայտնի է, չի էլ դրվել բանասիրության մեջ։ Ուսումնասիրողները տարակույս չեն ունեցել, որ «սուրոժյան հյուրերը» ժամանել են Ղրիմի թերակղզու վաճառաշահ համանուն քաղաքից—Սուրոժից, որը գտնվել է Կաֆայի և Ալուշտայի մեջտեղում ու մինչև Կաֆայի ծաղկումը հսկայական դեր է կատարել՝ որպես փոխանակային առևտրի միջազգային նշանակություն ունեցող կենտրոն։ Հույները քաղաքն անվանել են Սուգդայա, Սուգդեա, նաև Սուգդիա, արևմտաեվրոպական աղբյուրներում այն կոչվել է Սոլդայա, ռուսական աղբյուրներում՝ Սուրոժից բացի, նաև Սուդակ, արաբական աղբյուրներում՝ Սուդաղ, Սուրդակ կամ Սողդաղիա, Շողդաղիա. հայերը կոչել են Սուղդա կամ Սուղտա[176]։

«Սուրոժյան հյուրերին» անվերապահորեն Սուրոժ քաղաքի հետ շաղկապողները հաշվի չեն առել այն հանգամանքը, որ կան աղբյուրներ, որոնք այդ քաղաքի անունով Ղրիմի թերակղզին ամբողջությամբ կոչել են Սուրոժյան թերակղզի, իսկ արաբական (թերևս նաև ռուսական) որոշ աղբյուրներում ողջ Սև ծովն է ճանաչվել Սուրոժի անունով[177]։

Այս փաստերը ստիպում են ուսումնասիրողին շրջահայաց լինել այդ տեղանվան հետ առնչվող պատմաբանասիրական հարցերը մեկնաբանելիս։ «Սուրոժ» ասելով՝ Մոսկվայի բնակիչները, ամենայն հավանականությամբ, նկատի են ունեցել ոչ թե մասնավորապես Սուրոժ քաղաքը, այլ Ղրիմի թերակղզու հարավ-արևելյան ծովափն ամբողջությամբ, ներառյալ ափամերձ շրջանները, ուր XIII—XV դդ. Սուրոժից բացի և Սուրոժից ավելի ծաղկուն քաղաքներ էին դարձել Կաֆան, Սուրխաթը, Մանգուպը և այլ կենտրոններ։

Իսկ ի՞նչ կարող ենք ասել այդ «հյուրերի» ազգային պատկանելիության մասին։ Այս հարցը հուզել է մի շարք պատմաբանների։ Նրանց հայտնած

---

175 Вл. Даль. Толковый словарь, I, էջ 386։

176 Հայկական անվանման մասին տեղեկությունների աղբյուրը հայերեն ձեռագրերի հիշատակարաններն են, իսկ մյուս տվյալները քաղված են Վ. Վասիլևսկուց (տե՛ս В. Г. Васильевский. Труды, III, Петроград, 1915, էջ CLVI)։

177 Այս մասին տե՛ս А. Н. Веселовский, Южно-русские былины, СПб., 1884 («Сборник отделения русского языка и словесности Академии Наук, т. XXXVI, № 3, էջ 69—70)։

Պետք է ենթադրել, որ ռուսները Սուրոժցի անունով կոչել են Ղրիմին առափնյա ծովը և ոչ (կամ ոչ միայն) Ազովի ծովը, ինչպես ենթադրել են ոմանք (տե՛ս В. Е. Сыроечковский, նշվ. աշխ., էջ 17)։

տարբեր տեսակետներին անդրադառնալուց առաջ անհրաժեշտություն է զգացվում ծանոթանալ «սուրոժցի» տերմինի գործածության պատմությանը։ Առաջին անգամ այն հիշատակված է Իպատևյան տարեգրության մեջ՝ 1288 թ. տակ։ Այստեղ ասված է, որ Վոլինյան երկրամասի իշխան Վասիլյոկ Վլադիմիրովիչի մահվան և թաղմանական արարողությունների ժամանակ Վլադիմիր քաղաքում ներկա են եղել և ողբացել տարբեր ազգերի ներկայացուցիչներ. «Плакашеся над ним все множество Володимерцев, мужы и жены и дети, Немци и Сурожвце, Новогородцы, Жидове»[178]։ Այս տվյալը Մոսկվայի հետ որևէ առնչություն չունի և հենց այս առումով զգալի արժեք է ներկայացնում։ Դրա գոյությամբ ժխտվում է այն տեսակետը, թե «սուրոժյան հյուր» տերմինը գործածական է եղել միայն Մոսկվայում։

Տեղին է այստեղ վերհիշել, որ Վոլինյան Վլադիմիր նշանավոր քաղաքում բնակվել են բազմաթիվ հայեր, որոնք ունեցել են իրենց կազմակերպված համայնքն ու եկեղեցին։ Մահացած իշխանի հուղարկավորությանը քաղաքի բուն բնակիչներից՝ ռուսներից բացի, իհարկե, մասնակցել էին նաև ազգային փոքրամասնությունները, որոնցից հանվանե հիշատակված են գերմանացիները, հրեաները և «սուրոժցիները»։

Հյուսիսային ռուսական տարեգրությունների մեջ 1318 թ. առաջին անգամ հիշատակություն ենք գտնում «Սուրոժյան ծովի» մասին, իսկ 1356 թ. տակ տարեգրությունը ծանուցում է, որ Հորդայից Մոսկվա է ժամանել Իրընչեյ անունով մի դեսպան, «սուրոժցի հյուրերի» ընկերակցությամբ։ Մասնագետները նշում են, որ այդ «առաջին ուղղակի վկայությունն է Մոսկվայի և Ղրիմի իտալական գաղթօջախների միջև առևտրական կապերի առկայության մասին»[179]։

Այսպիսով, XIV դ. կեսերից առաջ որևէ տվյալ չի պահպանվել «սուրոժյան հյուրերի» Մոսկվայում ծավալած տնտեսական գործունեության մասին։

Վերը շարադրվածից պարզ է, որ տարեգրության հեղինակը «սուրոժյան հյուրեր» ասելով նկատի է առել ընդհանրապես Ղրիմի թերակղզուց և մասնավորապես Կաֆա քաղաքից ժամանած վաճառականներին։

Սակայն մի վայրկյան մոռանանք մեր այս տեսակետը և փորձենք հարցին մոտենալ այն ուսումնասիրողների հայեցակետից, ովքեր «Սուրոժ» տերմինի տակ բառացիորեն հասկացել են հենց Ղրիմի Սուրոժ-Սուդակ-Սուղդա քաղաքը։ Բնակչության ազգային պատկանելիության առումով ի՞նչ պատկեր էր ներկայացնում այդ քաղաքը XIV դ. կեսերին։

Սուրոժի պատմության հարցերով հետաքրքրված բոլոր ուսումնասիրողներն էլ, միաբերան վկայում են, որ քաղաքի բնակչության կազմում հայերը զգալի թիվ են կազմել, իսկ մի քանի մասնագետներ էլ (օրինակ, Ֆ. Բրունը)[180], թերևս փաստերը չափազանցնելով, հանգել են այն եզրակացության, որ հայերը կազմել են քաղաքի բնակչության մեծամասնությունը։ Քաղաքի հանգամանալից պատմությունը շարադրել է Վ. Գ. Վասիլևսկին «Սուրբ Ստեփանոս Սուրոժցու վարքի» ներածականում[181]։ Նշանավոր գիտնականը պար-

178 ПСРЛ, т. II, էջ 920։ «Летопись по Илатскому списку», СПб, 1871, էջ 605.

179 В. Е. Сыроечковский, նշվ. աշխ., էջ 17։

180 Ф. К. Брун, Черноморье, ч. II, Одесса, 1880, էջ 140։

181 Տե՛ս Труды В. Г. Васильевского, том третий, Петроград, 1915. Русско-Византийские исследования. Жития св. Георгия Амастридского и Стефана Сурожского, էջ CLVI—CCVII («Исторические сведения о Суроже»)։

ցել է, որ XIII—XIV դդ. Սուրոժի կառավարիչները կոչվել են սեբաստոսներ. դրանցից շատերի անունները գրանցվել են քաղաքի հունական եկեղեցում պահպանված Սինաքսարի (Հարանց վարքի) լուսանցքներին։ Հիշատակված սեբաստոսների մեծ մասին Վ. Վասիլևսկին հույն է համարել, նշելով միաժամանակ, որ հանդիպում են նաև այնպիսի անուններ, որոնց մեջ կան հունարենին խորթ հնչյուններ։ 1305 թ. հիշատակված է, օրինակ, սեբաստոս Թոփուրին՝ իր Թամար տիկնոջ հետ միասին։ Հիմք ընդունելով տիկնոջ անունը, ուսումնասիրողն անորոշ դատողություններ է արել նրա (նաև նրա ամուսնու) վրացական ծագման մասին, անշուշտ, տեղյակ չլինելով, որ Թամար անունը, սկսած X դ. խիստ տարածված էր հայոց մեջ և որ Ղրիմում, շատ վաղ ժամանակներից, գոյություն է ունեցել Թոփուի զուտ հայաբնակ խոշոր գյուղը (ունեցել է երկու եկեղեցի), որն այդպես է կոչվել թերևս կառուցված լինելով այդ նշանավոր սեբաստոսի կողմից, կամ մի այլ կերպ առնչված լինելով նրա անվան հետ։ Այդ նույն Սինաքսարում հիշատակված են Սուրոժի պատմության մեջ նշանակալի դեր կատարած մի քանի այլ հայազգի անձնավորություններ ևս. Սամատ Հայի տիկինը, Սմբատի որդի Դավիթը և ուրիշներ։ 1292 թ. սուրոժցի հայերը զատիկը կատարել են ոչ թե հույների հետ՝ ապրիլի 6-ին, այլ նրանցից մեկ շաբաթ հետո։ Այս կապակցությամբ, ինչպես միշտ ծռազատիկների ժամանակ, քաղաքում վեճեր են բորբոքվել հայ և հույն համայնքների միջև[182], մի հանգամանք, որ իր հերթին վկայում է Սուրոժում հայ հոծ բնակչության առկայության մասին։

1322 թ. Սուրոժի պատմության համար դարձակետային նշանակություն է ունեցել։ Ուզբեկ խանի զորահրամանատար Կարա-Բուլատը գրավել է քաղաքը և հալածանքներ սկսել քրիստոնյաների նկատմամբ. փակվել են շատ եկեղեցիներ, կործանվել խաչեր և սրբանկարներ, ցած բերվել եկեղեցական զանգակներ և այլն։ Քրիստոնյա բնակչության մեծ մասը լքել է քաղաքը։ Իբն-Բատուտան 1334 թ. այցելելով Սուրոժ, գտել է այնտեղ միայն մի քանի հույն արհեստավորներ։ Որոշ աշխուժություն է սկսվում 1365 թ. հետո միայն, երբ ջենովացիներին հաջողվում է իրենց տիրապետությունը տարածել նաև Սուրոժի վրա, սակայն քաղաքն այլևս ինքնուրույն տնտեսական նշանակություն ձեռք չի բերում, և վերականգնվում է միայն Կաֆայի շնորհիվ՝ դառնալով նրա երկրորդական կցորդը։

Մեջբերված այս թվականներն արժանի են սևեռուն ուշադրության։ Սուրոժը, այսպիսով, 1322—1365 թթ. իր պատմության ողբերգական շրջանն էր ապրում։ Բայց հենց այս շրջանում, ավելի որոշակի՝ 1356 թ., ռուսական տարեգրությունների մեջ առաջին անգամ գրանցում է կատարվում «սուրոժյան հյուրերի» Մոսկվա ժամանելու մասին։ Ինչպե՞ս բացատրել այս առեղծվածը։

Առաջին հերթին՝ մեր կողմից արդեն բացատրված ձևով. «Սուրոժյան հյուրեր» տերմինը տարեգրի կողմից օգտագործվել և ժամանակակիցների կողմից ընկալվել է՝ «Ղրիմից ժամանած վաճառական» (ավելի ճիշտ՝ «ղրիմահայ վաճառական») իմաստով։ Իսկ եթե, այնուամենայնիվ, «Սուրոժ» ան-

[182] В. Г. Васильевский, նշվ. աշխ., էջ CLXXXVIII։ Այս տեղեկությունների մի մասը, նույն այս աշխատությունից քաղելով, օգտագործել են նաև ուրիշ հայագետներ (տե՛ս Խ. Ա. Փորքշեյան, Երբ է կատարվել հայերի մուտքը Ղրիմ, «Պատմա-բանասիրական հանդես», 1962, №2, էջ 108, Վ. Միքայելյան, Ղրիմի հայկական գաղութի պատմություն, I, էջ 50)։

վանումը պետք է վերագրվի ոչ ամբողջ Ղրիմին, այլ որոշակի մի բնակավայրի՞։ Այդ դեպքում կա միայն հետևյալ բացատրությունը. Կաֆա քաղաքը բարգավաճելով և բռնելով Սուրոժի տեղը, կատարելով տնտեսական այն միջնարկի դերը, որը վիճակված էր նախկինում Սուրոժ քաղաքին, ինչ-որ ժամանակ սեփականել է նաև իր նախորդի աշխարհասփյուռ անունը։

Աշխարհագրապես այդ երկու քաղաքներն այնքան մոտ էին գտնվում միմյանց և այնքան նույնական էր նրանց դերը որպես միջազգային ապրանքափոխանակության հանգրվան, որ հեռավոր երկրամասերում, Ղրիմի թերակղզու նոր կենտրոնի՝ Կաֆա քաղաքի պատմության իրողությունները, շփոթումով կամ սովորույթի ուժով, վերագրում էին Սուրոժ քաղաքին։

Ի հաստատումն այս բացատրության մեջ բերենք մի բնորոշ փաստ։ 1298 թ. Նողայ ամիրի զորքերը գրավում են Կաֆան և այստեղ հսկայական ավերածություններ գործում։ Այս լուրը վաճառականները հասցնում են Եգիպտոս, ուր և գրանցվում է, բայց արդեն ոչ թե որպես Կաֆայի հետ կատարված դեպք, այլ Սուրոժ-Սուղտայի[183]։

Այսպիսով, կարելի է վստահորեն հայտարարել, որ Մոսկվայի քաղաքացիների առօրյա խոսակցության մեջ «սուրոժցի հյուր» կոչված վաճառականները, որ հիշատակվել են սկսած XIV դ. կեսերից, իրականում սուրոժցի չէին, այլ Մոսկվա էին ժամանում Ղրիմի թերակղզու վաճառաշահ կենտրոններից՝ Սուրխաթից, Մանգուպից, Սուրոժից և այլ քաղաքներից, բայց առաջին հերթին և մասնավորապես՝ հռչակավոր Կաֆա (Թեոդոսիա) քաղաքից։

Արձանագրելով այս հետևությունը, պետք է կրկին վերհիշենք այն փաստը, որ Կաֆայի բնակչության մեծամասնությունը հայերից էր բաղկացած և, որ կաֆայեցի հայերի ձեռքում էր կենտրոնացված արևելյան ապրանքների առևտրի գերակշիռ մասը։

Այս անհրաժեշտ բացատրություններից հետո տեսնենք այժմ, թե ինչպիսի կարծիքներ են արտահայտվել «սուրոժցի հյուրերի» ազգային պատկանելիության մասին։

Մոսկվա քաղաքի պատմության անվանի ուսումնասիրողներից Ի. Զաբելինը այդ կապակցությամբ գրել է. «Մոսկվան, հենց այն պահից, երբ սկսեց պատմական իր ասպարեզը, ի հետևանս մեր (Ռուսաստանի) հարավային երկրամասերում ծավալված առևտրական, մասնավորապես իտալական բարեպատեհ հարաբերությունների, ըստ երևույթին կարողացավ իր կողմը ձգել հատուկ մի գաղութ իտալական վաճառականների, որոնք սուրոժցի անվան տակ, ռուսների հետ միասին, շատ ակնառու և ազդեցիկ դերք գրավեցին [Մոսկովյան] մեծ իշխանության մայրաքաղաքի ներքին կյանքում, և հետագայում մեծապես նպաստեցին իտալական-ֆրանկական Եվրոպայի հետ նրա առնչություններին ու կապերին»[184]։

---

183 *В. Г. Васильевский*, նշվ. աշխ., էջ CXCI:

184 «Москва, как только начала свое историческое поприще, по счастливым обстоятельствам торгового и именно итальянского движения в наших южных краях, успела привлечь к себе, по-видимому, особую колонию итальянских торговцев, которые под именем сурожан, вместе с русскими заняли очень видное и влиятельное положение во внутренних делах великокняжеской столицы и впоследствии много способствовали ее сношениям и связям с итальянскою, фряжскою Европою» (*Иван Забелин*. История города Москвы, ч. I, М., 1905, էջ 86)։

Այսպիսով, ըստ Ի. Զաբելինի «սուրոժյան հյուրեր» կոչվող վաճառականները հիմնականում եղել են իտալացիներ, և նրանք են, որ մեծ դեր են կատարել Մոսկվայի և եվրոպական երկրների հետ տնտեսական կապերի ստեղծման ու ամրապնդման գործում։ Պետք է նշել, որ այս տեսակետի հեղինակը հաշվի չի առել երկու հանգամանք. նախ՝ որ ռուսական աղբյուրներում իտալացիները հիշատակվում են որպես «ֆրյազ» կամ «ֆրյազին» (համապատասխանում է հայկական «ֆրանկ» բառին), և որևէ ցուցում չկա «սուրոժյան հյուր» ու «ֆրյազ» տերմինների նույնացմանն ի նպաստ, և այնուհետև՝ արևելյան ապրանքները ներմուծվում էին ջենովացիների տիրապետության տակ անցած Ղրիմյան նավահանգիստներն ու այնտեղից էր արտահանվում Ռուսաստան ոչ թե իտալացի վաճառականների, այլ հենց հայերի կողմից։

Ի. Զաբելինի նշած ճանապարհով է ընթացել նաև «սուրոժյան հյուրերի» մասին շատ արժեքավոր ու փաստալից մենագրության հեղինակ Վ. Սիրոյեչկովսկին՝ իտալացիներից բացի «սուրոժցի» քաղաքային դասի շարքում տեղ հատկացնելով նաև հույն վաճառականներին։ Իր տեսակետը Վ. Սիրոյեչկովսկին հիմնավորում է երկու «սուրոժցիների»՝ Նեքամատի և Սալարևի, անունազգանունների յուրովի ստուգաբանությամբ. Նեքամատ անունը (ըստ երևույթին նույնացնելով հունական Նիկոմեդես անվան հետ), նա համարում է հունական, ուստի այդ «սուրոժցուն» հույն է համարում, իսկ Սալարև ազգանունը (հավանաբար առնչելով լատիներեն salarius բառի հետ, որ նշանակում է «աղացած ձկան վաճառական») իտալական հնչելով՝ այդ «սուրոժցուն» էլ իտալական ծագում է վերագրում։

Մեր կարծիքով, սակայն, մեկ-երկու անունների չհիմնավորված ստուգաբանությունների վրա հենվելով հնարավոր չէ պարզաբանել պատմաբանասիրական այնպիսի բարդ հարցեր, որոնցից է «սուրոժյան հյուրերի» ծագումնաբանության հարցը։ Ըստ այդմ հավատ չի ներշնչում նաև Վ. Սիրոյեչկովսկու եզրակացությունը, որ շարադրված է այսպես. «Մոսկովյան վաճառականների մեջ առկայությունը ղրիմեցի նշանավոր հույների և իտալացիների, որոնք հաստատվել էին Մոսկվայում ֆեոդալական այդ կենտրոնի բուռն զարգացման հետևանքով, օգնելու է մեզ բացատրելու «սուրոժցիներ» տերմինի առաջացումը։ Ղրիմից ներգաղթած վաճառականների խմբի նշանավոր անդամները, որոնք շարունակ երթևեկում էին դեպի հարավային շուկաները, կարող էին սուրոժցի անվանումը տարածել բովանդակ դասի վրա»[185]։

Ծագումնաբանական այս հարցին հպանցիկ անդրադարձել է նաև ակադեմիկոս Մ. Տիխոմիրովը։ Հատուկ տեսակետ նա չի առաջադրել, սակայն, ըստ երևույթին, հանգել է այն եզրակացության, որ «սուրոժցի» կոչվող և Մոսկվա քաղաքի հետ առնչված վաճառականները ազգությամբ ռուս են եղել, բայց կոչվել են «սուրոժցի», որովհետև նրանց գործունեությունը խարսխված է եղել Սև ծովի հարավային նավահանգիստների հետ։ «Մոսկվայի վաճառականների ձեռքում դրամական միջոցների կուտակումը սերտորեն կապված էր սևծովյան առևտրի հետ։ Այդ պատճառով,— գրել է մեծանուն գիտնականը,—

[185] «Наличие среди московских купцов видных греков или итальянцев из Крыма, привлеченных в Москву пышным ростом этого феодального центра помогло бы нам объяснить появление термина «сурожане». Выходцы из Крыма, видные члены группы купцов, постоянно отправлявшихся к южным рынкам, могли сообщить всей группе наименование сурожан» (*В. Е. Сыроечковский*, նշվ. աշխ., էջ 24)։

վաճառականների առաջատար խումբը Մոսկվայում ստացել էր սուրոժցի հյուր մականունը»[186]։ Սակայն այս բացատրությամբ ևս խնդիրը չի լուծվում, քանի որ 1356 թ. անդրանիկ վկայության մեջ «սուրոժցի հյուրեր» են կոչված ոչ թե մոսկվացի, այլ Ղրիմից ժամանած օտարերկրացի վաճառականները։

Այս հարցին անդրադարձել է նաև Վ. Միքայելյանը և հանգել այն եզրակացության, որ ազգային կազմով «սուրոժցի» կոչվող վաճառականները միատարր չեն եղել. «Նրա մեջ առաջին հերթին մտնում էին ռուսներն ու հայերը, ապա նաև իտալացիներ և ղրիմաբնակ հույներ»[187],— գրել է նա՝ փորձելով միավորել ու հաշտեցնել վերոհիշյալ տեսակետները՝ հայերի համար ևս տեղ ապահովելով «սուրոժցիների» շարքում։

«Սուրոժցի հյուր» տերմինի իմաստը բացահայտելու փորձեր կատարելիս պետք չէ անտեսել, որ այդպես են կոչվել արևելյան ապրանքների վաճառականները ոչ միայն միջնադարյան Մոսկվայում, այլև ուրիշ քաղաքներում, մասնավորապես Վոլինյան Վլադիմիրում (այդ մասին խոսք եղավ արդեն), Կիևում, Սուզդալում, Մեծ Նովգորոդում (դրանց մասին՝ ստորև), գուցե և ուրիշ քաղաքներում։ Ըստ այդմ «սուրոժցի հյուր» տերմինը գործածվելով Մոսկվայի բնակչության առանձին կենցաղում և դրանցվելով տարեգրությունների մեջ՝ ենթադրել է տալիս ուրիշ մի վայրից ժամանած և տվյալ վայրում «հյուրի», այսինքն օտարերկրյա վաճառականի գոյավիճակ ունեցող վաճառականների մի դասի առկայություն։ Այդ վաճառականների հետագա սերունդները, տասնամյակներ շարունակ ապրելով ու գործելով Մոսկվայում, դառնալով այդ քաղաքի մշտական բնակիչ, խնամիանալով ռուսների հետ, ի վերջո՝ դավանափոխ լինելով՝ պետք է որ փոխեին ազգային իրենց դիմապատկերը և հանդես գային որպես ռուս վաճառականներ։ Բայց այդ վերաբերում է արդեն «սուրոժցիների» հետագա պատմությանը և ոչ նրանց պատմական ասպարեզ իջնելու հանգամանքներին։ Ուստի, հետևելով վերոհիշյալ ուսումնասիրողներին, տեսնենք, թե ինչ արդյունքներ կարող ենք ստանալ «սուրոժցի» վաճառականներից մի քանիսի անուն-ազգանունների անկանխակալ քննության ճանապարհով։

Սկսենք հենց Նեքոմատի (ռուսական աղբյուրներում գրված է Некомат) մասին տվյալների քննությունից։ Կուլիկովյան ճակատամարտին նախորդող տարիներին Մոսկվայում հանրահայտ էր այս «սուրոժցին»։ Նա լայն կապեր էր հաստատել մի կողմից Մոսկվայի ու Տվերի իշխանների, մյուս կողմից Ոսկե Հորդայի տիրակալների հետ։ Նրա ջանքերով 1375 թ. Դմիտրի Դոնսկոյի քաղաքական հակառակորդ Տվերի իշխան Միխայիլ Ալեքսանդրովիչը Ոսկե Հորդայից, երկրորդ անգամ լինելով, Վլադիմիրի մեծ իշխանի տիտղոսն ստացավ։ Դմիտրի Դոնսկոյը «со всей силою собрався, и со всеми князи русскими совокупяся», պարտության մատնեց իր քաղաքական հակառակորդին և ըստիպեց նրան՝ անվերապահորեն ենթարկվել Մոսկվայի մեծ իշխանությանը[188]։ «Սուրոժցի» Նեքոմատը հետագայում մասնակցեց Դմիտրի Դոնսկոյի դեմ Մոսկվայի վերջին հազարապետի (тысяцкий) որդու գլխավորությամբ նյութվող դավադրությանը, իսկ ավելի ուշ՝ 1383 թ. մահապատժի ենթարկվեց. Նը-

186 «Накопление капиталов в руках московских купцов было тесно связано с черноморской торговлей. Поэтому ведущая купеческая группа получила в Москве прозвание гостей-сурожан» (*М. Н. Тихомиров*, *նշվ. աշխ., էջ 150*)։

187 Վ. Միքայելյան, *նշվ. աշխ., էջ 184—185*։

188 ПСРЛ, т. XI, *էջ 15*։ «Очерки истории СССР» II, *էջ 217*։

րան պատկանած գյուղերն ու կալվածքները՝ Մոսկվայի մեծ իշխանի սեփականությունը դարձան[189]: «Կարելի է չտարակուսել այն բանում,— գրել է այդ կապակցությամբ ակադ. Մ. Տիխոմիրովը,— որ Նեքամատը կողմնակիցներ է ունեցել առևտրական շրջանակներում և որ շոշափված են եղել առևտրական բարձր շահեր, մեր կարծիքով՝ Սուրոժի հետ առևտուր անող հյուրերի շահերը, որոնց համար Ոսկե Հորդայի հետ խաղաղություն պահպանելը չափազանց կարևոր գործ է եղել, քանի որ Մոսկվայից դեպի Սև ծով տանող ճանապարհներն անցել են Ոսկե Հորդայի տարածություններով»[190]:

Քիչ առաջ ասացինք, որ Վ. Սիրոյեչկովսկին Նեքամատին համարել է հույն վաճառական: Անվանի պատմաբանը, անշուշտ, ավելի շրջահայաց կլիներ, եթե ձեռքի տակ ունենար միայն վերջերս գիտական շրջանառության մեջ դրված միջնադարյան հայկական ձեռագրերի հիշատակարանները՝ հայերի մեջ տարածված անձնանունների մասին բազմաբովանդակ նյութերով: Այդ աղբյուրների համաձայն, հենց Նեքամատի գործունեության շրջանում կամ նրանից ընդամենը մի քանի տասնամյակ հետո, պատմական Հայաստանի մի շարք նահանգներում ու հայկական գաղթավայրերում սիրված ու տարածված է եղել Նեքամատ անձնանունը, որն ըստ Հ. Աճառյանի պարսկերենից է փոխառված և նշանակում է «բարի եկավ», այսինքն «բարի գալուստ» («բարեբախտ»)[191]: Նեքամատ անունն էին կրում Ամիդի Ս. Թեոդորոս կաթուղիկե եկեղեցու կառուցող ճարտարապետը, Խարբերդի հայ ոսկիչը, խլաթեցի մի տանուտեր, Խուլայո վանքի դպիրներից մեկը և նրանց ժամանակակից մի քանի այլ հայ անձնավորություններ[192]:

Այսպիսով, «սուրոժցի» Նեքամատը, իր անունից դատելով, եղել է ոչ թե հույն, այլ հայ վաճառական՝ մեկը ղրիմահայ հարյուրավոր այն վաճառականներից, որոնք XIV—XV դդ. մրցակից չունեին դեպի Ռուսաստան և արևելյան Եվրոպայի այլ երկրներ արևելյան ապրանքների ներմուծման բնագավառում:

«Սուրոժցի» Նեքամատի կյանքի դրվագների համառոտակի շարադրանքից պարզ դարձավ, որ նա, բարձր դիրք գրավելով Մոսկովյան մեծ իշխանության կառավարող շրջաններում, պատկանում էր այն կուսակցությանը, որի ներկայացուցիչները գործում էին ի նպաստ Ոսկե Հորդայի հետ տնտեսական կապերի զարգացման, ի վնաս Մոսկվայի մեծ իշխանության անկախության ջանքերի: Սակայն «սուրոժյան հյուրերի» մեծամասնությունը կանգնած էր Դմիտրի Դոնսկոյի կողքին, նպաստում էր ռուսական երկրամասերի միավորման ուղղությամբ ծավալած նրա հայրենասիրական գործունեությանը, գործուն դեր էր կատարում Ոսկե Հորդայի դեմ նրա գլխավորած պայքարում:

Երջանիկ պատահականությամբ պահպանվել են Դմիտրի Դոնսկոյի կուսակից մեկ տասնյակ այն «սուրոժցի հյուրերի» անունները, որոնք ուղեկցել են Մոսկվայի մեծ իշխանին Կուլիկովյան ճակատամարտում: Նախ մեջբերենք Նիկոնովյան տարեգրության այն հատվածն իր ամբողջությամբ, որի մեջ ան-

189 ПСРЛ, т. XXV, էջ 190, 211, ПСРЛ, т. XII, էջ 45, ПСРЛ, т. XVIII էջ 135, В. Г. Васильевский, նշվ. աշխ., էջ CCII, М. Н. Тихомиров, նշվ. աշխ., էջ 161 և այլն:

190 М. Н. Тихомиров, նշվ. աշխ., էջ 173:

191 Հ. Աճառյան, Հայ անձնանունների բառարան, հատ. Դ, Երևան, 1948, էջ 71:

192 «ԺԵ դարի...հիշատակարաններ», Ա, էջ 553, 629, Բ, էջ 34, 73, Գ, էջ 31, 383, 527: Նեքամատ կամ Նեքամատիկ անունով մի ծեր դպիր էլ հիշված է Հ. Հազարյանի հավաքածուի XV դ. ընդօրինակված № 9 ձեռագրում՝ որպես Թղթի կոկող և թանաք եփող (այս տեղեկությունը մեզ հաղորդել է Օ. Եգանյանը, որին հայտնում ենք շնորհակալություն):

զեկուցումներ են գրանցված այդ վաճառականների կատարած դերի մասին. «Поять же тогда князь велики с собою десять мужей сурожане гостей, видения ради: аще что Бог случит, имут поведати в дальных землях, яко сходници суть з земли на землю и знаеми всеми и в Ордах и в Фрязех; и другая вещь: аще что приличится, да сии сътворяют по обычаю их: си же суть имена их...»[193]. Այնուհետև թվարկված են նրանց անունները, որոնք տարբերակներով են նշված ձեռագրերի մեջ և Կուլիկովյան ճակատամարտի մասին պահպանված մյուս աղբյուրներում։ Ստորև տալիս ենք ցանկը, յուրաքանչյուր անվան առընթեր նշելով տարընթերցվածներն ու լրացուցիչ տվյալները.

1. Վասիլի Կապիցա (Պալիցա),
2. Սիդոր Ելֆերև (Ելուֆերև, Օլուֆերև, Օլֆերև),
3. Կոստանտին (Պետունով, Վոլկ, Բոլկ, Բոլկով, Բելցա),
4. Կուզմա (Կոզմա) Կովերյա (Կովիրյա, Կովիր, Կովրյա, Խովրին),
5. Սեմյոն Օնտոնով (Անտոնով. հոր անունն է՝ Անտոն Վերբլյուզին), կոչված նաև Կորոտնոս,
6. Միխայիլ (Միխայլո) Սալարև (Սարաև, Սամարև),
7. Տիմոֆեյ Վեսյակով (Վասկով, Վեզյակով),
8. Դմիտրեյ Չեռնոյ (Չեռնի, Չերմնոյ),
9. Դեմենտեյ (Դմիտրի) Սալարև (Սարաև),
10. Իվան Շիխ[194]։

Թվարկելով այս անունները, Վ. Վասիլևսկին հայտնում է այն կարծիքը, որ դրանց մեծամասնությունը ռուսներ են, սակայն «առաջինները (որո՞նք— Լ. Խ.) կարող են համարվել նաև հույներ»[195]։

Սալարև ազգանունը կրող զույգ անձինք (չնայած դրանք ձեռագրերում կոչված են նաև Սարաև կամ Սամարև) ըստ Վ. Սիրոյեչկովսկու՝ հավանաբար Ղրիմում հաստատված իտալացիներ են եղել[196]։ Ցանկի մեջ հիշատակված Սիմեոն Օնտոնովի մասին խոսում է Մ. Տիխոմիրովը։ Մեջբերելով մի վարքաբանական գրվածքի մեջ առկա տվյալն այդ մեծահարուստ վաճառականի մասին (այնտեղ ասված է, որ նա եղել է «от великих купець и славных господствующему граду Москве»[197],— մեծանուն գիտնականը գրում է. «Սիմեոն Օնտոնովի անունն ու հայրանունը թվում է, թե վկայում է նրա ռուսական ծագման մասին»[198]։

Եվ այսպես, միայն անուններից ելնելով, ուսումնասիրողները փորձել են որոշել Դմիտրի Դոնսկոյի կուսակից «սուրոժյան հյուրերի» կամ նրանց մի մասի ազգային պատկանելիությունը։ Հենց սկզբից պետք է ասել, որ այդ ճա-

[193] ПРСЛ, т. XI, էջ 54։ Հմմ. «Куликовская битва и подъем национального самосознания» Л., 1979, էջ 234։

[194] Անվանացանկը ներկայացնում ենք Հ. Զարեյինի, Վ. Վասիլևսկու, Վ. Սիրոեչկովսկու, Մ. Տիխոմիրովի, Գ. Մոխնեևայի վերը հիշատակված աշխատությունների մեջ առկա ցանկերի համադրությամբ։

[195] В. Г. Васильевский, նշվ. աշխ., էջ CCIII:

[196] «Было бы допустимо и Саларевых считать выходцами из итальянских колоний Крыма»,— գրում է նա (տե՛ս В. Е. Сыроечковский, նշվ. աշխ., էջ 24)։

[197] Н. Тихонравов. Древная жития Сергия Радонежского, М., 1892, էջ 90։

[198] Н. М. Тихомиров, նշվ. աշխ., էջ 151։

նապարհով հնարավոր չէ քիչ թե շատ վստահելի արդյունքի հասնել, քանի որ կարելի է վկայակոչել տասնյակ ու հարյուրավոր օտարազգի անձնավորությունների անուններ, որոնք հիշատակվել են ռուսական պաշտոնական փաստաթղթերում կամ տարեգրություններում այն աստիճանի ձևափոխված, որ հեռավոր հետք նույնիսկ չի մնացել նրանց նախնական ու հարազատ ձևերից։ Գյուլնազար Ծառուխենցը, օրինակ, դարձել է Նազար Օրեխովիչ, Հովհաննեսի որդիներ Աթանասն ու Բարսեղը՝ կոչվել են Աֆանասի և Վասիլի Իվանովներ, Պողոս Ջեննեցը՝ Պավել Ջինով, Աստվածատուրի որդի Եղիան՝ Իլյա Բոգդանով և այլն և այլն[199]։ Թվարկված այս անձնավորությունների ազգության մասին ստույգ տեղեկություններ ունենալով, անվարան կարող ենք հայտարարել, որ նրանք հայ վաճառականներ կամ քաղաքական-զինվորական գործիչներ են եղել։ Սակայն տարբեր բնույթի միջնադարյան աղբյուրների մեջ հիշատակված են հայազգի (ինչպես և ուրիշ ազգությունների պատկանող) բազմաթիվ անձնավորություններ՝ առանց ծանուցիչ տեղեկությունների։ Ինչպե՞ս վարվել նման դեպքերում։ Պատմաբանասիրական այս բարդ հարցին հնարավոր չէ գտնել դյուրին պատասխան։ Ինքնըստինքյան հասկանալի է, որ ռուսական աղբյուրներում հիշատակված ռուսական անուն-ազգանուններ կրող անձանց ճնշող մեծամասնությունը ազգությամբ ռուս է եղել. այդ մասին երկու կարծիք չի կարող լինել։ Սակայն խնդիրն այսպես դյուրությամբ լուծված չենք կարող համարել, երբ տվյալներ կան այս կամ այն անձնավորության մի ուրիշ երկրից ժամանած լինելու մասին։ Եվ նույնն է պարագան «սուրոժյան հյուրերի», այսինքն՝ Ղրիմի հետ կապված և արևելյան ապրանքների առևտրով զբաղված վաճառականների։ Գերզգուշությունը նախապայման է լինելու նրանց ազգությունը որոշելու ուղղությամբ կատարվող բոլոր փորձերի։

Այս բացատրությունից հետո հարկ չկա հատուկ շեշտելու, որ «սուրոժյան հյուրերի» հարցով զբաղված վերոհիշյալ ուսումնասիրողների եզրակացություններն այն մասին, որ այդ վաճառականները եղել են իտալացիներ, հույներ, ռուսներ, կամ էլ այդ բոլորի հետ միասին՝ նաև հայեր, շատ հեռու են հիմնավորված լինելուց։ Առաջին հերթին հենց այն պատճառով, որ բազմապիսի աղբյուրների միաբերան վկայությամբ՝ հայ վաճառականների մենաշնորհն է եղել արևելյան ապրանքների ներմուծումը Արևելյան Եվրոպայի երկրներ (որոշ աղբյուրներում դրանք նույնիսկ կոչվել են «հայկական ապրանքներ»)։

Ուսումնասիրողներից ոմանք փորձել են «սուրոժցիների» ազգության հարցը լուծել նրանց հետագա սերունդների մասին ռուսական աղբյուրներում առկա տվյալների համադրումով։ Նրանց հաջողվել է ուշագրավ տեղեկություններ հավաքել XV—XVI դդ. ապրած Սալարևների, Օնտոնովների, Վեսյակովների, Շիխովների մասին, պարզել, որ նրանք նույնպես զբաղվել են իրենց պապերի արհեստով՝ արևելյան ապրանքների առևտրով[200]։ Անկարելի է թե-

199 Այս մի քանի տվյալները քաղել ենք պատահականորեն ընտրված մի գրքից («Армяно-русские отношения в XVIII веке», сборник документов, т. III, Ереван, 1978). Հենց այդ հատորի անվանացանկից դյուրությամբ կարելի է դուրս գրել Ռուսաստան այցելած հայ վաճառականների և այլ զբաղմունքի տեր անձանց անճանաչելի ձևափոխված—ռուսականացված մի քանի տասնյակ ուրիշ անուններ՝ Իվան Մակարով, Դավիդ Գրիգորև, Վասիլ Մակարով, Բոգդան Բոգդանով, Սերգեյ Իվանով, Մակսիմ Ֆիլիպով, Պետր Իվանով և այլն, և այլն։

200 Տե՛ս, օրինակ, М. В. Тихомиров, նշվ. աշխ., էջ 151—153։

բացահատել շատ արժեքավոր այդ աշխատանքը։ Եվ կարելի է անվերապահորեն համաձայնվել, որ վերոհիշյալ վաճառականներից շատերի թոռներն ու թոռնորդիները, անքակտելիորեն մերվելով ռուսական միջավայրին, հետագայում փոխել են իրենց ազգային դիմագիծը։ Մեզ, սակայն, տվյալ դեպքում զբաղեցնում է «սուրոժյան հյուրերի» ծագումնաբանության հարցը, ուստի կրկին անդրադառնանք Դմիտրի Դոնսկոյի հետ Կուլիկովյան ճակատամարտ մեկնած «սուրոժցիներին»։

Նախ, անհրաժեշտ է ի մի բերել ռուսական աղբյուրներում առկա տեղեկությունները նրանց գործունեության մասին։

«Сказание о Мамаевом побоище» ասքի խմբագրություններից մեկում ասված է, որ «սուրոժցիները» «яко гости хозяева быша»[201] Մեջբերելով այս հատվածը, Վ. Սիրոյեչկովսկին փորձում է բացատրել անծանոթ այդ хозяеве բառը, առնչելով այն թաթարական хозя—պարոն բառի հետ։ Ըստ այդմ, խնդրո առարկա նախադասությունը նա մեկնաբանում է այսպես. «Այդ հյուրերը եղել են «առաջընթաց հյուրեր», այսինքն առևտրական կարավանների գլխավորողներ (իմա՝ «քարվանբաշիներ»—Լ. Խ.)[202]։ Այս բացատրությունը տրամաբանված է և ընդունելի, բայց կարող են լինել նաև այլ առաջարկներ։ Ելնելով այն փաստից, որ ռուսական միջնադարյան աղբյուրներում իրանա-հայկական «խոջա» տերմինը տառադարձվում էր ХОЗИ (խոզի) ձևով[203], ավելի հավանական է ենթադրել, որ տվյալ դեպքում գործ ունենք հայ մեծատուն վաճառականների համար շատ սովորական «խոջա» հորջորջման հետ։ Ասքի հեղինակը այդ վաճառականներին խոջա կոչելով՝ ըստ երևույթին ցանկացել է շեշտել նրանց մեծահարուստ լինելը, նրանց առևտրական կապերի հսկայական ծավալ ունենալը և այլն։

Շատ ուշագրավ է նաև Տարեգրության ցուցումն այն մասին, որ այդ տասը «սուրոժցիները» «сходници суть з земли на землю и знаеми всеми и в Ордах и в Фрязех», այսինքն՝ «ճանապարհորդում էին երկրից երկիր ու ծանոթ էին բոլորին և՛ Հորդայում, և՛ Ֆռանկստանում»։ Մենք, որ գիտենք արդեն հայկական կայուն գաղթօջախների գոյության մասին Ոսկե Հորդայի քաղաքներում և եվրոպական բազմաթիվ կենտրոններում, լրացուցիչ կռվան ենք ստանում այդ «սուրոժցիների» հայկական ծագման մասին։

Ի՞նչ նպատակով էր Դմիտրի Դոնսկոյն իր հետ ռազմաճակատ տարել այդ տասը վաճառականներին։ Այս հարցին անդրադարձել են մի շարք ուսումնասիրողներ։ Ստորև համառոտ ծանոթանալու ենք այդ մասին արտահայտված կարևոր տեսակետներին, տեղեկությունները քաղելով հիմնականում Վ. Սիրոյեչկովսկու վկայակոչված աշխատությունից։

«Сказание о Мамаевом побоище» ասքում այդ մասին գրված է. «поведания ради дальных земель», այսինքն,— ըստ Վ. Վասիլևսկու, «սուրոժցիները»՝ աշխարհ տեսած ու փորձառու այդ մարդիկ, կատարելու էին հետախույզի, ուղեցույցի և սննդամթերք հայթայթողի դեր։ Վ. Սիրոյեչկովսկին սխալ

201 *С. Шамбинаго*. Повести о Мамаевом побоище. «Сборник отдела русского языка и словесности», LXXXI, էջ 51։

202 *В. Е. Сыроечковский*, նշվ. աշխ., էջ 70։

203 Խոզի-Մարում էր կոչվում, օրինակ, վրաց Ալեքսանդր թագավորի Ռուսաստան առաքած դեսպաններից մեկը (տե՛ս Վ. Բարխուդարյան, Վ. Կ. Ոսկանյան, Հայ-ռուսական պատմական կապերը և Արևելյան Հայաստանի միացումը Ռուսաստանին, Երևան, 1978, էջ 27)։

է համարում այս բացատրությունը՝ նշելով, որ ռազմական հետախույզի դեր կատարողներին միջնադարյան ռուսական աղբյուրներում сторож կամ страж էին անվանում։ Այս տեսակետից հետաքրքրական է հետևյալ փաստը։ Ասքի որոշ ձեռագրերում ասված է, որ տափաստաններում Մամայի զորքերի շարժումներին ուշադիր հետևում էր ոմն «твердый страж»—Սիմեոն Մելիքով կամ Սեմյոն Մելիք անունով. սա առաջինն էր, որ լուր հասցրեց թաթարական հորդայի Մոսկվայի վրա հարձակում սկսելու մասին։ Անկախ մեզնից եղել են ուսումնասիրողներ, որոնք այս Սիմեոն Մելիքովին հավանաբար հայ են համարել[204]։

Նիկոնովյան տարեգրության մեջ, ինչպես հիշում ենք, ասված էր, որ «սուրոժցի» վաճառականները ուղեկցում էին Դմիտրի Դոնսկոյին,— «видения ради», «аще что Бог случит, имут поведати в дальных землях», այսինքն՝ նրանց դերն էր պատերազմի հաջող ելքի լուրը տարածել աշխարհով մեկ, քանի որ առևտրական իրենց գործերով նրանք լինում էին ամենուրեք։ «Զադոնշչինա» կոչվող գրվածքի մեջ, ուղղակի ասված է, որ Կուլիկովյան ճակատամարտում ռուսների տարած փառավոր հաղթանակի լուրը, արագությամբ տարածվեց աշխարհի չորս ծագերում. «Шибла слава к Железным вратам, к Риму и к Кафы по морю и к Торнаву и оттоле к Царюграду на похвалу: Русь великая одолета Мамая на поле Куликове»[205].

Այստեղ հիշատակված են Դերբենդը (Երկաթե դուռ), Հռոմը, Կաֆան, բուլղարական երկրորդ թագավորության Տըռնովո մայրաքաղաքը, Կոստանդնուպոլիսը,— դարձյալ այն վայրերը, որոնց հետ ամենասերտ տնտեսական կապերի մեջ էին հենց հայ վաճառականները։

Նիկոնովյան տարեգրությունն այս վաճառականների դերի մասին առաջ է քաշում ևս մի վարկած. «и другая вешь: аще что приличится да сии сътворяют по обычаю их». Նշանավոր պատմաբան Վ. Օ. Կլյուչևսկին դժվար հասկանալի այս նախադասությունը բացատրում է այսպես. սուրոժցի վաճառականները «որպես մեծ փորձ ունեցող ու աշխարհատես մարդիկ, ծանոթ լինելով հեռավոր երկրների—Հորդայի և Ֆռանկստանի անցուդարձերին ու սովորույթներին, կարող էին արշավանքի ժամանակ օգտակար խորհուրդներ տալ»[206]։

Ա. Շախմատովի կարծիքով Մեծ իշխանն իր հետ վերցրել է «սուրոժցի վաճառականներին» հավանաբար դիվանագիտական հնարավոր հանձնարարությունների համար։ Վ. Սիրոյեչկովսկին ճիշտ է համարում հենց այս կարծիքը, նկատելով, որ թշնամու հետ բանակցելու անհրաժեշտությունը պետք է ծագեր և՛ հաղթանակի դեպքում, և՛ պարտության, իսկ «սուրոժցի վաճառականները» իրենց լեզվագիտությամբ և Ոսկե Հորդայի կառավարող վերնախավի հետ ունեցած իրենց տնտեսական սերտ կապերով՝ ամենահարմար թեկնածուներն էին դիվանագիտական ծառայություններ մատուցելու։ Հարկ չկա այս-

---

204 Վ. Բ. Բարխուդարյան, Վ. Կ. Ոսկանյան, նշվ. աշխ., էջ 22։ Նրանք վկայակոչել են «Хрестоматия по история СССР», т. I, M., 1949, էջ 219, որ տպագրված է «Ասք Մամայի ջարդի մասին» գրվածքի մի փոփոխակ։

205 *М. Н. Тихомиров*, նշվ. աշխ., էջ 258—259։ Հմմ. *В. П. Адрианова-Перетц*, Задонщина. Текст и примечания («Труды отдела древнерусской литературы», V, М.—Л., 1947, էջ 202)։

206 *В. О. Ключевский*. Опыты и исследования, 1912, էջ 464։

տեղ թվարկելու բազմաթիվ այն դեպքերը, երբ հայ վաճառականներին դիվանագիտական բարդ ու նուրբ հանձնարարություններ էին առաջադրում լեհ թագավորները, Ղրիմի խաները, Պարսից շահերը, Վրաստանի դահակալները և այլ իշխանավորներ։ Մոսկվայի մեծ իշխաններն այս առումով բացառություն չեն կազմել։

Այս անհրաժեշտ բացատրությունից հետո, կրկին անդրադառնանք վաճառականների ցանկին։ Տեսանք, որ տվյալ դեպքում անուն-ազգանունները ազգային պատկանելիությունը որոշելու անվստահելի աղբյուրներ են։ Սալարև ազգանվանը մենք արդեն հպանցիկ անդրադարձել ենք. ելակետ ընդունելով այն վարկածը, որ ազգանունը «ավելի դյուրությամբ բացատրվում է ռոմանական լեզուներով, քան ռուսերենով», Վ. Սիրոյեչկովսկին, ինչպես տեսանք վերը, մի ամբողջ տեսություն է զարգացրել «սուրոժյան հյուրերից» շատերի իտալական ծագման և իտալական վաճառականների Մոսկվայում կատարած խոշոր դերի մասին։ Բայց չէ՞ որ միջնադարյան Հայաստանում գործածական է եղել Սալար անձնանունը (առաջացած պարսկերեն «սալար»—«զորավար» բառից)[207], ուստի, ավելի մեծ վստահությամբ կարող ենք այդ ազգանունը կրող երկու «սուրոժցիներին» նույնպես առնչել հայերի հետ։

Ցանկի հինգերորդ տեղում հիշատակված է Սիմեոն Օնտոնովը՝ Օնտոն Վերբլյուզինի որդին։ Երբ վերհիշում ենք Միխայիլ Լիտվինից մեջբերված տողերը՝ արևելյան երկրներից Կիևի վրայով դեպի Մոսկվա կատարվող աշխույժ առևտրի մասին և այն մասին, որ արևելյան ապրանքները «օտարերկրյա վաճառականները (մեծ մասամբ հայերը—Լ. Խ.) Մոսկվա էին փոխադրում սայլերով և բեռնավորված ուղտերով»[208], այս անձնավորության Վերբլյուզին մականունը իմաստավորվում է ըստ ամենայնի։ Տասնյակ և հարյուրավոր ուղտերից բաղկացած կարավաններում (որոնց մասին խոսում է Մ. Լիտվինը), անշուշտ, եղել են նաև ուղտապաններ։ Եվ, ըստ երևույթին այդպիսիներից մեկն է եղել Օնտոն Վերբլյուզինը՝ «սուրոժցի» Սիմեոնի հայրը։

Ցանկի ութերորդ տեղում հիշատակված է Ջենոյ կամ Ջենիյ (այսինքն՝ Սև) մականունը կրող Դմիտրի վաճառականը։ Հարկավ, անհնարին է պնդել, թե այդպիսի մականուն ունեցող անձն անպատճառ հայ է եղել, բայց մեծ հավանականությամբ կարելի է հետևցնել, որ նա իր մաշկի գույնով խիստ տարբերվել է շրջապատի ռուս մարդկանցից։

Ցանկի չորրորդ հորիզոնականում հիշատակված է Կուզմա (Կոզմա) Կովերյա (Կովիր, Կովրյա, Խովրին) «սուրոժցին», որից սկիզբ են առնում ռուսական պատմության մեջ խոշոր դեր կատարած Խովրին, Գոլովին և Տրետյակով իշխանական գերդաստանները[209]։ XVI դ. կազմված իրենց տոհմածառը Խովրինները սկսում են Ստեփան անունով մի նախապապից, որը Դմիտրի Դոնսկոյի մոտ է եկել «из своей вотчины с Судака, да из Манкупа, да из Кафы»։ Այդ Ստեփանը (եթե հորինովի և անգո մեկը չէ) ըստ երևույթին եղել

207 Հ. Աճառյան, Հայոց անձնանունների բառարան, հատոր Դ, Երևան, 1948, էջ 347։ Անունն առաջին անգամ գործածված ենք գտնում Բարձրաքաշ վանքի 1247 թ. մի արձանագրության մեջ, ուր ասված է. «Ես Սումբա որդի Սալարին միաբանեցա սուրբ ուխտս և ըստ կարի օգնեցի տանս» (Ս. Ավագյան, Վիմական արձանագրությունների բառաքննություն, Երևան, 1978, էջ 296)։

208 М. В. Фехнер, նշվ. աշխ., էջ 19—20։

209 Ф. К. Брун. Черноморье II, էջ 236։

է վերոհիշյալ Կոզմա Կովրյայի մերձավոր ազգականը։ «Սուրոժցի» վաճառականների այս ընտանիքը, իր ծագումը կապելով Սուդակի (Սուրոժի), Մանգուպի և Կաֆայի հետ, ռուսական միջավայրում ներկայացել է որպես Ղրիմի թերակղզում XIII դ. սկզբներից գոյություն ունեցող Թեոդորո ֆեոդալական իշխանության (Մանգուպ կենտրոնով) հայազգի տիրակալների՝ Գավրասների ազգական[210]։ Իրակա՞ն է եղել ազգակցական այդ կապը, թե հորինված, այժմ դժվար է որոշել։ Մի բան, սակայն, պարզ է, Գավրասները, լինելով խոշոր ֆեոդալներ, միաժամանակ խոշոր վաճառականներ էին։ Այդպիսին էլ եղան Խովրինները Մոսկվայում հաստատվելուց հետո։ Վերոհիշյալ Ստեփանի թոռ՝ Վլադիմիր Գրիգորևիչ Խովրինը 1450 թ. հիշատակված է որպես «гость да и боярин великого князя». Հայտնի է միաժամանակ, որ նա եղել է Մոսկվայի մեծ իշխան Վասիլի II-ի գանձապետը[211]։

Կիևի հայկական գաղթօջախի պատմությանը հատկացված էջերում ասել ենք արդեն, որ միջնադարյան քաղաքների պաշտպանության մարտերում բոլոր քաղաքացիները, մասնավորապես առևտրա-արհեստավորական խավերը, միշտ էլ առաջավոր դիրքերում են գտնվել։ Այս առումով Մոսկվան, իհարկե բացառություն չէր կազմում։ «Մոսկվայի աշխարհազորը» (московская рать), կազմված «սուրոժցիներից», մահուդավաճառներից (суконники), մյուս վաճառականներից և արհեստավորներից, գործելով մեծ իշխանի կողմից նշանակվող վոյեվոդի հրամանատարության ներքո, զգալի դեր է կատարել քաղաքի պաշտպանության համար մղվող մարտերում։ «Մոսկվայի աշխարհազորը» գործուն մասնակցություն է ունեցել նաև Կուլիկովյան ճակատամարտում։ Նկատի ունենալով այս հանգամանքը, բացառված չենք համարում, որ Դմիտրի Դոնսկոյի հետ պատերազմի դաշտ դուրս եկած վերոհիշյալ տասը «սուրոժցիները», ինչպես նաև բազմաթիվ ուրիշներ, որոնց անունները չեն պահպանվել, եղել են հայ աշխարհազորայինների ղեկավարներ, և բացառիկ դիրք են գրավել՝ ծառայելով մեծ իշխանին իբրև մատակարար, դիվանագետ և լրաբեր։

---

210 Թեոդորո իշխանության հայազգի տերերի գործունեության, ֆեոդալական այդ տիրույթի տնտեսական դերի ու քաղաքական պատմության մասին առկա տեղեկությունները հավաքված են Ա. Լ. Յակոբսոնի կողմից (տե՛ս *А. Л. Якобсон*, Крым в средние века, М., 1973, էջ 128—133)։

Նրանց հայկական ծագման մասին գրել են Ն. Ադոնցը. Ա. Վասիլևը (որոշ վերապահումներով) և ուրիշներ։ Բյուզանդագետ Ա. Կաժդանը, հենվելով Ա. Բրայերի մի հոդվածի վրա (*A. A. M. Bryer*. A Byzantine Family te Gabrades... „University of Birmingham historical Journal" 12, 1790), հանգում է այն եզրակացության, որ „сколько-нибудь определенных свидетельств в пользу армянского происхождения этой семьи не существует", բայց ընդունում է, որ նրանք արևելյան ծագում ունեն (*А. П. Каждан*, Армяне в составе господствующего класса Византийской империи в XI—XII вв., Ереван, 1975, էջ 88—89)։

Մեր նպատակից դուրս ենք համարում Գավրասների ծննդաբանական բարդ հարցի քննարկումը, սակայն խիստ թերահավատ ենք Ա. Բրայերի ուսումնասիրության արդյունքների նկատմամբ։ Մի գիտնական, որ հնարավոր է համարում ֆեոդալական հզոր մի գերդաստանի ազգանունը շաղկապել արաբ. «գյավուր» (անհավատ) վիրավորական բառի հետ, ենթադրելով, որ նրանք սեփականել են մահմեդականների կողմից իրենց «հատկացված» այդ հայհոյանքը և այն դարձրել ազգանուն, վստահություն չի կարող ներշնչել։ Գյուլեր, Գովրիկյան, նաև Կորվին հայկական ազգանունների գոյությունն Արևելյան Եվրոպայի հայկական գաղթօջախներում Գավրասների, ուստի և Խովրինների հայկական ծագման օգտին է խոսում։

211 *М. Н. Тихомиров*, նշվ. աշխ., էջ 155—156։

«Ասք Կուլիկովյան ճակատամարտի մասին» գրվածքի մեջ հիշատակված են մի քանի իշխանների, բոյարների և վոյևոդների անուններ, որոնք զոհվել են Կուլիկովյան ճակատամարտում: Դրանց շարքում հիշատակված է նաև Անդրեյ Սերկիզովիչ անուն-հայրանունը կրող մի անձնավորություն[212], որն ըստ ոմանց Ոսկե Հորդայի թաթարներից է ծագում[213]: Հունական ծագում ունեցող Սերգիոս անունը միջին դարերում լայն տարածում էր գտել ողջ քրիստոնեական աշխարհում, ընդունելով տարբեր ձևեր. Սերգիոս (Հունաստանում), Սերգեյ (Ռուսաստանում) և այլն: Անունն ամենից շատ գործածական է եղել Հայաստանում՝ հիմնականում Սարգիս, բայց նաև Սերգիս ձևերով[214]: Ռուսական միջնադարյան աղբյուրներում հիշատակված են այդ անունը կրող մի քանի հայազգի անձնավորություններ՝ այսպես, օրինակ, կաֆայեցի հայ վաճառական Սերկիզը[215], կիևցի հայ Ֆեդկո Սերկիզյանը (Федко Серкизен)[216] և այլք: Կուլիկովյան ճակատամարտում զոհված Անդրեյ Սերկիզովիչ զորահրամանատարի ազգանվան -ովիչ (-եվիչ) վերջավորությունը շատ բնորոշ է Լեհաստանում և Հարավային Ռուսաստանում հաստատված հայերի համար. այս միջավայրում նշանավոր վաճառականներ և պետական ու եկեղեցական բարձրաստիճան պաշտոնյաներ են եղել Զաքար Իվաշկևիչը, Նիկոլայ Բեռնատովիչը, Բեդրոս Զախարիասևիչը, Պյոտր Գրիգորևիչը. Սեֆեր Մուրատովիչը, Նիկոլ Թորոսովիչը և տասնյակ ու տասնյակ այլ հայեր:

Այս տեղեկությունների լույսի տակ հանգում ենք այն եզրակացության, որ մեծ հավանականությամբ հայ է եղել նաև խիզախ հրամանատար Անդրեյ Սերկիզովիչը, որը զոհվել է Կուլիկովյան ճակատամարտում[217]:

Սրանք են, ահա, մեզ հայտնի տվյալները XIV դ. վերջին տասնամյակներում Մոսկվայում հաստատված և այդ նշանավոր քաղաքի տնտեսական ու քաղաքական ոլորտներում կարևոր դեր կատարած հայերի մասին: Մինչ այժմ հայտնի էր այդ տեղեկությունների փոքր մասը միայն. դրանք բազմապատկվեցին «սուրոժյան հյուրերի» ազգային պատկանելիությունը պարզելու ուղղությամբ կատարված քննություններով և ստացված նոր արդյունքներով: Ինչպես տեսնելու ենք ստորև, կան և ուրիշ հնարավորություններ այդ արդյունքներն ամրապնդելու:

* * *

XV դ. Մոսկվայի տնտեսական կապերը Ղրիմի հետ ավելի են ծավալվում: «Սուրոժցի» բառը գործածությունից գրեթե դուրս է մղվում և նրան փոխարի-

212 «Воинские повести Древней Руси», под ред. члена-корр. АН СССР В. П. Адриановой-Перетц, М.—Л., 1949:

Բերում ենք ստորև մեզ հետաքրքրող հատվածը. «Не тури возрыкают на поле Куликове, побежени у Дону великого, взолаша посечены князи руския и бояры и воеводы великого князя и князи белозерстии, посечени от поганых татар: Федор Семенович, Тимофей Волуевич, Семен Михайлович, Микула Васильевич, Ондрей Серкизович, Михайло Иванович и иния многия дружина, а иные лежат посечены. у Дона на брези» (էջ 37):

213 Նույն տեղում, էջ 305:

214 Հ. Աճառյան, Հայոց անձնանունների բառարան, հատոր Դ, էջ 402:

215 Հիշատակված է XIV դ. երկրորդ հիսնամյակում (В. Е. Сыроечковский, նշվ. աշխ., էջ 46):

216 Հիշատակված է 1552 թ. (Д. М. Мышко, նշվ. աշխ., էջ 117):

217 Այս մասին ակնարկ կա նաև Վ. Բարխուդարյանի և Վ. Ռեկանյանի վերը հիշատակված աշխատության մեջ:

նելու է գալիս գոյություն ունեցող իրավիճակը ճշգրտորեն արտահայտող «կաֆայեցի» («кафинец» կամ «кафеанин») տերմինը[218]։ Կաֆան նշանավոր այն կենտրոնն էր դարձել, ուր կանգ էին առնում և նախապատրաստվում Մոսկվա մեկնելու՝ Անդրկովկասի, Թուրքիայի և Իրանի քաղաքներից ժամանող հայ վաճառականներից շատերը։ Չնայած ռուսական փաստաթղթերի մեջ նրանք ըստ մեծի մասին գրանցվում էին որպես «թուրքական» («турецкие»), «պարսկական» («азамляне», այսինքն աճեմցի—իրանցի), «թոխաթցի» («токатяне»), «բուրսացի» («бурсяне») վաճառականներ, սակայն կան տվյալներ նրանցից շատերի հայ լինելու մասին։

Հոծ հայ բնակչություն ունեցող Կաֆա քաղաքն էր այն հանգուցակետը, որտեղ օտարերկրյա վաճառականների հետ գործարար կապեր էին հաստատում Ռուսաստանի տարբեր իշխանություններից այստեղ ժամանող վաճառականները։ Առանց ասելու էլ հասկանալի է, որ «սուրոժցի» կամ «կաֆայեցի» կոչվողները միջազգային նշանակություն ունեցող այդ ապրանքափոխանակության կազմակերպիչների շարքում պատվավոր տեղ էին գրավում։

1475 թ. թուրքերը գրավում են Կաֆան։ Ջենովացիներն այդ վայրերից վռնդվում են անվերադարձ։ Այդ դեպքերը կատարյալ աղետ են դառնում բոլոր այն երկրների համար, որոնց միջազգային հաղորդակցության ուղիները Սև ծովի հետ էին շաղկապված։ Ծանր հարված է ստանում նաև ղրիմահայ առևտրական կապիտալը։ Հարյուրավոր ընտանիքներ լքում են իրենց նոր հայրենիքը, և ապահով կյանքի և շահութաբեր գործունեության քիչ թե շատ նպաստավոր պայմաններ գտնելու հույսով՝ արտագաղթում ուրիշ երկրներ։ Սակայն երկու-երեք տասնամյակ չանցած՝ Կաֆա քաղաքն սկսում է կենդանության նոր նշաններ ցույց տալ և քայլ առ քայլ վերականգնել առևտրական իր հին կապերը, որոնք այլևս երբեք նախկին ծավալը չեն ստանում, բայց այնուամենայնիվ, հսկայական նշանակություն են ձեռք բերում Ռուսաստանի և արևելյան երկրների միջև դարերի ընթացքում հաստատված ապրանքափոխանակության աշխուժացման համար։

Անվարան կարելի է հայտարարել, որ Ղրիմի տնտեսական գահավիժումի առաջն առնում են հիմնականում հայ առևտրական կապիտալի ներկայացուցիչները, թարմ ուժեր ստանալով մայր երկրից (մասնավորապես Տրապիզոնի, Բաբերդի, Երզնկայի շրջաններից)։ Այդ ժամանակաշրջանում աշխարհագրական այդ միջավայրում գոյություն չուներ մի այլ ուժ, որ ի վիճակի լիներ կենդանություն ներարկելու կիսակործան Կաֆա քաղաքին։

Կաֆայի վերակենդանացումը տեղի ունեցավ XV դ. վերջին տասնամյակներին, այն ժամանակ, երբ Մոսկվայի մեծ իշխանությունը բուռն զարգացման շրջան էր ապրում։ Նրան էին ենթարկվել Նովգորոդը, Ռյազանը և Կենտրոնական Ռուսաստանի բոլոր իշխանությունները։ Պետության սահմանները հյուսիսից տարածվել էին մինչև Սառուցյալ օվկիանոս, հարավից մոտեցել էին Ղրիմին, արևմուտքից՝ սահմանակից էին դարձել Լիվոնյան ուխտի հողերին (ասպետները պարտավորվել էին հարկ վճարել)։ 1480 թ., երկարյա համառ պայքարից հետո, Մոսկվան թոթափում է նաև Ոսկե Հորդայի նկատմամբ ունեցած հպատակային բոլոր պարտավորությունները և փաստորեն դառնում հզոր մի միապետություն՝ ունենալով Իվան III-ի պես ականավոր առաջնորդ։

218 ПСРЛ, т. XVIII, էջ 178։ М. Н. Тихомиров. Пути из России в Византию, էջ 19—20։

Իվան Վասիլևիչի իշխանության տասնամյակներին, այսինքն՝ 1462—1505 թթ., զգալի առաջընթաց է ապրում նաև Ռուսաստանի տնտեսությունը. զարգանում են քաղաքները, ծավալվում է առևտուրը հարևան երկրների հետ, մայրաքաղաք Մոսկվան զարդարվում է ճարտարապետական գեղեցիկ կառույցներով, ընդարձակվում է Կրեմլը և այլն։

Քաղաքական ու տնտեսական բուռն զարգացման այս տասնամյակներին հայերի գործունեությունը Մոսկվայում պետք է որ ավելի մեծ ծավալ ընդուներ։ Ի հաստատություն այս եզրակացության այսօր հնարավոր չէ մեջբերել բազմաթիվ փաստեր. դրանք, թերևս, երևան կհանվեն հետագայում, երբ այս տեսանկյունից քննության ենթարկվեն Մոսկվայի պատմության բոլոր գրավոր աղբյուրները՝ տպագիր ու ձեռագիր։ Մեզ հայտնի նյութերը քանակով շատ չեն, բայց ուշադրության արժանի են իրենց բովանդակությամբ։

Իվան III մեծ իշխանը 1469 թ. արշավանք կազմակերպեց Ղազանի խանության դեմ. արշավողների շարքում, ինչպես գրված է տարեգրության մեջ, գտնվում էին նաև «սուրոժցիները, մահուդավաճառներն ու առևտրի մարդիկ»[219]։ Այսպիսով, «սուրոժցիները», Մոսկվայի ողջ բնակչության հետ մեկտեղ, կանգնած էին Իվան III-ի կողքին և նպաստում էին ռուսական հողերի միավորման ու Մոսկվայի մեծ իշխանության զարգացմանն ի նպաստ ծավալած նրա գործունեության իրականացմանը։

Մոսկվային նոր միացված իշխանությունների վարչա-տնտեսական կենտրոններում արմատավորվելու նպատակով, Իվան III-ը հաճախ բռնի տեղահանում և ուրիշ վայրեր էր փոխադրում տեղի բոյարներին ու խոշոր վաճառականներին, նրանց փոխարեն այդ քաղաքներն ուղարկելով իր մոսկվացի կուսակիցներին։ 1471 թ. Շելոն գետի մոտ տեղի ունեցած ճակատամարտից հետո Մեծ Նովգորոդը կորցնում է իր անկախությունը, իսկ մի քանի տարի անց՝ 1478 թ., վերացվում են այդ նշանավոր քաղաքի «հանրապետական կարգերը». քաղաքն՝ իր լայնատարած շրջաններով մտնում է ռուսական կենտրոնական իշխանության կազմի մեջ[220]։ Նովգորոդ մշտական բնակության են փոխադրվում Մոսկվայի վաճառականների ամենաբարձր խավի մի շարք ներկայացուցիչներ, որոնցից էին մեզ ծանոթ Սալարև գերդաստանին պատկանող մի քանի անհատներ և այլ «սուրոժցիներ»։ Սրանք Նովգորոդում XVI դ. սկզբներին ունեին «Сурожский двор» կոչվող իրենց վաճառատունը, ձեռք էին բերել գյուղեր ու կալվածքներ և այլն[221]։ Նովգորոդում սկսում են հայտնվել նաև արևելյան երկրներից ժամանած հայ վաճառականներ. նրանց քանակն այնքան է մեծանում, որ դարի վերջերին (1486 թ.) հրապարակված հրովարտակով սահմանվում է լիտովցիներից, թուրքերից և հայերից գանձվելիք հարկերի չափը. «а с иноземцев, с Литвы и с Турчан, с Армен и с иных иноземцев, опричь Немец, явки с головы с человека имати по 2 алтына»[222]։

---

219 «Купчие люди»—«առևտրի մարդիկ». այսպես էին կոչվում Մոսկվայի շարքային առևտրականները։

220 «Очерки истории СССР», II, էջ 276—283։ Նովգորոդից վտարվում են Հանզայի վաճառականները, որոնք այստեղ մեծ արտոնություններ էին ձեռք բերել (այդ մասին տե՛ս *Н. А. Казакова.* Из истории торговой политики русского централизованного государства XV в. («Исторические записки», № 47, 1954, էջ 259—290)։

221 *В. Е. Сыроечковский* նշվ. աշխ., էջ 111—118։

222 *М. В. Фехнер.* նշվ. աշխ., էջ 61։

Իվան III-ի մերձավոր գործակիցների շարքում հանդիպում ենք նաև հայազգի վաճառականների, որոնք կատարում են նաև դիվանագիտական զանազան հանձնարարություններ։ Կարևոր տեղ է գրավում հատկապես ղրիմահայ վաճառական Բոգդանը։ Նախ այդ գործիչը Մոսկվա է ժամանում Թամանի իշխան Զախարիայի Մոսկվա փոխադրվելու ցանկությունը Իվան III-ին փոխանցելու, իսկ 1488 թ. մեկնում է Ղրիմ այդ գործը գլուխ բերելու համար[223]։ Շատ ավելի նշանավոր դեր է կատարել կաֆայեցի վաճառական Կակոսը, որի մասին տվյալներ կան Ղրիմի խանության վերաբերող արխիվային գործերի մեջ։ Նա հիշատակված է իր «Ժիդովին» մականունով, որ հայերեն կարելի է թարգմանել «ջհուդանման», «ջհուդատիպ» իմաստով։ Այս նույն բովանդակությունն ունի ռուս առևտրաարդյունաբերողների նշանավոր գերդաստան Ժիդովինովների ազգանունը։ Ինչպես այս, «Ժիդովինը», այնպես էլ Ժիդովինովների նախահայրը, հավանաբար այդպիսի մականուն-ազգանուն է վաստակել իր ժլատ բնավորությամբ, կամ էլ վաշխառուական լայնածավալ գործարքներ կատարելով։ Նկատի ունենալով այդ հանգամանքը, կարծում ենք, որ կաֆայեցի վաճառական Կակոսին հրեա ծագում վերագրելու հիմքեր չկան։ Այդ Կակոս անունը միջնադարյան Հայաստանում ամենից շատ տարածված ու սիրված Կիրակոս անվան փաղաքշական ձևն է, որ բազմիցս վկայված է միջնադարյան աղբյուրներում և շատ գործածական է նաև այսօր[224]։

Կակոսը հանրահայտ անձնավորություն է եղել Մոսկվայում։ Նրա օժանդակությամբ Իվան III-ը հարաբերությունների մեջ է մտել և դաշինք կնքել Ղրիմի խան Մենգլի-Գիրեյի հետ (այս առթիվ Կակոսը մեծ իշխանից պարգև է ստացել)։ Հարթելով Կաֆայի հետ առաջացած տարաձայնությունները, Իվան III-ը 1474 թ. պահանջել է խանի դեսպանից՝ վերջ տալ Մոսկվայի վաճառականների նկատմամբ կիրառվող ճնշումներին. իսկ Կաֆա ուղևորվող իր դեսպանին հրահանգել է այդ հարցի մասին խորհրդակցել Կակոսի և այլ կաֆայեցիների հետ։ Նույն այս Կակոսը 1475 թ. ստանձնել է խնամախոսի դեր. նա բանակցություններ է վարել Մանգուպի իշխանի դստերը Իվան III-ի որդու հետ ամուսնացնելու խնդրով։ Գտնվելով մեծ իշխանի «ծառայության» մեջ, փրկագնել է Ղրիմի թաթար իշխանների կողմից գերի վերցված ռուս վաճառականների, գնել է նրանց համար զգեստներ և ճանապարհել հայրենիք։ 1486 թ. Իվան III-ը, հիշեցնելով Կակոսին նրա նախկին ծառայությունները, առաջարկել է շարունակել իր ջանքերն ի նպաստ Մոսկվայի մեծ

[223] «Сборник русского исторического общества», т. 41, СПб., 1844, էջ 72—73։ Այս փաստը քաղել ենք Վ. Միքայելյանի «Ղրիմի հայկական գաղութի պատմություն» աշխատությունից (տե՛ս էջ 160—161)։

[224] Հ. Աճառյանի «Հայոց անձնանունների բառարանում» (հատոր Բ, էջ 576—577) հիշատակված են Կակոս անունը կրող մի շարք անձինք։ Կամենեց-Պոդոլսկ քաղաքի հայկական ինքնավարության մարմնի 1567 թ. հիշատակված դատավորներից մեկը նույնպես այդ անունն է կրել (տե՛ս Վ. Գրիգորյան, նշվ. աշխ., էջ 96, 212, 267 և այլն)։

Փաստաթղթերի մեջ Կակոս անունը գրանցված է Կոկոս ձևով. «ա» և «օ» հնչյունների այս փոփոխությունը դյուրությամբ բացատրվում է օտար բառերի ու անունների՝ ռուսական ուղղագրության կանոններին համապատասխան գրությամբ։ «Կառոլ» (թագավոր) բառը, որ ծագել է Կառլ անձնանունից, ռուսները գրում են «օ»-ով, բայց արտաբերում «Կառոլ». հայկական Փանոս (Ստեփանոսի փաղաքշական ձևը) անունը ռուսական աղբյուրներում գտնում ենք տառադարձված Понос (Պոնոս) ձևով, որ անշուշտ արտասանվել է «ա»-ով (Панос). գրում էին կոզակ, մոնետա, Օնտոն, Օլեքսանդր, բայց արտասանում՝ կազակ, մանետա, Անտոն, Ալեքսանդր և այլն։

իշխանության. «Как еси наперед того нам служил и добра нашего смотрел, и ты бы и ныне нам служи, а мы, аж даст бог, хотим тобя жаловати».— գրել է իշխանը[225]։

Այս շրջանի մոսկովյան դիվանագիտական փաստաթղթերի մեջ հիշատակվում են նաև կաֆայեցի մի շարք այլ հայ վաճառականներ՝ Խաչերեսը (գրված է Качерис), Խարանգուլը (ըստ երևույթին Խերան անվան հետ է կապված), Պողոսը (գրված է Богос), Կույին, Սարգիսը (գրված է Серкиз), Բարեկը, Ավետիքը և ուրիշներ[226]։

Մեծ հետաքրքրություն են ներկայացնում, հատկապես, Պողոսի մասին Իվան III-ի, Ղրիմի խանի ու Կաֆայի թուրք փաշայի միջև փոխանակված փաստաթղթերը, որոնց ուսումնասիրությամբ զբաղվել է ղրիմահայ գաղութի պատմության մասնագետ Վ. Միքայելյանը[227]։ Այս գրագրությունը հնարավորություն է ընձեռում շատ ավելի հստակ պատկերացում կազմելու «սուրոժցի» կոչվող վաճառականների գործունեության տարբեր կողմերի մասին։ Պողոսը եղել է մեծահարուստ վաճառական։ XV դ. 90-ական թթ., 5—6 տարի անընդմեջ, նա գտնվել է Մոսկվայում. 1498 թ. ծանր հիվանդացել է. նրա հարազատները, մասնավորապես եղբայրը, խոջա Կույին, անհրաժեշտ քայլերի են դիմել Պողոսին Կաֆա փոխադրելու համար։ Սակայն հիվանդը կնքել է իր մահկանացուն Մոսկվայում, թողնելով թանկարժեք ապրանքներ։ 1499 թ. Իվան III-ը Կաֆա և Կոստանդնուպոլիս մեկնող իր դեսպանորդին հրահանգներ է տվել, թե վերջինս ինչ պետք է ասի սուլթանական և խանական արքունիքներում Պողոսի ու նրա ժառանգության մասին. ստորև մեջ ենք բերում այդ հրահանգների կարևոր մասի հայերեն թարգմանությունը.

«Համայն Ռուսիայի մեծ իշխան Իվան Վասիլևիչից՝
Օլեշ Գոլոխվոստովին։

Այստեղ (Մոսկվայում) կար մի կաֆայեցի Պողոս անվամբ հայ. այժմ նա այլևս չկա. և ես կարգադրել եմ նրա իրերը հավաքել ու կնքել։ Եթե Կաֆայում կամ Ցարգրադում... Պողոսի իրերի մասին քեզ հարցնեն, ապա դու նրանց պատասխանելու ես այսպես. այդ մարդը եղել է մեր թագավորի երկրում և այժմ մահացել է. և մեր թագավորի մաքսահավաքներին հրաման է տրվել պահպանել ու կնքել նրա ապրանքները. եթե այդ մարդն ունի զավակներ կամ որևէ զարմիկ, ապա, առաջնորդվելով արդարությամբ, մեր թագավորն այդ ապրանքը կհանձնի այն մարդուն, որին կուղարկի ձեր թագավորը մեր թագավորի մոտ»[228]։

Բանակցությունները ձգձգվում են. երկուստեք գրվում են բողոքներ ու բացատրություններ, մինչև որ 1502 թ. ապրիլին հանգուցյալ Պողոսի գույքը հանձնվում է Կաֆայից ժամանած դեսպանորդներին և հարթվում այդ վեճը։

225 Կակոսի մասին այս բոլոր տեղեկությունները քաղել ենք Վ. Սիրոյեչկովսկու մեր կողմից բազմիցս հիշատակված աշխատությունից (էջ 40—41)։

226 В. Е. Сыроечковский, նշվ. աշխ., էջ 45—46։

227 Վ. Ա. Միքայելյան, նշվ. աշխ., էջ 45—46։ Փաստաթղթերը տպագրված են „Сборник русского исторического общества", т. 41, СПб., 1884 ժողովածուի մեջ (էջ 271—395)։

228 Վ. Միքայելյան, նշվ. աշխ., էջ 162։ Վավերագրի թարգմանությունը մեջ ենք բերում փոքր-ինչ սրբագրելով։

Ըստ այս նյութերի Պողոսը հանդես է գալիս որպես մեկն այն «սուրոժցիներից», որոնք տարիներ շարունակ առևտուր անելով Մոսկվայում՝ չէին դարձել Մոսկվայի բնակիչ։ Հայտնի է, որ Պողոսի մայրը, կինը, երկու դուստրերը, եղբայրը և, հավանաբար, ուրիշ շատ ազգականներ բնակվում էին Կաֆա քաղաքում, և հանդես էին գալիս որպես Ղրիմի խանի հպատակներ։

Պետք է ենթադրել, որ «սուրոժցիների» մեծամասնությունը իրենց բնակելի սկզբնական շրջանում եղել են Պողոսի նման. Մոսկվայում առևտրական աշխույժ գործունեություն են ծավալել, բայց եղել են ոչ թե Մոսկվայի քաղաքացի (գործ ենք ածում նորագույն ժամանակներին հարմար այս տերմինը), այլ ղրիմեցի—«սուրոժյան հյուր»։ Սակայն բազմաթիվ ղրիմահայեր էլ՝ սկսած XIV դ. կեսերին, իսկ ավելի մեծ չափով XV-ի ողջ ընթացքում, այնպիսի սերտ տնտեսական կապեր էին ստեղծել Մոսկվայի հետ, հաստատվել այդ քաղաքում տևականորեն, տուն ու տեղ ստեղծել իրենց համար, ձեռք բերել շարժական ու անշարժ կալվածքներ, խնամիական կապեր հաստատել ռուսների հետ, որ «սուրոժցի» կոչումը նրանց համար դարձել էր արդեն ազգային պատկանելիությունից ավելի տոհմի ծագումը բացահայտող մի ցուցանիշ։ Պետք չէ անտեսել և այն հանգամանքը, որ «սուրոժցիներից» սերված և Մոսկվայի քաղաքացի դարձած վաճառականներից շատերը, տեղի տալով ռուսական եկեղեցու ճնշումներին, խզում էին իրենց կապերը մայր եկեղեցուց և դառնում ուղղափառ։ Այսպիսով նրանք ավելի էին մերվում ռուսական միջավայրին, մոռացության տալով իրենց գերդաստանի ծագման հիշատակները։

* * *

Ի՞նչ հիշատակներ է պահել Մոսկվայի միջնադարյան պատմությունը «սուրոժցի» կոչվող հայ վաճառականների առկայության ու գործունեության մասին։ Հնագույն տեղեկությունը, գրանցված 1599 թ. մի փաստաթղթի մեջ, վերաբերում է «Հայկական կարավանատանը» («Армянский двор»), որն ըստ երևույթին գոյություն է ունեցել այդ թվականից շատ առաջ[229]։ Միջնադարյան քաղաքների ներքին կյանքի մասին առկա տեղեկություններից դատելով, հայ վաճառականները իջևանում էին իրենց այս կարավանատանը, և հենց այստեղ էլ զբաղվում մեծածախ առևտրով։ Կարավանատունը գտնվում էր Սրետենսկի փողոցի վրա[230]։

Մոսկվայի քաղաքային շուկան գտնվում էր Կրեմլի առջևի հրապարակում և գետափին, բաղկացած էր բազմաթիվ շարքերից, որոնց մեջ կենտրոնական տեղ էր գրավում «Սուրոժյան մետաքսի վաճառաշարքը» («Сурожский шелковый ряд»), որը սկիզբ էր առնում Կրեմլի Սպասսկի կոչվող դարպասի մոտակայքից և ձգվում մինչև Իլյինկայի եկեղեցին։ 1626 թ. մեծ հրդեհից հետո, երբ գրեթե ամբողջապես հրո ճարակ դարձան Կիտայ-Գորոդի բոլոր շինությունները, Մոսկվայի առևտրական այդ կենտրոնն սկսեց վերաշինվել հիմնովին. տերության և մասնավոր անձանց նախաձեռնությամբ այստեղ սկսեցին կառուցվել վաճառատներ, պետական հիմնարկներ և եկեղեցիներ։ Վաճա-

229 *Н. М. Карамзин*. История государства российского, изд. Н. Эйнерлинга, т. X, СПб., 1843, *էջ 155։ М. В. Фехнер, նշվ. աշխ., էջ 60։*

230 *Н. Костомаров*. Очерк торговли Московского государства в XVI—XVII столетиях, СПб, 1862, *էջ 86։*

ռատներից հիշատակվում են երեքը՝ «Հինը», «Նորը» և «Պարսկականը». այս վերջինն իր մեջ բովանդակում էր 200 թաղակապ կրպակներ, որոնք վարձու էին տրվում արևելյան ապրանքներ վաճառող հայերին, պարսիկներին, ռուսներին[231]։

Հայկական կարավանատան, «Սուրոժյան մետաքսի վաճառաշարքի», իսկ հետագայում «Պարսկական» վաճառատան գոյությունը Մոսկվայի կենտրոնական հրապարակում և Սրետենսկի փողոցի վրա՝ խոսուն փաստեր են նախ ղրիմահայերի, ապա նաև այլ վայրերից ժամանող հայ վաճառականների Մոսկվայում կատարած տնտեսական կարևոր դերի մասին։

* * *

Մոսկվայի հայ գաղութի մասին մեր գիտելիքները կընդարձակվեին, եթե հնարավոր լիներ պարզել, թե երբվանից են հայերն այստեղ ունեցել իրենց եկեղեցին՝ միջնադարյան այն հաստատությունը, որի գոյությունն իսկ կարելի է զորեղ առհավատչյա համարել բազմամարդ ու կազմակերպված գաղթօջախի առկայության։ Նախորդ էջերից մեկում անդրադարձել ենք արդեն Մոսկվայի մետրոպոլիտ Կիպրիանոսին ու նրա՝ հայերի նկատմամբ որդեգրած անհանդուրժողական կեցվածքին։ Հոգևոր այդ առաջնորդը պատվիրում էր ռուս հավատացյալներին մտերմական կապեր չստեղծել «հերձվածող» հայերի հետ, արգելել նրանց մուտքը եկեղեցիներ և այլն։

Այս «հորդորներից» հետո, եթե ոչ հասարակ ժողովուրդը, ապա՝ անտարակույս կղերական դասը, պետք է, որ խեթ աչքերով նայեր «կասկածելի» դավանանք ունեցող հայ քրիստոնյաների վրա։ Եվ նրանք, անկախ եկեղեցու պաշտոնյաների կողմից պարտադրվող անբարյացակամ այս կեցվածքի, եթե, իհարկե, պատկառելի թիվ էին կազմում, պետք է, որ ստեղծեին իրենց աղոթքի տունը, իրենց համայնքի ներքին գործերը տնօրինող հաստատությունը։ Եվ իրոք, կան աղոտ հիշատակներ այն մասին, որ «սուրոժցի վաճառականները» տակավին XIV դ. վերջերին, Մոսկվայում ունեցել են իրենց եկեղեցին։

1479 թ. Իվան III-ը քանդել տալով փայտաշեն ու խարխուլ մի եկեղեցի, որը գտնվում էր Մոսկվայի առևտրաարհեստավորական արվարձանում՝ Պոսադում, նույն տեղում հիմք է դնում քարաշեն մի եկեղեցու՝ Հովհան Ոսկեբերանի անունով։ Այդ մասին տարեգրության մեջ գրանցում կատարողը նշել է, որ նախկին փայտաշեն եկեղեցին կառուցված է եղել Մոսկովյան «հյուրերի», այսինքն «սուրոժցի վաճառականների» կողմից, պատկանելիս է եղել նրանց («бе же та церковь изначала гостей московских строение»)[232]. Բայց մեծահարուստ ու փարթամ «սուրոժցի» վաճառականները կարո՞ղ էին, արդյոք, իրենց հոգևոր հաստատությունը պահել վերին աստիճանի լքված ու խարխուլ վիճակում, եթե XV դ. վերջերին ունեցած չլինեին մեկ ուրիշ տաճար։ Թվում է, թե չէր կարող այդպես լինել։ Եվ, իրոք, տարեգիրը այդ խարխուլ եկեղեցին անվանում է «бывшей гостиной древяной», այ-

231 М. Н. Тихомиров, նշվ. աշխ., էջ 130, 147։ Н. Костомаров, նշվ. աշխ., էջ 85։
232 ПСРЛ, т. XI, էջ 221. В. Е. Сыроечковский, նշվ. աշխ., էջ 39։

*սինքն՝ «Հյուրերին պատկանող փայտաշեն եկեղեցի»*[233], *ակնարկելով թերևս այն մասին, որ Իվան III-ի կողմից նոր եկեղեցու հիմքերը դնելու ժամանակ Մոսկվայի «հյուրերն» ունեցել են արդեն մեկ այլ՝ ոչ փայտաշեն, այլ քարաշեն տաճար*[234]*։*

*Ցավոք, տեղեկություններ չեն պահպանվել այդ տաճարի կառուցման ժամանակի, վայրի և գոյատևման մասին։ 1753 թ. մի փաստաթղթում՝ գրված Օթար Թումանովի և այլ հայերի կողմից, տվյալ կա այն մասին, որ վաղ ժամանակներում Կիտայ-Գորոդում հայերն ունեցել են եկեղեցի, որը հետագայում լքվել է, այդ շինությունների տեղում մետաքսի արհեստանոց կառուցվելու հետևանքով։ Մեկ ուրիշ վկայությամբ այդ եկեղեցին գտնվելիս է եղել Կիտայ-Գորոդի այն հատվածում, որն ընկած էր Վարվառկա և Իլյինկա փողոցների միջև, ուր տակավին XVIII դ. գոյություն են ունեցել հայերին պատկանող ինչ-որ շինություններ՝ պիտանի հայկական եկեղեցու կարիքների համար*[235]*։*

*Իվան IV Ահեղի հրամանատարության ներքո գործող ռուսական բանակը, երկարամյա համառ պայքարից հետո, 1552 թ. գրավեց Ղազանի խանությունը։ Մենք արդեն ասել ենք, որ Ղազանում բնակվող հայերը ռուսական զենքի հաղթանակի ջերմ կողմնակիցներն էին։ «Ղազանի տարեգրությունը» տեղեկություն է պարունակում այն մասին, որ պատերազմից հաղթանակով վերադարձող ցարին ու զորքերին Մոսկվայում ցնծագին դիմավորողների շարքում եղել են բազմաթիվ հայեր*[236]*։ Ի նշանավորումն այս հաղթանակի, Իվան Ահեղը Մոսկվայի կենտրոնում կառուցել է տվել ռուս ճարտարապետության հրաշալիքներից մեկը՝ Վասիլի Երանելու փառահեղ տաճարը, բաղկացած միմյանց հետ շաղկապված ինը փոքր եկեղեցիներից։ Դրանցից մեկը նվիրվել է Հայոց Լուսավորիչ Գրիգոր Պարթևին։ Եթե Մոսկվայի հայերը Ռուսաստանի տնտեսական կյանքում զգալի դեր կատարած չլինեին, այս փաստը կմնար առանց բացատրության։ Եվ, անշուշտ, ճիշտ են այն ուսումնասիրողները, որոնք հայերին սիրաշահելու խորհուրդ են տեսնում այս փաստի մեջ։ Մոսկվայի հայ գաղթօջախի բնակչությանը, ինչպես և տարբեր ճանապարհներով ու տարբեր գործերով Մոսկվա ժամանող հայազգի բոլոր մարդկանց հնարավորություն է տրվում իրենց անկյունն ունենալու համառուսական նշանակություն ստացած նորակառույց այդ տաճարի մեջ։*

---

233 *Այս արտահայտությունը քաղում ենք Մ. Տիխոմիրովից (նշվ. աշխ., էջ 158), որը մեջ է բերել՝ վկայակոչելով* ПСРЛ. т. VIII, *էջ 201*, ПСРЛ. т. XXIII, *էջ 193։*

234 *Այս եզրակացությունը պատկանում է Մ. Տիխոմիրովին (տե՛ս նշվ. աշխ., էջ 158)։ Նշենք, սակայն, որ «սուրոժյան հյուրեր» կոչվող վաճառականներին համարելով մոսկվացի ռուս վաճառականներ, որոնք առևտուր էին անում Ղրիմի հետ, ակադ. Մ. Տիխոմիրովը այս փաստի հիման վրա խոսք է բացել Մոսկվայում վաճառականական միությունների կամ արհեստակցական կազմակերպությունների սաղմերի առկայության մասին։ Այժմ, երբ պարզ է արդեն, որ «սուրոժցի» են կոչվել ոչ թե ազգությամբ ռուս վաճառականները, այլ ղրիմահայերը՝ վերանայման կարոտ են դառնում «սուրոժցիներին» պատկանող եկեղեցիների մասին փաստի այս կարգի հեռամետ մեկնաբանությունները։*

235 Материалы для истории, археологии и статистики города Москвы, собр. И. Е. Забелиным, ч. I, *էջ 1009*, ч. II, *էջ 1154 (տե՛ս Մ. Տիխոմիրով, նշվ. աշխ., էջ 216)։*

236 «Казанская история», М., 1957, *էջ 154. «Հայ ժողովրդի պատմություն», IV, էջ 422։*

* * *

XVI դ. երկրորդ հիսնամյակը Ռուսաստանի և մերձակա երկրների հայկական գաղթօջախների պատմության համար դարձակետային ժամանակաշրջան է եղել։ Հայ առևտրական կապիտալն ընդարձակել է իր գործունեության շրջանակները։ Ինչպես միշտ զբաղված լինելով հիմնականում արևելյան ապրանքների առևտրով, հայ վաճառականներից շատերը մուտք են գործել այդ երկրների տնտեսական կյանքի տարբեր բնագավառները, զբաղվել նաև տեղական ու եվրոպական ապրանքների մեծածախ առևտրով, ստեղծել արհեստանոցներ և այլն։ Քիչ չեն եղել նաև մեծահարուստ այն վաճառականները, որոնք ձեռք բերելով գանձագին խոշոր կալվածքներ, տեղ են գրավել այդ երկրների կալվածատերերի շարքում։ Բարգավաճ այս վիճակն արդյունք էր, առաջին հերթին, արևելաեվրոպական երկրների տնտեսական կյանքի բուռն զարգացման, սակայն որոշիչ դեր էին կատարում նաև քաղաքական նոր պայմաններն ու միջպետական հարաբերությունները։

Օսմանյան Թուրքիայի և Սեֆյան Իրանի միջև դեռևս XVI դ. սկզբներին ծայր առած գոտեմարտերն ավելի սուր բնույթ էին ստացել դարիս երկրորդ հիսնամյակի ընթացքում։ Սյուննի և շիա դավանանքին պատկանող մուսուլմանների միջև հակամարտությունները բացարձակ պայքարի ձևեր էին ընդունել։ Թուրքիայի սահմաններից վտարվել էին բոլոր իրանցի շիաները. իրանցի վաճառականների առջև փակվել էին Անդրպատականից Թուրքիայի կենտրոնական քաղաքները և սևծովյան նավահանգիստները ձգվող բանուկ ճանապարհները։ Հակառակ քաղաքական անբարենպաստ այս պայմանների, ապրանքափոխանակությունը չէր դադարել մրցակից պետությունների միջև։ Առանց կանգառի Իրանում արտահանվող հում մետաքսի բեռները և իրանական ու հեռավորարևելյան այլ ապրանքներ, մեզ ծանոթ ճանապարհներով, մուտք էին գործում Թուրքիա՝ դառնալով հումք Թոխաթում, Բուրսայում և այլ քաղաքներում զարգացող մետաքսագործության համար։ Պատերազմող կողմերի փոխադարձ համաձայնությամբ՝ մեծ չափերի հասնող այդ առևտուրը կատարվում էր Իրանի և Թուրքիայի տիրապետության տակ անցած հայկական նահանգներում բնակվող և այդ երկրների տնտեսական կենտրոններում հաստատված հայ վաճառականների միջոցով[237]։ Նույն այս վաճառականներն էին, հիմնականում, որ վերոհիշյալ արևելյան ապրանքները և դրան ավելացված նաև Թուրքիայում արտադրվող թանկարժեք գործվածքեղենը մեծ քանակությամբ հասցնում էին Ղրիմ, Լեհաստան, Մոսկվա և ուրիշ մերձակա երկրներ։

Տեղական պատերազմները և ռազմական բախումներն անպակաս էին նաև Արևելյան Եվրոպայի երկրներում։ Բայց ապրանքափոխանակությունը շահութաբեր էր բոլորի համար հավասարապես։ Ուստի հայ վաճառականներն այստեղ ևս դիտվում էին որպես չեզոք տարր և իրավունք էին ստանում կարավաններ կազմելով երթևեկել մի երկրից մյուսը՝ նույնիսկ պատերազմական գործողությունների ժամանակ։ Եվ այսպիսի երթևեկը կատարվում էր ոչ դեպքից դեպք կամ բացառիկ պայմաններում, այլ օրենքի ուժ էր ստացել Լեհաստանի

237 Հ. Փափազյան. Հայերի դերը Թուրքիայի մետաքսագործության մեջ և 1729 թ. Թավրիզում կնքված համաձայնագիրը, «Բանբեր Մատենադարանի», № 9, 1969, էջ 242—244։

թագավոր Սիգիզմունդ Օգոստոսի 1570 թ. հրապարակած մի հրովարտակով[238]։

Այս ժամանակաշրջանում Լեհաստանում բնակվող կամ առևտուր անող հայ վաճառականներն ստացել էին նաև այլ առանձնաշնորհումներ, և այն աստիճանի ամրապնդել իրենց տնտեսական դիրքերը, որ տեղական առևտրական բուրժուազիայի ներկայացուցիչների նախանձն էին շարժում։ Վերջիններս, զանազան բողոքագրեր ներկայացնելով կենտրոնական իշխանությանը, փորձում էին սահման դնել հայերի տնտեսական բարգավաճման առջև։ Լվովի քաղաքային համայնքն, օրինակ, Սիգիզմունդ Օգոստոս թագավորին հասցեագրած բողոքագրի մեջ ասում էր. «Հայերն այժմ առևտուրը տարածել են ողջ թագավորության մեջ, նաև Պրուսիայում, Լիտվայում և Մոսկվայում, երկրներ, ուր իրենց նախնիները բավարարվում էին սոսկ արևելյան ապրանքների վաճառքով։ Իրենց ստացած արտոնագրից հետո,— շարունակում են բողոքագրի հեղինակները,— հայերի վիճակն այնքան երջանիկ է դարձել, որ ծովից ծով (այսինքն՝ Սև ծովից Բալթիկ ծով—Լ. Խ.) են հասցնում իրենց առևտրի ապրանքները, առիթ չեն կորցնում գյուղեր և ավաններ վարձակալելու, բազմացնում են իրենց պարտեզները քաղաքի արվարձաններում, և իրենց ձեռքն են առնում քաղաքի (իմա՛ Լվովի—Լ. Խ.) գրեթե բոլոր վաճառատները»[239]։

Մոսկվայի հայ վաճառականների մասին պահպանված տեղեկությունները, ինչպես տեսանք արդեն, անհամեմատ աղքատ են, սակայն, հիմքեր կան ենթադրելու, որ մեծ չափերի է հասել նաև նրանց առևտուրը։ Մոսկվայի և արևելյան երկրների միջև կատարվող առևտրի մասին հատուկ մենագրության հեղինակ Մ. Ֆեխները, սկզբնաղբյուրների հիման վրա ցույց տալով, որ արևելյան (առաջին հերթին՝ հայազգի) վաճառականները մշտապես առևտուր էին անում Մոսկվայում, Մեծ Նովգորոդում, Պուտիվլում, այսինքն՝ Ռուսաստանի սահմանափակ կենտրոններում, ուշադրություն է հրավիրում հետևյալ հարցերի վրա։ Չնայած այն հանգամանքին, որ կառավարությունը սահմանափակել էր արևելյան վաճառականների գործունեության վայրերը, այդուամենայնիվ, Արևելքից ներմուծված ապրանքները Ռուսաստանում լայն տարածում էին գտնում։ Ռուս վաճառականները հայերից ձեռք բերելով այդ ապրանքները, դրանք վաճառքի էին հանում ոչ միայն Ռուսաստանի կենտրոնական քաղաքներում, այլև հասցնում էին պետության հյուսիսային և հյուսիս-արևելյան ամենահեռավոր շրջանները. «Այս հանգամանքը,— եզրակացնում է ուսումնասիրողը,— ակնառու կերպով հաստատում է, որ ռուսական ներքին շուկայի համար արևելյան առևտուրն ունեցել է ոչ փոքր նշանակություն»։ Այնուհետև հաստատելով, որ հայ վաճառականների առևտրի հիմնական առարկան XVI դ. եղել է մետաքսը, Մ. Վ. Ֆեխները շեշտում է, որ այդ ապրանքներից բացի «հայերը թանկագին քարերի, մորթիների, կաշվի և մոմի մեծ չափերի հասնող առևտուր են արել»[240]։

Բարվոք և հավասարակշիռ այս վիճակը խախտվում է XVI դ. վերջերին և XVII-ի սկզբներին, երբ Թուրքական կայսրությունն ալեկոծվում էր ջալալին-

238 Հրովարտակում պարզ ասված է, որ հայ վաճառականներն իրավունք ունեն կարավաններով Թուրքիայից լեհական պետության սահմանները մտնել և Կիևից ուղևորվել Մոսկվա նաև պատերազմի ժամանակ («Архив юго-западной России», ч. VII, т. V. 1907, էջ 187—190)։

239 Պիչոֆ, Լեհահայոց հին իրավունքը, Վիեննա, 1890, էջ 36—37։

240 М. В. Фехнер, նշվ. աշխ., էջ 60—63։

րի հուժկու ապստամբություններից։ Փոքր Ասիայի արհեստագործության և առևտրի նշանավոր կենտրոնները կողոպտվում ու ավերվում էին այն աստիճանի, որ տասնամյակներ պետք է անցնեին նախկին վիճակին հասնելու համար։

Մոսկվայի հետ տնտեսական ամենասերտ կապեր ստեղծել էին, հատկապես, Թոխաթեցի հայ վաճառականները։ 1602 թ. ջալալիները գրավեցին և ավերեցին նշանավոր այս կենտրոնը։ Ստեփանոս Թոխաթեցի տաղագիր բանաստեղծը գովերգում է իր հայրենի քաղաքը, նկարագրում նրա ծաղկուն ու բարգավաճ վիճակը մինչև ջալալիների կողմից ավերվելը։ Ի վերջո, սրտի խոր կսկիծով նա արձանագրում է, որ ամեն ինչ այդտեղ հողին է հավասարեցվել, իսկ բնակչության մեծամասնությունը լքել է քաղաքն ու ցրվել աշխարհով մեկ[241]։

Թուրքիայի քաղաքական կյանքի անկայուն վիճակի և կենտրոնական շրջանների տնտեսական փլուզման այս նույն ժամանակաշրջանում, ինչպես ասել ենք արդեն, ռուսական պետությունը վերելք էր ապրում և ընդարձակում իր սահմանները՝ բոլոր ուղղություններով։ Ղազանի և Աստրախանի խանությունների գրավումից հետո միջազգային ապրանքափոխանակության Կասպ-Վոլգյան հին մայրուղին շատ ավելի մեծ նշանակություն է ստանում հզորացող Ռուսաստանի համար։ 1584 թ. հյուսիսային Դվինայի գետաբերանում՝ Սպիտակ ծովի ափին հիմնադրվում է հետագայում Արխանգելսկ կոչված նավահանգստային քաղաքը, որով ռուսական պետությունը ծովային ճանապարհով անմիջական հաղորդակցության մեջ է մտնում հյուսիսեվրոպական երկրների հետ։ Իրանից և Անդրկովկասյան երկրներից Կասպից ծովի ու Վոլգայի վրայով դեպի Մոսկվա ձգվող տնտեսական զարկերակն սկսում է բաբախել լիարյուն, և դրան համընթաց արյունաքամ է լինում ղրիմյան մայրուղին։

Համայն Ռուսիայի մայրաքաղաք դարձած Մոսկվայում ավելի են բազմանում հայ վաճառականներն ու տարբեր զբաղմունքի տեր մարդիկ, որոնցից շատերը մշտական բնակություն են հաստատում այստեղ։ Սակայն նրանք, իրենց մեծամասնությամբ, այլևս ղրիմահայեր կամ Թուրքական տիրապետության տակ անցած հայկական նահանգների հետ կապված հայեր չէին, այլ Արևելյան Հայաստանից, Վրաստանից և Իրանի տիրապետության տակ գտնվող Անդրկովկասյան խանություններից տեղափոխվածներ։

Մոսկվան այդ շրջանում շատ էր ընդարձակվել. Սպիտակ քաղաքից (Белый город) դուրս գտնվող Թաղամասերը, որ հողե պարիսպների ծիրի մեջ էին գտնվում, արդեն անբավարար էին արագորեն աճող բնակչության կարիքների համար, ուստի այդ պարիսպներից դուրս ստեղծվում էին նոր Թաղամասեր[242]։ Քաղաքային կյանքի զարգացման հետևանքով մարդահամար կատարելու փորձեր էին արվում. 1620, 1638, 1665—1672, 1690-ական թթ. կատարված բնակչության ցուցակագրությունների տվյալներից ելնելով, ուսումնասիրողները հանգել են այն եզրակացության, որ XVII դ. հայերը Մոսկվայում չեն ունեցել հատուկ Թաղամաս, այլ բնակություն են հաստատել օրավուր ընդարձակվող քաղաքի տարբեր մասերում[243]։ Կան, սակայն, որոշ ավ-

241 Ղ. Ալիշան, *Հայապատում*, հատոր Բ, Վենետիկ, 1901, էջ 606—609։

242 *П. В. Сытин.* История планировки и застройки Москвы, материалы и исследования, том первый, 1147—1762 гг., М., 1950:

243 *Нина Молева.* Иван Салтанов и его школа. «Լրաբեր», 1977, № 10, էջ 75։

յալներ, որոնք խոսում են հօգուտ այն ենթադրության, թե բազմաթիվ հայեր գերադասում էին Պրեսնյա թաղամասը, ուր ըստ ստուգելի որոշ տվյալների XVII դ. սկզբներին կառուցվել է Հայոց Սուրբ Աստվածածնի քարաշեն եկեղեցին[244]։ Քաղաքի այս մասում բազմաթիվ հայերի առկայությամբ է բացատրվում նաև այն հանգամանքը, որ հայերի ազգային գերեզմանատունը նույնպես ստեղծվել է այստեղ. Վագանկովյան թաղի հայկական այս գերեզմանատանը 1801 թ. կառուցվեց հայկական մի մատուռ, որը կանգուն է առ այսօր և Մոսկվայի հայերի միակ գործող եկեղեցին է հանդիսանում։

1729 թ. Պետրոս II-ի հրովարտակով Պրեսնյայի թաղամասում գտնվող Վոսկրեսենսկայա կոչվող թագավորական կալվածքը տրվում է իր ընտանիքով Մոսկվա փոխադրված Վրաց թագավոր Վախթանգ VI-ին։ Թագավորի հետ միասին Պրեսնյայի այս նոր թաղամասում բնակություն են հաստատում Պետրոս Մեծի անդրկովկասյան արշավանքից հետո հայրենիքից հեռացած բազմաթիվ վրացի և հայ ազնվականներ, առևտրականներ, զինվորականներ և հասարակ մարդիկ՝ շուրջ 3000 անձինք։ Սրանց ջանքերով շենանում է քաղաքի այդ մասը, որը հայտնի է դառնում Գրուզինի անունով և որի հիշատակները մնում են նաև այսօր՝ Մեծ և Փոքր Գրուզինսկի փողոցների շրջափակում։ Եթե ճիշտ է այն տեղեկությունը, թե Պրեսնայում հայեր են հաստատվել ու եկեղեցի կառուցել այս դեպքերից շուրջ մեկ դար առաջ, կարելի է ենթադրել, որ ռուսական կառավարությունը Վրաց թագավորի և նրա հետ ժամանած վրաստանցի գաղթականների համար բնակության վայր ընտրելիս հաշվի էր առել նաև այդ հանգամանքը։ Գրուզինի կոչված նորաստեղծ թաղամասի բնակչության կազմում կարելի է հաստատապես պնդել, որ զգալի թիվ էին կազմում հայազգի մարդիկ, ըստ մեծի մասին վաճառականներ[245]։

---

244 Բարձրագոյն հրովարտակք և արձանագրութիւնք վերաբերեալք առ եկեղեցիս դաւանութեան լուսաւորչական Հայոց, որ ի Ռուսաստան, Մոսկվա, 1842, էջ 119. Մ. Մսէրեան, Յիշատակարան կենաց և գործոց մեծանուն պայազատաց Լազարեան տոհմի, Մոսկվա, 1856, էջ 18։

Մոսկվայում բնակություն հաստատած մի խումբ հայերի կողմից 1753 և 1760 թթ. ռուսական պետական մարմիններին ներկայացրած խնդրագրերի մեջ խոսք կա այն մասին, որ Կիտայ-Գորոդի հայկական եկեղեցու վերացումից և ժամանակավոր ժողովատեղիների փոփոխություններից հետո, հայերն իրենց աղոթատեղին փոխադրել են Պրեսնյա, որտեղ Վախթանգ թագավորի կողմից նրանց հատկացված հողամասի վրա, նրանք կառուցել են փայտաշեն մի եկեղեցի։ 1753 թ. փաստաթղթում գրված է. «...А как тот Волков двор хозяином продан, то оную церковь принуждено перенесть в деревянной покой, состоящей за земляным городом, близ самого поля, за Преснею рекою, месте которое отдано выехавшим покойным грузинским царем Вахтангом Леонтевичем армянской нации князьям и дворянам и протчего звания людям с фамилиями для поселения» («Арм.-русские отношения в XVIII в.», 3, էջ 276, հմմ. նաև էջ 337)։

Ըստ երևույթին հիմնավոր չեն այն տվյալները, որոնց համաձայն Պրեսնյայում հայկական քարաշեն եկեղեցի է եղել տակավին XVII դ.։ Հավանաբար այդ թաղամասում հայկական եկեղեցական առաջին շինությունը հենց այն փայտաշեն եկեղեցին է, որի մասին խոսք կա վերահիշյալ փաստաթղթի մեջբերված հատվածում։

245 Այս կապակցությամբ պետք է հաշվի առնել, որ ինչպես վաղ միջնադարում, այնպես էլ հետագա դարերում (մինչև XIX դ.), «վրացի» տերմինը հայ և օտարազգի բազմաթիվ աղբյուրներում լայնորեն օգտագործվել է «Վրաստանի բնակիչ» իմաստով, հասկացվելով հավասարապես Վրաստանի և՛ վրացիներին, և՛ հայերին։ Այս հաստատվում է բազմաթիվ փաստերով, որոնցից մի քանիսի հետ արժե ծանոթանալ։ 1691 թ. հայերեն մի հիշատակարանի մեջ «վրացի» է կոչվել Սպահանում առևտուր անող Կուտէնց Մաթոսի որդի պարոն Թամազը (եղբայրն է՝ Ղազար, քույրը՝ Խաթուն և այլն)։ Զաքարիա Ագուլեցին իր «Օրագրության» մեջ

* * *

Հին Մոսկվայի հետ հայերի ունեցած առևտրական կապերի ամբողջացվող պատկերն ավելի հստակ կդառնա, եթե մենք հպանցիկ մի հայացք նետենք այն երկու նշանավոր կենտրոնների վրա, որոնք երկար ժամանակ եղել են մոսկվացի ռուս վաճառականների կողմից ոչ հաճախ կազմակերպվող հեռագնաց առևտրական ճամփորդությունների վերջնական հանգրվանները։ Խոսքը վերաբերում է Փոքր Ասիայում՝ Թոխաթին, Անդրկովկասում՝ Շամախուն։

Նախ Թոխաթի մասին։ Թուրքական մի բարձրաստիճան նահանգապետի 1498 թ. գրած նամակում բառացի ասված է, «որ Մեծ իշխան Իվանի վաճառականներից (ГОСТЬ) շատերը գալիս են մեր Թոխաթ քաղաքը»[246]։ Դժվար է ասել, թե այստեղ խոսք կա ազգությամբ ռուս վաճառականների մասին, և ավելի հավանական է ենթադրել, որ թուրք պաշտոնյան նկատի է ունեցել Մոսկվայում հաստատված հայերին, որոնք հաճախ էին այցելում Թոխաթ։ Անկախ

---

խոսում է երկու հայերի մասին, որոնք իրենց անունը հայատառերելով՝ շատ վաճառականների առևտրական մեծ հարված են հասցրել. «Այս Բ. բինադարս,— գրում է նա,— վրացի են, ազգաւ հայ, ի քաղաքէն Թիֆլիսու, անունն Շահվերդի, միւսն Գասպար» («Օրագրութիւն», էջ 72)։ Ճիշտ այդպես վրացի են կոչված նաև «Աբրահամի որդի վրացի պարոն Կարապետը» (Բրիտանական գրադարան, O.P.B. № 1048, էջ 77), «վրացի Զօրաբեգը» (Մատենադարան, Արխիվային բաժին, Լազարյանների ֆոնդ, վավ. 1, էջ 126), «վրացի պրն Մխիթարը» (ձեռ. № 6240, էջ 44ա), «վրացի Սողոմանց Ալահվերդին» («Եղիա Կարնեցու դիվանը», էջ 68) և բազմաթիվ այլ հայ վաճառականներ, անշուշտ, այն բանի համար, որ դրանք բոլորն էլ եղել են թիֆլիսեցիներ կամ վրացահայեր։ Երուսաղեմի հայերեն ձեռագրերից մեկում ընդօրինակված է զվարճալի մի պատմություն, որի մեջ հակադրվում են իրենց կենցաղով շատ տարբեր վրաստանցի (առատաձեռն ու «քեֆչի») և պարսկաստանցի (սակավապետ) հայերը։ Այնտեղ գրված է. «Հայ ոմն վրացի ճանապարհորդեալ ի Պարսկաստանէ գնայր ի Բասրա ընդ միում պարսկահայի, որ էր փարթամ յոյժ, բայց կերակուր իւր էր իբրև յետինն չքաւորի...»։ Երբ այս հարուստ վաճառականը դիտողություն է անում վրացահայի՝ կերուխումի համար շատ դրամ ծախսելու կապակցությամբ, վերջինս նրան պատասխանում է. «Պարոն, մինչ ունիմ, այսպէս փարթամօրէն կեամ, և յորժամ պակասեսցին ինձ, յայնժամ կեցից իբրև զքեզ» (Ն. Պողարյան, Ցուցակ..., Դ, էջ 561)։ «Ընտիր պատմութիւն Դաւիթ-բեգին» (Վաղարշապատ, 1871, էջ 5) ծանոթ գրվածքի մեջ Վրաստանից Սյունիք ժամանած հայ զինվորները «վրացի» են կոչվել. «Սոքա վրացի ասին,— բացատրում է հեղինակը,— բատ որում էին յերկրէն Վրաց, այլ ոչ ի յազգէ նոցա»։ Խոսելով Թիֆլիս քաղաքի մասին, Մ. Թաղիադյանն իր «Ճանապարհորդութիւն ի Հայս» աշխատության մեջ ուղղակի նշում է, որ «բնակիչք նորա հայք և վիրք առ այլազգիս միահաղոյն գուրջիս անուանեալ [են]» («Գրական ժառանգություն», հատոր 9, Մեսրոպ Թաղիադյան, Երևան, 1975, էջ 169) և այլն։ Այս նույն պատկերը նկատվում է նաև ռուսերեն գրված բազմաթիվ փաստաթղթերում։ Լուկա Շիրվանով հայ վաճառականը, օրինակ, թվարկելով իր գերդաստանի հետ սերտորեն կապված անձնավորություններին, դրանց շարքում հիշատակում է Բարսեղի որդի Պողոսին, նրան կոչելով «гилянец грузинец Павел Василев, уроженец города Тефлиса» («Арм.-русские отношения XVII в.», 3, էջ 180)։ Զուրաբ Զավրիեր, պետական մարմիններին ներկայացրած իր մի գրության մեջ, ներկայանում է որպես «грузинской нации армянского закона дворянин Зурап Завриев», Օթար Թումանյանը ներկայանում է որպես «армянской нации в Москве обретающееся житель грузинской князь гусарского полку капитан Отар Туманов» (նույն տեղում, էջ 275) և այլն։

Այսպիսով ստացվում է նույն պատմությունը. XIV դ. Մոսկվայի բնակչությունը շփվում է Ղրիմից ժամանող հայերի հետ՝ կոչելով նրանց «Սուրոժցի» կամ «Կաֆացի», հաշվի առնելով Ղրիմի վաճառաշահ այն քաղաքները, որտեղից ժամանում էին այդ հայերը. իսկ XVI—XVII դդ. «վրացի» («գրուզին») անունով են հայտնի դառնում շատ հայեր, քանի որ նրանք Մոսկվա էին ժամանում այս անգամ արդեն ոչ թե Ղրիմից, այլ Վրաստանից։

246 В. Е. Сыроечковский, նշվ. աշխ., էջ 51։

այս վկայությունից, կան իսկապես ռուս մարդկանց Թոխաթ այցելելու մասին ուրիշ, ավելի վստահելի տվյալներ:

Արդ՝ ի՞նչ էր իրենից ներկայացնում Թոխաթ քաղաքը մինչև ջալալիների կողմից ավերվելը (1602 թ.) և հետագայում, երբ բուժվեցին նրա վերքերն ու այն նորից վերակենդանացավ: Ստեփանոս Թոխաթեցին հայտնում է, որ քաղաքի յոթ թաղերը եղել են զուտ հայաբնակ և ամեն մեկն ունեցել է իր եկեղեցին: Սուրբ Սարգսի թաղի մասին, օրինակ, բանաստեղծն ասում է.

Շատ քրիստոնեայք կայր յայն թաղին,
Ամենքըն ճոխ տանուտէրնի,
Կարդացողնիր, հասկըցողնի,
Առատաձեռն խօճանի:

Այս վաճառականներն էին, որ իրենց առևտրական գործերով լինում էին ամենուրեք.

Գնային Շիրվան և Շամախի,
Շամ, Հալէպ 'ւ Ըստամպօլի,
Պուրսայ, և այլ բազում տեղի:

Անշուշտ, այս «բազում տեղիի» մեջ էին մտնում նաև Ղրիմը, Լեհաստանը և Մոսկովյան պետությունը՝ տնտեսական իրենց նշանավոր կենտրոններով: Բանաստեղծը նկարագրում է Թոխաթի շուկան՝ «բարով լիի» խանութներով.

Վաճառականաց էր նա տեղի.
Չորս կողմանց գայր պազըրկնի,
Սախէր բեռնով ապրուշումնի,
Չուխայ, քըթան 'ւ այլ զումաշնի:

Քաղաքը եղել է նաև արհեստագործության նշանավոր կենտրոն. արտադրվել են «գոյնըզգունաց ամեն ցեղի» մետաքսե ծաղկազարդ գործվածքներ, բեհեզ, քաթան և այլ կտորեղեն: Բանաստեղծը խոսում է ոսկերչական գեղեցիկ ապրանքների, պղնձե «թաս-թափսիների», «վարպետարան» կողպեքների և շատ այլ «զարմանալի բաների» արտադրության մասին[247]:

Մեկ ուրիշ թոխաթեցի՝ Հակոբ Բաթուկենցը, լրացնելով նախորդին, տեղեկություններ է հաղորդում իր հայրենի քաղաքի «ընտիր խաների», այսինքն՝ կարավանատների մասին, ուր տարբեր երկրներից ժամանած վաճառականները «օթէին բազում օրեր», գովերգում է տեղի «տոլվաթաւոր խօճաներին», որոնք մեծահամբավ, փարթամ ու անվանի էին[248]:

XVII դ. սկզբներին կրած հարվածներից մի քանի տասնամյակ հետո, երբ հաղթահարվում են ներքին դժվարությունները և Իրանի ու Թուրքիայի միջև վերականգնվում են բնականոն հարաբերությունները, Թոխաթը կրկին դառնում է նշանավոր քաղաք, բայց երբեք այլևս չի հասնում իր նախկին փառքին: Ֆրանսիացի ճանապարհորդ Հ. Բ. Տավերնիեն, Թոխաթը համարելով դեպի Արևելք երկարող տարանցիկ ճանապարհների խոշոր կայաններից մեկը, վկա-

247 Ղ. Ալիշան, *Հայապատում*, Բ, էջ 606—607:
248 Նույն տեղում, էջ 609:

յում է այն մասին, որ «այնտեղ անընդհատ կարավաններ են ժամանում Պարսկաստանից, Դիարբեքիրից, Բաղդադից, Կոստանդնուպոլսից, Սինոպից և այլ վայրերից»։ Անդրադառնալով Թոխաթից մինչև Թավրիզ ընկած երկրամասին, նա նշում է, որ ընդարձակ այս տարածությունը՝ հների կողմից Հայաստան կոչված երկիրն է, բնակեցված է գրեթե միայն քրիստոնյաներով. և պետք չէ զարմանալ,—շարունակում է նա,— որ «քաղաքների ու գյուղերի մեջ մեկ մահմեդականի դիմաց գտնվում են հիսուն հայեր»[249]։

Նկատի առնելով Թոխաթի առևտրական կյանքում հայերի գրաված դիրքը և այն հանգամանքը, որ արևելյան Եվրոպայի երկրամասերի հետ հենց նրանք էին սերտ կապեր հաստատել, դժվար չէ եզրակացնել, որ Թոխաթ ժամանող սակավաթիվ ռուս առևտրականները մեծ մասամբ հենց հայերի հետ էին առնչվում և ապրանքափոխանակություն կատարում։

Նույնը կարելի է ասել նաև Շամախի քաղաքի մասին։ XV դ. 70-ական թթ. ճամփորդելով արևելյան երկրներում, Ջ. Բարբարոն եղել է նաև Շամախիում և նշել, որ այն «շատ լավ քաղաք է, ունի չորս հազարից հինգ հազար տուն, և արտադրում են մետաքս, կտավ և ուրիշ բաներ իրենց եղանակով», գտնվում է Մեծ Հայքում և բնակիչների մեծ մասը հայ են[250]։ Ա. Կոնտարինին հայտնում է, որ «այդ քաղաքում պատրաստում են մեզ մոտ տալամանյան (իմա՛ դեյլեմյան—Լ. Խ.) անունով հայտնի մետաքսը և բացի այդ արտադրում են մետաքսե գործվածքներ, բայց մեծի մասին անպաճույճ և ոչ շատ բարձրորակ»[251]։ Ռուս վաճառական Ֆ. Կոտովը, որ երկարամյա շփումներ ունենալով հայերի հետ, լավ սովորել է մեր լեզուն, Շամախիում եղել է 1623—1624 թթ.։ Ծանոթանանք նաև նրա հաղորդած հետաքրքրական տվյալներին. «А Шамаха стоит промеж высокими горами в услоне, город каменной и посады каменные... а посад и ряды и гостиные дворы стоят за городом. А в Шемахе семь гостиных дворов все каменные... а стоят гостиные дворы промеж рядами: Тезичей, Арменьской, на том русские люди торгуют, Лязгинской, Гилянской и иные дворы, и местом велик»[252].

---

249 Les six voyages de Iean Baptiste Tavernier en Turquie, en Perse et aux Indes, t. I, Paris) 1679, էջ 11, 12, 20, 47—48։

250 Հովհ. Հակոբյան, Ուղեգրություններ, հատոր Ա, ԺԴ—ԺԶ դար, Երևան, 1932, էջ 199։

251 *И. П. Петрушевский*. Государства Азербайджана в XV в. «Сборник статей по истории Азербайджана» вып. I, Баку, 1949, էջ 195։

252 *М. В. Фехнер*, նշվ. աշխ., էջ 32 (վկայակոչում է «Хождение на Восток Ф. А. Котова в первой четверти XVII в. «Известия отдела русского языка и словесности императорской Академии Наук», 1907, т. XII, кн. 1): Տալիս ենք այստեղ մեջբերված ռուսերեն հատվածի թարգմանությունը. «Իսկ Շամախին կառուցված է բարձր լեռների միջև՝ թեքության վրա. բերդը քարից է, բնակավայրն էլ է քարից... Եվ բնակավայրը և կրպակների շարքը և կարավանատները կառուցված են բերդից դուրս։ Շամախիում կան յոթ կարավանատներ, բոլորն էլ կառուցված քարից, և գտնվում են կրպակների շարքերի միջև. կան տաճկական (тезичей), հայկական,— ուր առևտուր են անում նաև ռուսները,— լեզգիների, գիլանցիների և այլ կարավանատներ. և [քաղաքն] ընդարձակ է»։

Շամախու արհեստագործությունը հարատևել է ընդհուպ մինչև XIX դ. վերջերը. Մակար Բարխուդարյանցն այդ մասին գրել է. «Շամախում ծաղկած է մանավանդ մետաքսագործության արվեստը. ոստայններով գործում են մետաքսյա ընտիր կերպաս, վերմակների երեսներ, կանացի հագուստեղեն, զանազան գունով և մեծությամբ թաշկինակներ, շալեր և այլն» («Աղվանից երկիր և դրացիք», Թիֆլիս, 1893, էջ 159)։

Այսպիսով, ռուս վաճառականները առևտրական գործերով ժամանելով Շամախի (ավելի հարավ ընկած պարսկական քաղաքներ նրանք, որպես կանոն, չէին ճամփորդում), իջևանում էին հայկական կարավանատանը, և հենց այստեղ էլ կատարում առևտրական իրենց գործարքները, շփվելով հիմնականում իրենց հավատակից հայ վաճառականների հետ։

* * *

Ինչպես արդեն վաղուց հայտնի, այնպես էլ նոր միայն շրջանառության մեջ դրված փաստերը, լրացնելով միմյանց, հնարավորություն են ընձեռում հանգելու այն եզրակացության, որ հայերի ծանոթությունը Մոսկվայի հետ տեղի է ունեցել այդ քաղաքի պատմության հնագույն շրջանում. XIV դ. վերջերից հայերի երթևեկը Մոսկվա այնքան է ընդարձակվել ու ծավալվել, որ նրանցից շատերը մշտական բնակություն հաստատելով այնտեղ, ուշագրավ դիրքեր են գրավել Մոսկվայի մեծ իշխանության տնտեսական կյանքի տարբեր ոլորտներում։ Հասնելով այս արդյունքներին, մեզ գտնում ենք կանգնած բազմազան ու բարդ նոր հարցերի ու խնդիրների առջև, որոնցից յուրաքանչյուրի լուծման համար անհրաժեշտ են լինելու երկար տարիների համառ ջանքեր։ Կարևորագույն հարցերից է, օրինակ, հետևյալը. հայկական էթնիկական տարրի առկայությունը Մոսկվայում որևէ հետք չի՞ թողել նոր Ռուսիայի մայրաքաղաքի մշակութային կյանքի տարբեր ոլորտներում։ Պետք է նշել, սակայն, որ այս հարցին հիմնավոր պատասխանելու ժամանակը չի հասունացել. առ այսօր քիչ բան է արված հայկական ու ռուսական միջնադարյան մշակույթի տարբեր բնագավառների՝ ճարտարապետության, մանրանկարչության, կիրառական արվեստի և գրականության փոխադարձ առնչությունների ու ազդեցությունների բարդ ու դժվարին հարցերի քննարկման ուղղությամբ։ Իսկ թե այս առումով ինչ դեր է վիճակված եղել Մոսկվային, այս հարցը քննարկման նյութ իսկ չի դարձել։

Ռուսական նշանավոր միջնադարյան տարեգրություններից երկուսը տեղեկություն են պահպանել այն մասին, որ Վլադիմիր-Սուզդալյան մեծ իշխանության տիրակալ՝ նշանավոր Անդրեյ Բոգոլյուբսկին (1157—1174)՝ փառահեղ քարաշեն տաճարներ կառուցելու համար օտար երկրներից հրավիրել է մեծ թվով վարպետներ։ «Приведе ему Бог из всех земель мастеры»,— կարդում ենք Լավրենտիևյան տարեգրության մեջ, իսկ Նիկոնովյան տարեգրությունը հաղորդում է նաև, որ Բոգոլյուբսկու կողմից հրավիրվածների մեջ եղել են «мастеры всякиа»[253]։ Ո՞ր երկրներից են ժամանել այդ վարպետները. այս հարցին փորձել են պատասխան գտնել շատ մասնագետներ, և առաջ են քաշվել իրարամերժ տեսակետներ։ Շատերը Վլադիմիր-Սուզդալյան ճարտարապետական հուշարձանների վրա նկատել են ռոմանական ոճի նշանակալից հետքեր, բայց եկել են այն համոզման, որ այդ ազդեցությունը եղել է միջնորդաբար՝ Գալիցիայի և Վոլինյայի վրայով (երկրամասեր, որոնց քաղաքների զարգացման գործում հայ գաղթականները զգալի դեր են կատարել)։ Մի շարք ուսումնասիրողներ հատուկ ուշադրություն են դարձրել հուշարձանների որմնազարդերի վրա՝ արևելյան ոսկերչական իրերի և գործվածքների զարդաձև-

[253] О. Х. Халпахчьян, նշվ. աշխ., էջ 28։

վերի ուշագրավ նմանություններ գտնելով նրանց մեջ։ Սովետական անվանի պատմաբաններ Բ. Գրեկովն ու Ա. Յակուբովսկին, նկատի ունենալով հատկապես Վլադիմիր քաղաքի Դմիտրեյան և Յուրև-Պոլսկի քաղաքի Գեորգիևյան տաճարի ճարտարապետական հարդարանքը, կովկասյան արվեստի ազդեցության հետքեր են նշմարել դրանցում և այլն։ Ճարտարապետ Հ. Խալփախչյանը հանգամանորեն քննարկել է այս խնդրի շուրջ արտահայտված տեսակետները և հանգել այն եզրակացության, որ անհնարին է անտեսել արևելյան տարբեր երկրներից և, մասնավորապես, Հայաստանից ժամանած ճարտարապետների ու քարգործ վարպետների դերը Վլադիմիրո-Սուզդալյան բաժնետիրական իշխանության ճարտարապետական հնագույն հուշարձանների կառուցման և հարդարման գործում[254]։ Այս տեսակետի հիմնավորման համար գիտնականը հետաքրքրական այնպիսի զուգադրություններ է կատարել, որոնք, անտարակույս, խոստումնալից են։

Սկզբնաղբյուրներում առկա որոշ ակնարկներից կարելի է հետևցնել, որ Մոսկվա քաղաքում քարաշեն-կամարակապ առաջին բնակելի շենքեր կառուցողները «սուրոժցի» կոչվող մեծահարուստ վաճառականներն են եղել. նրանցից, մասնավորապես մեզ հայտնի են Վեսյակովները և Տարոկան (գուցե՝ Թարխա՞ն) անունով վաճառականը։ Սրանց տներն իրենց շինանյութով ու արտաքին տեսքով այնքան տարբեր էին XIV դ. Մոսկվայի մյուս շենքերից, որ գրավում էին բոլորի ուշադրությունը և տարեգրություններում գրանցվելու նյութ դառնում[255]։

1485 թ. Կրեմլում քարաշեն ապարանք ու դարպասներ է կառուցում Թագավորի գանձապետ «սուրոժցի» Վլադիմիր Խովրինի որդի Դմիտրին, որին հետևում է նրա ավագ եղբայր Իվանը։ Այս Իվան Խովրինը հայտնի էր Գոլովա մականունով (նրանից է սերում ռուսական պատմության մեջ մեծ դեր կատարած Գոլովինների ընտանիքը)[256]։

Հատուկ ուշադրության արժանի է Վասիլի III մեծ իշխանի ժամանակակից Վասիլի Դմիտրևիչ Երմոլինի գործունեությունը։ Այս «սուրոժցին» ներկայացուցիչն էր Մոսկվայի ամենափարթամ վաճառական ընտանիքներից մեկի և հայտնի էր որպես կապալառու-ճարտարապետ։ Սա է վերականգնել Կրեմլի պարիսպները և Համբարձման տաճարը. վանքերից մեկում կառուցել է քարաշեն սեղանատուն, վերականգնել Յուրև-Պոլսկի քաղաքի կործանված տաճարը (հայտնի իր արևելյան ոճավորմամբ զարդաքանդակ քարերով), և կառուցել ու վերակառուցել է բազմաթիվ այլ շինություններ[257]։

Պետք է ենթադրել, որ օտարազգի շինարար-վարպետների մասնակցությամբ առաջին հերթին կառուցվում էին փառահեղ վանքերն ու եկեղեցիները։ Եվ եթե մանրակրկիտ ուսումնասիրվեն Մոսկվայում տակավին կանգուն քարաշեն հին տաճարները, ապա, մեծ հավանականությամբ, դրանց շարքում կարող են երևան գալ հայկական միջնադարյան ճարտարապետական արվես-

254 Նույն տեղում, էջ 31—44։

255 *М. Н. Тихомиров*, նշվ. աշխ., էջ 151։ Տարոկանի տան մասին, օրինակ, տարեգրության մեջ գրված է. «Того же лета (*խմբ՝ 1471թ.*) Тарокан купець заложил себе полаты кирпичны во граде Москве, у градной стены, у Фроловских ворот» (ПСРЛ, т. VI, էջ 191)։

256 *П. В. Сытин*. История планировки..., էջ 43։

257 *М. Н. Тихомиров*. նշվ. աշխ., էջ 154։

*տին, մանավանդ՝ կառուցողական ավանդույթներին հարազատ մի շարք կառույցներ։ Մասնագետների ուշադրությանն ենք հանձնում մասնավորապես Մոսկվայի Անդրոնիկյան վանքի սուրբ Փրկչի տաճարը, կառուցված շուրջ 1427 թ.։ Ձեռքի տակ ունենք նրա գմբեթարդ ավագ խորանի և որմնասյուներից մեկի պրոֆիլավոր խարիսխի լուսանկարները, որոնք չափազանց նման են միջնադարյան հայկական տաճարների համապատասխան մասերին։*

*Այժմ մի քանի խոսք կերպարվեստի և կիրառական մյուս արվեստների բնագավառում նկատվող հայկական հետքերի մասին։*

*Երբ 1660 թ. Զաքար Շահրիմանյանը Սպահանից ժամանեց Մոսկվա ու Ալեքսեյ Միխայլովիչ ցարին մատուցեց նշանավոր ադամանդյա գահը, բանակցություններ տեղի ունեցան պետական բարձրաստիճան պաշտոնեության և մեծահարուստ այդ վաճառականի միջև՝ ջուղահայ առևտրականների գործունեության ընդարձակման հարցի շուրջ։ Ընդառաջելով թագավորի ցանկությանը, Զաքարը, իր հոր՝ Սահրադ Շահրիմանյանի և անձամբ իր անունից պարտավորվեց հայազգի արվեստագետ-վարպետներ ուղարկել Մոսկվա՝ թագավորի հրամանի ներքո աշխատելու համար.* «А великому государю всякими узорочьи и мастеровыми людьми отец ево и он (Захарий) промышлять готовы для его великого государя милости»,—*ասված է այդ բանակցությունների առթիվ կազմված փաստաթղթի մեջ*[258]*։*

*Չի անցնում մի քանի տարի, և Նոր Ջուղայից Մոսկվա է ժամանում Թանդրիվերան անունով հայ վարպետը, որը ռուսական միջավայրում ճանաչվում է Իվան կամ Բոգդան Սալթանով անուն-ազգանունով և հսկայական դեր կատարում Ռուսաստանի մայրաքաղաքի մշակութային կյանքի տարբեր մարզերում, մեծապես նպաստում ռուսական արվեստի զարգացմանը։ 1667 թ. հունիսի 15-ի թագավորական հրովարտակով նա նկարչի պաշտոնով և բարձր աշխատավարձով ընդունվում է աշխատանքի Զինապալատում։ Սալթանովի հետ աշխատանքի են անցնում նաև հայազգի մի քանի արվեստագետներ՝ Մատյուշկա և Իվաշկա Բոգդանով եղբայրները և Մարչկա Օստաֆևը։ Նրանց անուն-ազգանունները ռուսականացված են անճանաչելի աստիճանի. և եթե հատուկ ուսումնասիրություն կատարված չլիներ, մենք այսօր որևէ կռվան չէինք ունենա նրանց հայ լինելը հաստատելու համար*[259]*։ Սալթանովի այս հայազգի աշակերտներն օգնել են իրենց անվանի ուսուցչին, հետագայում կատարել ինքնուրույն աշխատանքներ։ Նրանցից շատ ավելի մեծ ճանաչում է ստացել մեծ վարպետի նշանավոր աշակերտ Լազար Իվանովիչ Բելսկի նկարիչը՝ նահապետը Բելսկի ազգանունը կրող հայազգի նկարիչների գերդաստանի, որի անդամները մեծ դեր կատարեցին XVII դ. ռուսական գեղանկարչության ձևավորման գործում*[260]*։*

*Կերպարվեստի բնագավառում հայ-ռուսական կապերի մասին պերճախոս այս փաստերը՝ վերաբերելով XVII դ. երկրորդ հիսնամյակին, դուրս են գտնվում մեր ուսումնասիրության ժամանակագրական սահմաններից։ Դրանց անդրադառնալու անհրաժեշտությունն զգացվեց նախորդ դարի որոշ երևույթներ պարզաբանելու համար։*

---

258 «Армяно-русские отношения в XVII веке». Сборник документов под редакцией проф. В. А. Парсамяна, Ереван, 1953, *էջ 26*։

259 *Нина Молева*. Иван Салтанов и его школа. *«Լրաբեր», 1977, № 10, էջ 79*։

260 *Н. М. Молева*. О художниках Бельских. *«Լրաբեր», 1974, № 8, էջ 38—52*։

Նկատված է արդեն, որ XV—XVI դդ. Մոսկվայում աշխատել է նշանավոր մի վարպետ կամ ավելի ճիշտ՝ նույն դպրոցին պատկանող արվեստագետների մի խումբ, որի ջանքերով պատրաստվել են գեղարվեստական բարձր հատկանիշներով օժտված մի շարք իրեր, նկարազարդվել են տաճարներ և այլն։ Ա. Յակոբսոնը, մանրակրկիտ ուսումնասիրություններ կատարելով ի մի է բերել այդ դպրոցին պատկանող արվեստի առարկաները, որոնց համառոտ ցանկը ներկայացնում ենք ստորև.

1. Բորովսկու Ս. Պաֆնուտիի վանքի «Թագավորական դարպասները» («Царские врата», այսպես էին կոչվում ռուսական եկեղեցիների ավագ խորանի սրբապատկերներով զարդարված գեղազարդ դռները).

2. Կիրիլո-Բելոզերսկի վանքի Ս. Սերգեյի և Ս. Հովհան Լեստվիչնիկի եկեղեցիների «Թագավորական դարպասները».

3. Նույն վանքի պանակներից մեկը.

4. Նույն վանքի Ս. Կյուրեղի սրբապատկերի դրվագյալ շրջանակը.

5. Նովգորոդի թանգարանում պահվող Բորիսի և Գլեբի սրբապատկերի դրվագյալ շրջանակը.

6. Մոսկվայի Կրեմլի Ավետման տաճարի սրբապատկերներից մեկի դրվագյալ շրջանակը.

7. Նույն տաճարի 1508 թ. որմնանկարները.

8. Զինապալատում պահվող 1499 թ. մի Ավետարանի արծաթե կազմը.

9. Իվան Ահեղի սաղավարտը և այլն։

Համոզիչ համեմատություններ կատարելով և զուգահեռներ անցկացնելով մեկ կողմից վերոհիշյալ գեղարվեստական առարկաների զարդաձևերի ու ոճի, մյուս կողմից հայկական համապատասխան հուշարձանների (մանրանկարչության, ճարտարապետական հուշարձանների, խաչքարերի, արծաթյա իրերի և այլ առարկաների) զարդաքանդակների միջև, Ա. Յակոբսոնը հանգել է այն եզրակացության, որ դրանք միևնույն ակունքներից են բխում։ Այդ բոլոր առարկաները,— նշում է նա,— դուրս են եկել միևնույն արհեստանոցից. այդ արհեստանոցը, հավանաբար, գոյություն է ունեցել Մոսկվայի Զինապալատին առընթեր, և նրա արտադրած եկեղեցական սպասքն ու առարկաները, նվիրաբերվելով տարբեր վանական ու եկեղեցական հաստատություններին՝ տարածվել են մայրաքաղաքում և նրա սահմաններից դուրս[261]։ Իսկ թե ինչպե՞ս բացատրել այդ հուշարձանների «մերձավորարևելյան» կամ «կովկասյան» հատկանիշները[262], այս հարցին որոշակի պատասխան չտալով, Ա. Յակոբսոնը զանազան ենթադրություններ է անում։ Այստեղ աշխատող ռուս վարպետները ինչ-որ ժամանակ ապրելով արևելյան երկրներում, դաստիարակվել են տեղական ավանդույթներով, յուրացրել իրենց ուսուցիչների գեղագիտական սկզբունքները։ Իսկ եթե Մոսկվայից նրանք դուրս չեն եկել. այդ դեպքում կա՛մ

[261] Հարկ է նշել, որ Ա. Յակոբսոնը իր կողմից ընտրված ու մասնագիտական խոր վերլուծությամբ՝ հայկական նյութերի հետ զուգադրած առարկաների ոճը բնորոշելու համար խուսափում է «հայկական» տերմինից. Նրան ավելի դուր են գալիս «կովկասյան», «մերձավորարևելյան» որոշակիությունից զուրկ տերմինները, որոնք գուցե և ավելի հարմար են, բայց անզոր բացահայտելու պատմամշակութային իրական եղելությունները։

[262] А. Л. Якобсон. Художественные связи московской Руси с Закавказьем и Ближним Востоком в XVI в. «Материалы и исследования по археологии СССР», № 167. «Древности московского Кремля», М., 1971, էջ 245—246։

*իրենց ձեռքի տակ ունեցել են «արևելյան երկրներում» պատրաստված համանման գեղարվեստական իրեր ու ընդօրինակել են դրանք, կա՛մ էլ օգտվել են զարդանախշերի ինչ-որ ալբոմներից*[263]։

*Քիչ է ասել, թե այս պատասխանները գոհացուցիչ չեն։ Բազմաթիվ հայ արվեստագետ-վարպետների առկայությունը Մոսկվայի Զինապալատում XVII դ. 60-ական թթ. ու հետագայում, հմուտ արհեստավորների Ռուսաստան հրավիրելու մասին ռուս պետական պաշտոնյաների հարցապնդումները, որոնք արտահայտություն են գտել հայ-ռուսական տնտեսական կապերի մասին առկա փաստաթղթերում*[264] *և, վերջապես, մեծաքանակ հայ վաճառականների ու արհեստավորների առկայությունը Մոսկվայում XV—XVI դդ. այնպիսի նախադրյալներ են, որ հնարավորություն են ընձեռում հանգելու շատ ավելի հիմնավոր այսպիսի եզրակացության. հայ արվեստագետ-վարպետներ աշխատել են Մոսկվայի Զինապալատում ոչ միայն XVII դ., այլև դրանից շատ առաջ՝ Իվան III մեծ իշխանի ժամանակներում։ Նրանց ջանքերով են պատրաստվել բազմաթիվ գեղարվեստական իրեր, որոնց մի մասն արդեն դրված են գիտական շրջանառության մեջ, իսկ շատերն էլ, թերևս, սպասում են իրենց հայտնաբերողներին։*

*Այդ հմուտ արվեստագետ-վարպետների արտադրած իրերի շքեղ զարդապատկերները սիրվել ու լայնորեն տարածվել են Մոսկովյան պետության սահմաններում, թարմ շունչ հաղորդել տեղական արվեստին, դարձել մոդայիկ և օգտագործվել ինչպես փայտափորագրության և ոսկերչության, այնպես էլ ճարտարապետության և, նույնիսկ, գրատպության ասպարեզում*[265]։

* * *

*Ի՞նչ հուշ-հիշատակներ են պահպանվել Մոսկվա քաղաքի և Մոսկվայի հայ գաղթօջախի մասին միջնադարյան հայկական ու ռուսական գեղարվեստական ստեղծագործություններում։ Այս հարցին մասամբ պատասխան է տրված տարիներ առաջ, երբ Ա. Մնացականյանի ջանքերով գիտական շրջանառության մեջ դրվեց բազմաթիվ միջնադարյան ձեռագրերով ավանդված և տարբեր խմբագրությունների ենթարկված հայկական այն պոեմը, որի մեջ Մոսկվան հիշատակված է աշխարհի շքեղագույն ու նշանավոր քաղաքների շարքում՝ որպես*

---

263 *Նույն տեղում, էջ 246։*

264 *Զաքար Շահրիմանյանը 1660 թ. պատասխանելով ռուս պաշտոնյաների հարցումներին, նրանց ասել է նաև հետևյալը.* «А мастеровых де всяких людей в шахове области много и он де (Захарий) к великому государю в московское государство призывать учнет». *Իսկ նույն Զաքարի 1666 թ. Ալեքսեյ Միխայլովիչ ցարին ուղղած գրության մեջ ասված է, որ ցարը ծանոթացած լինելով խորհրդավոր ընթրիքը պատկերող մի փորագրության, պահանջել է Մոսկվա ուղարկել այդ պատկերը պատրաստող արվեստագետին* «Армяно-русские отношения в XVII в.», *էջ 26, 41)։*

*«Էստի յառաջ փոքր ծառէդ մին պղնձէ թանուքի վերայ ասագ խինգ շարաթ օրէն տնօրինականըն քաշած մեծ թագաւորին գլուխ ինք ուզել, շատաղամ էր արարել, նորա շինողն ուզեցել էր. էն քարխանումն որ շինվել էր մի զապիլ ուստայ կէր, անունն Բուղտան, որ նորայ հունարն ամենու վերայ առաւել էր, ուղարկեցինք բրխտոռաշէն Մօսկովն, զոն մեծ թագաւորին ղուլաղն տեղն կատարեն» (նույն տեղում, էջ 41)։*

265 А. Л. Якобсон, *նշվ. աշխ., էջ 247։*

ամենափառավորն ու մեծագինը[266]։ Պոեմը սիրային բովանդակություն ունի. նվիրված է մի «գյոզալի» (գեղեցկուհու) բարեմասնությունների գովերգությանը. այնպիսի հմայք ունի այդ գեղեցկուհին, որ նրա երեստեսնուքի համար փեսացուն շռայլորեն «նվիրաբերում» է Սելանիկն ու Ատրնան, աչքերի համար՝ Սկյուտարն ու Ղալաթիան, քաղցրիկ զրույցի համար Բաղդադն ու Բասրան և այլն։ Հիշատակվում են նաև Թոխաթ, Էրզրում, Գյանջա, Կաֆա, Վենետիկ քաղաքները, Մըսր (Եգիպտոս), Շամ (Սիրիա), Հնդուստան, Սպանիա երկրները և այլն, այսինքն գլխավոր այն վաճառաշահ կենտրոնները, որոնք մեծ դեր էին կատարում միջազգային առևտրի մեջ մինչև աշխարհագրական նոր հայտնագործությունները։

Ինչպես ասվեց, Մոսկվան կենտրոնական տեղ է գրավում վերոհիշյալ քաղաքների ու երկրների շարքում. երգիչը շեշտված մեծարանքով է հիշատակում այդ քաղաքի անունը[267]։

Միանգամայն իրավացի է Աս. Մնացականյանը, երբ բավարար փաստեր մեջբերելով հանգում է այն եզրակացության, որ պոեմը ստեղծված պետք է լինի XIV—XV դդ.։ Եվ պետք չէ տարակուսել, որ այն հորինվել է այնպիսի խոշոր հայկական կենտրոններից մեկում, ուր գոյություն ուներ միջնադարյան Հայաստանի խոշոր քաղաքներում և նշանավոր գաղթավայրերում վկայված «Կարիճվորաց եղբայրություն» կոչվող կազմակերպություններից մեկը։ Պոեմի հնագույն փոփոխակներում պահպանված են այսպիսի տողեր.

Մանկունք, մի մեղադրէք
Սէրն արաւ գխս տիւանայ...
Աժէ, ինչ տուար, եղբարք,
Կուղելին ինկի գին չկայ.

«Մանկունք», «եղբարք» կոչվող հասցեատերերը հիշատակված են նաև մի շարք հայրեններում։ Կոստանդին Երզնկացին ևս իր բանքերի մի մասը հորինել է քաղաքարնակ «եղբայրների» հոգևոր պահանջները բավարարելու համար[268]։ Նկատի ունենալով այս հանգամանքը, կարելի է հանգել այն եզրա-

---

266 Աս. Մնացականյան, *Մոսկվան միջնադարյան հայկական մի պոեմում*, «Տեղեկագիր», 1948, № 3, էջ 49—64։

267 Նույն տեղում, էջ 53։ Աս. Մնացականյանը ցույց է տվել նաև, որ այս պոեմը զգալի ազդեցություն է գործել հայ մի շարք բանաստեղծների, որոնց թվում նաև Նաղաշ Հովնաթանի վրա. վերջինս ունի այսպիսի տողեր.

Քաղաք եմ Խութայի Մոսկով,
Ներքս տարար անուշ խոսքով։

«Ըստ այս տողերի,— գրել է Մնացականյանը,— Մոսկվան գտնվում է Խութայում—Չինաստանում», ուստի միջնադարյան գուսաններն ու հորինողները, մեծ մասամբ պատկերացում էլ չեն ունեցել իրենց գործածած վայրերի ուր գտնվելու մասին (տե՛ս նշվ. աշխ., էջ 50—51)։

Կարծում ենք, սակայն, որ Խութայի-Մոսկով ասելով՝ Նաղաշ Հովնաթանը, մի բանաստեղծ, որ ապրել է հայ վաճառականների միջավայրում ու ստեղծագործել նրանց համար, նկատի է ունեցել Մոսկվայի առևտրական կենտրոն Կիտայ-Գորոդը, և բնավ էլ չի կարծել, թե Մոսկվան գտնվում է Չինաստանում։

268 Լ. Խաչիկյան, *Երզնկայում 1280 թ. կազմակերպված «եղբայրությունը»*, «Տեղեկագիր», 1951, № 12, էջ 84։

կացության, որ «Թագուհի մի ես տեսայ» սկսվածքով խնդրո առարկա պոեմը նույնպես ստեղծվել է հայկական վաճառաշահ կենտրոններից մեկում (թերևս հենց Կաֆա քաղաքում), որի բնակիչները տնտեսական սերտ կապեր են ունեցել Մոսկվայի հետ։

Այժմ անդրադառնանք միջնադարյան ռուս գրականությանը։

Մոսկվայում ստեղծված գրական հուշարձանների շարքում որոշակի տեղ է գրավում «Պատմություն Վրաց թագուհի Դինարի մասին, ինչպես հաղթեց Պարսից թագավորին» («Повесть о грузинской царице Динаре, како победи персского царя») խորագրով ստեղծագործությունը։ Նրա ստեղծման հանգամանքների ու ժամանակի մասին ռուս և վրաց գրականության պատմաբանները տարբեր կարծիքներ են հայտնել։ Արդեն հաղթահարված պետք է համարել անհիմն այն ենթադրությունը, թե ռուսական այս գրվածքը՝ թարգմանություն է Թամար թագուհու գործունեությանը նվիրված բյուզանդական չափածո մի ստեղծագործության[269]։ Հունարեն լեզվով այդպիսի մի գրվածքի երբեմնի գոյության մասին որևէ փաստ հայտնի չէ. իսկ Թամար թագուհին այնպիսի հռչակավոր գործիչ է եղել, որ նրա անունը չէր կարող դուրս նետվել ու փոխարինվել իրենից դարեր առաջ ապրած և շատ համեստ պատմական դեր կատարած Դինար թագուհու անունով։

Ուսումնասիրողներից մի մասի կարծիքով (Ն. Կ. Գուդզի, Կ. Վ. Բազիլևիչ) «Պատմությունը» գրվել է Մոսկվայում XV դ. վերջին քսանհինգամյակի ընթացքում, իսկ ըստ ուրիշների (Մ. Սպերանսկի, Յա. Ցինցաձե)՝ XVI դ. կեսերին[270]։ Մեզ համար էական նշանակություն չունի, թե այս տեսակետներից որն է ի վերջո ճիշտ համարվելու։ XV դ. վերջերին և XVI-ի առաջին հիսնամյակի ընթացքում ոչ միայն ավելի լայն ծավալ էին ստանում տնտեսական կապերը Մոսկվայի ու Վրաստանի միջև, այլև ծայր էին առել դիվանագիտական բանակցություններ. վրաց գահակալների կողմից Մոսկվա առաքվող բանագնացները (որոնց շարքում գրեթե միշտ լինում էին հայազգի գործիչներ) Մոսկվայի մեծ իշխանների օգնությունն էին խնդրում թուրքական և իրանական զավթիչների դեմ հաջող պայքար մղելու համար։

Ուսումնասիրողներն իրավացիորեն նշել են, որ այդպիսի բանակցությունների ժամանակ վրաստանցի դիվանագետներն առիթը բաց չէին թողնելու շեշտելու համար վրացիների և ռուսների դավանակից-քրիստոնյաներ լինելու հանգամանքը։ Նրանք, իրենց երկրի ու եկեղեցու հեղինակությունը բարձրացնելու նպատակով կարող էին նաև նշել՝ հենվելով «Քարթլիս ցխովրեբայի» վրա, որ իրենց ժողովուրդը Քրիստոսի ուսմունքին հաղորդակից է դարձել անմիջապես Աստվածամոր քարոզչության շնորհիվ։ Կարող էին պարծենալ նաև սուրբ Նունեով և վրաց հին եկեղեցու այլ սրբություններով։ Այսպիսի դատողությունները շարունակելով, ոմանք հնարավոր են համարել «Դինար թագուհու պատմության» հորինման հանգամանքները նույնպես առնչել վրաց դիվանագետների և ռուսական պետական պաշտոնյաների միջև տեղի ունեցած բանակցություններին։ Նրանց կարծիքով վրացի բանագնացներն անբավարար են նկատել վերոհիշյալ «փաստերը» և ռուսներին պատմել են նաև Դինարի

269 Այս տեսակետը տեղ է գտել նույնիսկ «Վրաց պատմության» դպրոցական դասագրքում («История Грузии», ч. I, Тбилиси, 1946, էջ 237։

270 *Л. С. Шепелева*. Культурные связи Грузии с Россией в X—XVII веках. «Труды отдела древнерусской литературы», IX, М.—Л., 1953, էջ 310—311։

պատմությունը՝ «ուղղափառության հաղթանակի համար Վրաստանի վաստակը մի վերջին անգամ ընդգծելու նպատակով»[271]։

Եվ ահա այդ ճանապարհով «արևելյան Վրաստանի» շրջաններից մեկի տիրակալ իշխանի կին Դինարը՝ ճանաչվել է ռուսական միջավայրում և գրական մի ուշագրավ ստեղծագործության հերոսուհի դարձել[272]։

Մենք չենք կարող բավարարվել այսպիսի բացատրությամբ։

IX դ. կեսերին արաբական լուծը թոթափելուց հետո՝ Բագրատունյաց Հայաստանը մի քանի տասնամյակ միայն գոյություն ունեցավ որպես միասնական պետություն։ Ֆեոդալական հարաբերությունների զարգացման հետևանքով երկիրը շուտով մասնատվեց մի շարք մանր-կիսանկախ թագավորությունների. Վասպուրականը, Սյունիքը, Լոռին, Կարսը և այլ նահանգներ՝ անջատվեցին Բագրատունյաց կենտրոնական իշխանությունից։ Այդպիսի մի իշխանություն էլ ստեղծվեց պատմական Հայաստանի Արցախ նահանգում, որը հայտնի է սկզբնաղբյուրներում Աղվանից թագավորություն անունով։ Այս իշխանության կազմի մեջ էր մտնում նաև Կուր գետից հյուսիս գտնվող պատմական Կամբեջանի շրջանը, ուր ապրում էին նաև բազմահազար հայեր, որոնք դավանանքով լուսավորչական էին։ Հայկական փոքր այս թագավորության նշանավոր գահակալը եղավ Համամ Արևելցի անվանի մատենագիրն ու բանաստեղծը, որն իր արժանի տեղն է գրավել հայ գրականության պատմության մեջ։ Նրան հաջորդեց Ատրներսեհը։ Վերջինս ամուսնացած էր Վրաց իշխանաց իշխան Գուրգենի քրոջ՝ Դինարի հետ. այս թագուհին X դ. կեսերին, իր Իշխանիկ անունով որդու հետ միասին, եռանդուն գործունեություն ծավալեց և հաջողություններ ունեցավ Հերեթ-Կախեթի հայերին քաղկեդոնական դարձնելու գործում[273]։ Ահա այս Դինարի գործունեության որոշ դրվագներ են, որ գունազարդվելով հիմք են հանդիսացել նկարագրվող դեպքերից կես հազարամյակ հետո հյուսված ռուսական «Պատմության» համար։

Այդ ստեղծագործության հորինման հնարավոր դրդապատճառները բացահայտելու նպատակով պատասխան պետք է գտնել հետևյալ հարցին. հասարակական և էթնիկական ի՞նչ շերտեր կային Մոսկվայում XVI դ. կեսերին, որոնց համար օգտակար կարող էին լինել մի հեռավոր երկրամասի հայ ազգաբնակչության դարեր առաջ տեղի ունեցած դավանափոխության և ուղղափառ եկեղեցուն հարելու մասին հին պատմությունները։ Ուրիշ առիթով նշել ենք արդեն, որ XIV դ. վերջերին և հետագայում, ռուսական եկեղեցու բարձրաստիճան ղեկավարներից շատերը օտարադավան հայերի նկատմամբ որդեգրել էին անհանդուրժողական կեցվածք։ Կրոնական անհանդուրժողականությունը երբեմն այնպիսի չափերի էր հասնում, որ ոմանք ստիպված էին լինում ընդունել ուղղափառություն, խզելով իրենց կապերը մայր եկեղեցուց։

---

271 Նույն տեղում, էջ 309։

272 Նույն տեղում։

273 Այս հարցի մասին հանգամանորեն խոսում է Ա. Շ. Մնացականյանը «Աղվանից աշխարհի գրականության հարցի շուրջը» (Երևան, 1966) արժեքավոր աշխատության մեջ (տե՛ս էջ 204—213)։ Ուշագրավ է, որ վերջերս հայտնաբերվեցին Աղվանից մի շարք իշխանների և այս Դինար իշխանուհու տապանաքարերը Ղափանի շրջանում գտնվող Վահանավանքի շրջափակում (Գ. Գրիգորյան. Վահանավանքի պեղումների նախնական արդյունքները. «Լրաբեր», 1970, № 10)։

«Դինար թագուհու պատմության» հորինման շրջանում հաճախացել էր վրաստանցի հայերի երթևեկը Մոսկվա։ Նրանցից շատերը մշտական բնակություն էին հաստատում այստեղ և, բնականաբար, հնարավոր ամեն ինչ անում կյանքի բարենպաստ ու բնականոն պայմաններ ստեղծելու իրենց և հարազատների համար։ Դավանաբանական անհանդուրժողականությանը դիմագրավելու միջոցներից էին նաև անցյալի հիշատակները. դարեր առաջ ապրած մի թագուհու ջանքերով հազարավոր հայեր ընդունել էին ուղղափառ եկեղեցու դավանանքը, այսինքն հրաժարվել էին «հայկական հերձվածից», դարձել «իսկական», «ուղղափառ» քրիստոնյաներ։ Այդ հայերի հեռավոր հետնորդները նոր Ռուսիայի մայրաքաղաքում վերարծարծելով հին այս պատմությունը, հույս կարող էին ունենալ ավելի բարեհամբույր վերաբերմունքի։ Իսկ պալատական պաշտոնեության շրջանակներում կային արդեն գրագետ մարդիկ, որոնք ի շահ Ռուսաստանի տնտեսական ու քաղաքական կապերի ընդարձակման, ոչ միայն ունկնդրում էին այդպիսի պատմությունները, այլև գրի առնում, տարածում՝ դարձնելով միջոց հասարակական կարծիքի մշակման։

Պետք է հուսալ, որ հայ-ռուսական հնամենի մշակութային առնչությունների մասին ի մի բերված այս տվյալները հետագայում բազմապատկվելու են ճարտարապետական հուշարձանների, գրական ժառանգության ու դիվանական նյութերի խորազնին ուսումնասիրության ճանապարհով։

* * *

Հետագա ուսումնասիրությունների ժամանակ պետք չէ անտեսվեն նաև ռուսական միջնադարյան բանահյուսության ընձեռած նյութերը, մանավորապես վիպական գրականության գլուխ-գործոցներ հանդիսացող բիլինաները։ Նկատված իրողություն է արդեն, որ բիլինաների մի շարք ճյուղեր, ի մասնավորի Չուրիլա Պլենկովիչի, մեծահարուստ վաճառական Սադկոյի, վաճառականի որդի Իվանի մասին պահպանված երգերի մեջ՝ արտացոլվել են քաղաքային կյանքի շատ հետաքրքրական երևույթներ։ Սադկոյի մասին բիլինայի մեջ, օրինակ, հենց վիպական հերոսի անունից ասված է հետևյալը.

Что де я гулял по Волге двенадцать лет,
Со вершины знаю и до устья ее,
А и нижнея царства Астраханскова.

կամ՝

Я сам, Садко, знаю—ведаю:
Бегаю по морю двенадцать лет,
Тому царю заморскому
Не платил я дани—пошлины,
И во то сине море Хвалинское
Хлеба с солью не опускал[274].

Ըստ այդմ Սադկոն պատկանում էր ռուսական այն վաճառականների դասին, ովքեր Վոլգայի և Կասպից ծովի վրայով աշխույժ առևտուր էին անում

---

[274] Древние российские стихотворения, собранные Киршею Даниловым, М.—Л., 1958, էջ 185, 231։

Իրանի ու Անդրկովկասյան երկրների հետ։ Նախորդ էջերում քանիցս անհրաժեշտություն է առաջացել նշելու, որ միջազգային նշանակություն ունեցող Վոլգ-Կասպյան մայրուղին ոչ միայն դարեր շարունակ ծանոթ է եղել հայ վաճառականներին, այլ եղել են ժամանակներ, երբ նրանք գրավել են այդ ճանապարհով կատարվող արտաքին առևտրի հրամանատարական դիրքերը։ Պարզ է, ուրեմն, որ բիլինայի ծանոթ հերոսը՝ «Մեծահարուստ վաճառական Սադկոն» իր տասներկուամյա թափառումների ժամանակ՝ բազմիցս հանդիպած պետք է լիներ հայ վաճառականների և համագործակցեր նրանցից շատերի հետ՝ նյութական անսպառ միջոցների տեր դառնալու համար։

Մոսկվայի տնտեսական զարգացման համար կարևորագույն նշանակություն ունեցող մյուս զարկերակի՝ Դնեպրյան մայրուղու հետ է կապված բիլինաների վաճառական հերոսներից Չուրիլա Պլենկովիչը։ Սրա հայր Պլենկոն, բիլինայի մեջ ուղղակի կոչված է «սուրոժցի» («старый Пленка Сароженин»)։

Ակադ. Ա. Ն. Վեսելովսկին, որ 22 ամբողջական պատումների համադրությամբ հանգամանորեն ուսումնասիրել է Չուրիլայի մասին բիլինան[275], անդրադարձել է նաև գլխավոր հերոսների անուններին։ Չուրիլա անունը Կիրիլ-Կյուրեղ անվան ժողովրդական փոփոխակն է, իսկ նրա հոր՝ «սուրոժցի» Պլենկոյի անունը Վեսելովսկին, անշուշտ, նկատի ունենալով այն իրողությունը, որ Ղրիմի Թերակղզու վաճառաշահ ափերը XIII—XIV դդ. գտնվում էին իտալացիների (Ջենովայի և Վենետիկի) տիրապետության տակ, արտածում է «ֆռանկ» (եվրոպացի, իտալացի) բառի հետ և, այդպիսով, իտալական ծագում է վերագրում բիլինաների այս հերոսներին։ Հարկ չկա այստեղ նորից անդրադառնալու «սուրոժցի» ,կոչվող վաճառականների ազգային պատկանելիության մասին նախկինում արտահայտած տեսակետներին, մանավանդ, որ անձնանունների բռնազբոսիկ այսպիսի բացատրությունները արդեն իսկ կասկածների տեղիք են տվել ռուսական բանասիրության մեջ[276]։

Չուրիլային վերաբերող բիլինայի մի այլ փոփոխակի մեջ, որ վերամշակված պետք է լինի ուշ ժամանակներում, «սուրոժցիների» մասին գտնում ենք ուշագրավ այսպիսի տողեր.

Как жил на Руси
Суровец—молодец,
Суровец—богатырь, он Суроженин,
По роду города Суздаля,
Сын отца—гостя богатого[277].

Այստեղ նրանք առնչվում են Սուզդալի հետ՝ միջնադարյան Ռուսաստանի նշանավոր այն քաղաքի, որը Վլադիմիր-Սուզդալյան իշխանության քաղա-

275 *А. Н. Веселовский*. Южно-русские былины, V, Богатыри-сурожцы. Суровец Суздалец и Чурила Пленкович. «Сборник, отделения русского языка и словесности императорской Академии Наук», том XXXVI, № 3, СПб., 1884.

276 *А. И. Соболевский*. Заметки о собственных именах в великорусских былинах. «Живая Старина», вып. II, 1890, *էջ 96*։

277 Летописи русской литературы и древности. изд. Н. Тихонравов, IV, М., 1862, *էջ 12—14*։

*վաճառման շրջանում միջազգային իր կապերով բացառիկ դիրք գրաված լինելով՝ անտարակույս ծանոթ էր «սուրոժցի» վաճառականներին*[278]*։*

*Չուրիլա Պլենկովիչը ռուսական էպոսի հանրաճանաչ դեմքերից է։ Ամբողջովին նրան է նվիրված երկու զրույց. դրանցից բացի՝ նա հիշատակված է և այլ բիլինաներում։ Առաջին զրույցի մեջ Չուրիլան ներկայացված է որպես մարտական ջոկատի պետ. այնքան բազմաթիվ են նրա կտրիճները, որ Կիևի իշխանը տեսնելով նրանց բազմությունը, կարծում է, թե ժամանել է Ոսկե Հորդայի խանը կամ որևէ երկրից հզոր դեսպան։*

Едет ко мне король из Орды
Или какой грозен посол.

*Զրույցի մեջ հատուկ տեղ են գրավում Չուրիլայի ու նրա «սուրոժցի» հոր առանձնատան արդուզարդի, շքեղության և նրանց ունեցած մեծաքանակ թանկարժեք ապրանքների մասին պերճախոս տողերը։ Ահա Չուրիլան իջնում է խորունկ իր նկուղները, բացում է դուռը ոսկե բանալիով, և գանձեր է հանում՝ Վլադիմիր իշխանին մատուցելու համար։*

Взял золоту казну
Сорок сороков черных соболей,
Другую сорок печерских лисиц,
И брал же камку белокрушету.
А цена камке сто тысячей,
Принес он к князю Владимеру.

*Չուրիլան հրավիրվում է արքունիք։ Ապրաքսեա իշխանուհին հափշտակվում է Չուրիլայի գեղեցկությամբ և խնդրում ամուսնուց նրան անկողնապետի պաշտոնին կոչել։ Վլադիմիր իշխանը զայրանում է այդ առաջարկից և դարձընում է նրան գզիր* (зазыватель)։

*Պերճորեն զարդարված Չուրիլան զբոսնում է Կիևի փողոցներում՝ իր գեղեցկությամբ գրավում կանանց ուշադրությունը։*

Загляделись на Чуриву все люди—те:
Где девушки глядят—заборы трешшат,
Где молодушки глядят—лишь оконенки звенят.

278 *Չի բացառված, սակայն, որ Սուգդայի հիշատակությունն այստեղ հետագայում մի հավելում է, զուրկ իրական ու պատմական առնչությունների հիմքից։ Այս կապակցությամբ ակադ. Ա. Վեսելովսկին գրել է.* «Суровец наших былин не что иное, как дублет к Сурожанину; Суровец-Суздалец, очевидно, тавтология, вторая часть которой была искажена или подновлена по созвучию с Суздалем, более известным в северном периоде нашего эпоса: Суздалец вместо Судалец, Согдалец; в одной песне он—«богатого гостя заморенин сын» (*այլուր կոչված են նաև* купцы заморяне вавилойяне—Լ. Խ.), что едва ли идет к Суздалю, но быть может, не относится непосредственно и к Сурожу» (*А. Н. Веселовский, նշվ. աշխ., էջ 70—71։*

Երկրորդ գրույցը հիմնականում նվիրված է Չուրիլայի և մի ծեր վաճառականի՝ Բերմյատա Վասիլիչի[279] երիտասարդ կնոջ՝ գեղեցկուհի Կատերինայի սիրավեպին։ Որոշ պատումներում այս գրույցը ողբերգական վախճան է ունենում. խանդոտ ամուսինը սպանում է Չուրիլային։

Բիլինայի մի ուրիշ պատումի մեջ Չուրիլան (Шурилушка Щапленкович) ապրել ու գործել է ոչ թե Վլադիմիր իշխանի ժամանակներում, այլ ծառայել է Լիտվայի թագավորին, այսինքն՝ գրույցն աղերսվել է պատմական այն ժամանակաշրջանին, երբ Կիևը գտնվում էր Լիտվայի մեծ իշխանության տիրապետության տակ (1362—1471 թթ.) և երբ կիևահայ գաղութն ապրում էր իր զարգացման բարձրագույն շրջանը։ Այս պատումի համաձայն Չուրիլայի սիրավեպի կին հերոսուհին՝ Լիտվայի թագավորի դուստրն է. Չուրիլան պարծենում է իր սիրային կապով արքայադստեր հետ, բռնվում է հանցանքի մեջ և պատժվում[280]։

Չուրիլայի հոր՝ Պլենկոյի «սուրոժցի» վաճառական լինելու հանգամանքն ինքնին մի կռվան է բիլինաների այս հերոսին Կիևի հայկական գաղթօջախի և Կիևում բնակություն հաստատած «սուրոժցի» հայ վաճառականների հետ շաղկապելու համար։ Թվում է, սակայն, որ կան ավելի հիմնավոր հիմքեր այսպիսի ենթադրության։

Ասացինք արդեն, որ Չուրիլան առաջին գրույցի մեջ ասպարեզ է իջնում որպես մեծահարուստ վաճառական, բայց միաժամանակ իր հրամանի ներքո ունի քաջ երիտասարդներից բաղկացած մարտական մի ջոկատ։ Նախորդ էջերում մենք արդեն անդրադարձել ենք Սիմեոն Լեհացու «Ուղեգրության» այն նշանավոր տողերին, որոնց համաձայն կիևահայությունը, գաղթօջախի շեն տարիներին, թշնամու դեմ կռվի է հանել 500 արի դյուցազունների («յորժամ սէֆէր լինէր, հինգհարիւր հոգի կելէր հայոց ի պատերազմ եարար պահատուրնի»)[281]։ Նրանք, անշուշտ, խաղաղ օրերին, իրենց հրամանատարների գլխավորությամբ, երբեմն դուրս էին գալիս քաղաքամերձ տարածությունները, զբաղվում որսորդությամբ, զինավարժություններով, կերուխումով։ Պատմական հենց այսպիսի իրողությունների հիշատակներ են պահպանված Չուրիլա Պլենկովիչի բիլինայի մեջ։

---

279 Այս վաճառականի անունը բիլինայի տարբեր պատումներում տարբեր տառադարձությամբ է ներկայացված՝ Бермята, Пермяна, Бурмяна, Вельма, Берма, Ерма և այլն (տե՛ս *А. Н. Василевский*, նշվ. աշխ., էջ 103)։

Հետևելով Ա. Վեսելովսկու օրինակին, որը Պլենկո անունը առնչելով «ֆռանկ» էթնիկական անվան հետ, Չուրիլային և նրա հորը իտալական ծագում է վերագրում, մենք էլ կարող էինք այս վաճառականի անվան փոփոխակների հիման վրա վերականգնել նրա նախկին ձևը «Вермяна» (ուկրաիներեն՝ «հայ») ձևով, և նրան հայկական ծագում վերագրել։ Սակայն կարծում ենք, որ անձնանունների այս կարգի մեկնաբանությունների պատմական հիմքերը շատ խախուտ են։

Ըստ Ա. Սոբոլևսկու (տե՛ս «Живая старина», вып. II, էջ 103) այս վաճառականի անվան նախնական ձևը պետք է եղած լինի Բերնյատա՝ Բերն անվան փաղաքշական փոփոխակը։

280 И услыхали тут короля да литовского,
А слуги ведь да и верные,
Да сковали-то ему да ножки резвыи,
И завесили ему да очи ясныи,
И хочут вести на поле Куликовое.

(*А. Ф. Гильфердинг*. Онежские былины, II, М.—Л., 1950, էջ 359—364)։

281 «Սիմէոնի դպրի Լեհացւոյ ուղեգրութիւնն», էջ 347—348։

Երբ Վլադիմիր իշխանը Պլենկոյի շքեղ տանը հյուրընկալվելիս պատուհանից տեսնելով տանը մոտեցող մեծ ջոկատը, զարմանքով հարցնում է, թե ովքե՞ր են նրանք. «սուրոժցի» Պլենկոն հանգստացնում է իշխանին, ասելով. նրանք թշնամիներ չեն, այլ իր որդի Չուրիլայի ջոկատն է.

Изволь ты, осударь, Владимир—князь со княгинею
И со всеми своими князи и бояры кушати!
Что-де едет не король из Орды
И не грозен посол,
Едет-те дружина хоробрая сына моего
Молода Чурила сына Пленковича[282].

Չուրիլայի կերպարի մյուս կարևոր կողմը՝ պճնասիրություն, կնամեծարություն, թեթև ժամանցի հակամետություն, նույնպես բնորոշ է միջնադարյան քաղաքների առևտրա-արհեստագործական դասի երիտասարդ ներկայացուցիչների համար։

Ինչ վերաբերում է կիևահայությանը կամ Կիև այցելող հայ վաճառականներին, ապա այդ հանգամանքը զարմանալի որոշակիությամբ արտացոլվել է 1494 թ. իշխանական մի հրովարտակի մեջ, որով դրամական տուգանք է սահմանվել այն հայ վաճառականների համար, ովքեր, խախտելով քաղաքի սովորույթները, կապեր կհաստատեին միայնակ կանանց հետ, այլ խոսքով՝ կբռնվեին անբարոյական արարքների մեջ[283]։

Տասնյակ այդպիսի դեպքեր պետք է եղած լինեին՝ նման հրովարտակի անհրաժեշտությունը նախապատրաստելու համար։ Եվ Չուրիլա Պլենկովիչի պարագան (ծեր վաճառականի երիտասարդ կնոջ կամ Լիտվայի իշխանի դստեր հետ սիրային կապեր ունենալը, իշխանուհի Ապրաքսեևնային դուր գալը և այլն), ըստ երևույթին հեռավոր մի վերհուշ է պատմական ինչ-որ իրողության, որն ավարտվել է «սուրոժցի» երիտասարդ վաճառականի սպանությամբ։

Այսպիսով կարելի է եզրափակել Հին Մոսկվայի հայկական գաղութի պատմության մասին մեր ուսումնասիրության արդյունքները՝ արձանագրելով, որ «սուրոժցի» կոչվող հայ վաճառականներն այնքան նշանակալից դեր են կատարել Մոսկվայի ու Կիևի տնտեսական ու մշակութային կյանքի տարբեր ոլորտներում, որ ժողովրդական երգիչները հորինել են նույնիսկ նրանց կեցության ու բնավորության որոշ գծերով օժտված հավաքական կերպարներ, որոնք իրենց պատվավոր տեղն են գրավել ռուսական միջնադարյան վիպական լավագույն ստեղծագործությունները հանդիսացող բիլինաների մեջ։

* * *

Աշխարհագրական մեծ գյուտերը, որ ծայր առան XV դ. վերջին տարիներին և հաջորդ դարի ընթացքում հեղափոխիչ դեր կատարեցին ողջ մարդկության համար, իրենց անմիջական անդրադարձն ունեցան նաև Մոսկովյան պետության տնտեսական կյանքի վրա։

---

282 Древние российские стихотворения, էջ 114։

283 Акты, относящиеся к истории западной России, т. I, СПб, 1848, էջ 194, 195. Հմմ. Д. М. Мышко, նշվ. աշխ., էջ 118։

Միջազգային հաղորդակցության դարավոր ավանդույթներ ունեցող մայրուղիները կամ կորցրեցին իրենց երբեմնի դերը՝ դարձան տեղական նշանակություն ունեցող ճանապարհներ, կամ էլ նոր ոգի ու բովանդակություն ստանալով՝ դուրս եկան հին ու անձուկ սահմաններից, ձգվեցին դեպի նոր աշխարհամասեր։

«Սուրոժցի» վաճառականների կենսական զարկերակը լիարյուն սնունդ էր ստանում Ղրիմի ակունքներից. իսկ Ղրիմի վրայով անցնող ճանապարհներն էին հենց, որ կորցրեցին իրենց վիթխարի միջազգային նշանակությունը, ուստի և կարևոր դերը Մոսկվայի տնտեսական կյանքի զարգացման համար։ Սակայն խնդիրը միայն ճանապարհների փոփոխության հետ չէր առնչվում։ Փոփոխվել էին ժամանակներն ըստ ամենայնի։ Բաժնետիրական ժամանակաշրջանի ծնունդ հանդիսացող «սուրոժցի» վաճառականը, որը ինքնուրույն ձեռներեցությամբ, հաղթահարելով ֆեոդալական մասնատվածության արդյունք հանդիսացող հազար ու մեկ սահմանափակություններ, ամեն քայլափոխի զանազան մաքսատուրքեր վճարելով՝ Մոսկվա էր հասցնում մի քանի բեռ արևելյան ապրանքներ ու դրա դիմաց օտար երկրներ արտածում Ռուսաստանի արտաքին առևտրի նյութերը, այլևս չէր կարող քայլ պահել ժամանակի հետ։ XVI դ. կեսերից Հյուսիսային և Սպիտակ ծովերի վրայով Ռուսաստան էին ներթափանցել արդեն անգլիացի վաճառականները, որոնք փորձում էին իրենց տնտեսական գերիշխանությունը հաստատել Կասպ-Վոլգյան հին մայրուղու վրա, մեկ ծայրից մյուսը՝ Իրանից սկսած մինչև Հյուսիսային Եվրոպայի երկրները։ Այս ճանապարհի հին բաժնետերերը՝ հայ վաճառականները, կամ պետք է դուրս գային ասպարեզից, կամ էլ համառ պայքար մղելով իրենց մրցակիցների դեմ, պետք է բարձրանային նրանց աստիճանին՝ ընդարձակեին իրենց գործունեության շրջանակները, օգտվեին վարկի նոր եղանակներից, շաղկապեին առևտուրը արտադրական գործունեության հետ և այլն։

Նոր ժամանակի առաջադրած այդ խնդիրները հաջողությամբ լուծեցին «սուրոժցի» կոչվող հայ վաճառականներին հաջորդած «ջուղայեցի» հայ վաճառականները։ 1667 թ. մայիսի 31-ին, ջուղահայ առևտրական բուրժուազիայի լիազոր ներկայացուցիչների և Մոսկովյան պետական պաշտոնյաների մեկ տարուց ավելի տևած բանակցությունները պսակվեցին հաջողությամբ։ Կնքվեց նշանավոր այն պայմանագիրը, որի զորությամբ ջուղահայ վաճառականները (հետագայում այն տարածվեց նաև այլ վայրերից Ռուսաստան այցելող հայ վաճառականների վրա) իրավունք էին ստանում արտոնյալ պայմաններով Ռուսաստանում առևտուր անելու, Ռուսաստանի վրայով եվրոպական երկրներ արտահանելու հում մետաքս և Անդրկովկասյան երկրներից ու Իրանից բերվող այլ ապրանքներ։ Այս պայմանագիրը շրջադարձային նշանակություն ունեցավ ոչ միայն հայ-ռուսական տնտեսական կապերի հետագա ընդարձակման և Ռուսաստանի քաղաքներում դարերից ի վեր գոյություն ունեցող հայկական համայնքների բարգավաճման համար։

Օտար լծի տակ կեղեքվող հայ ժողովրդի զույգ հատվածների առաջադեմ ներկայացուցիչները, ավելի սերտ տնտեսական կապեր հաստատելով Ռուսաստանի հետ, հանգեցին միակ ճիշտ այն եզրակացությանը, որ ռուսական հզոր պետությունն է քաղաքական այն ուժը, որն ի վիճակի է օգնելու հայ ժողովրդին իր հայրենի երկրի ազատագրության համար մղվող պայքարում։ Եվ այսպես, հարյուրամյակների պատմություն ունեցող տնտեսական ու մշակութա-

յին կապերն ու առնչությունները՝ վերաճեցին, հզորացան և քաղաքական բովանդակություն ստացան։ Դրան զուգընթաց սկսվեց Մոսկվայի հայ գաղթօջախի պատմության նոր դարաշրջանը՝ հարուստ հայ և ռուս ժողովուրդների բարեկամությունը զոդող փաստերով և առևտրական կապերի նոր դրսևորումներով, որոնք արժանի են հանգամանալից ու խորացված նոր ուսումնասիրությունների։

Л. С. ХАЧИКЯН

## АРМЯНЕ В ДРЕВНЕЙ МОСКВЕ И НА ПУТЯХ, ВЕДУЩИХ В МОСКВУ

Уже с первых веков своего существования Москва поддерживала тесные экономические связи с восточными странами. Эти связи осуществлялись в основном по Волго-Каспийскому пути, а также через Киев и Крым. Заметную роль в этой области играли армянские купцы. Армянами были созданы значительные колонии в столице Хазарского каганата—Итиле, а впоследствии—в половецких административно-экономических центрах, в столице волжских болгар—Великих Болгарах, в Казани, Нижнем-Новгороде и т. д. Еще большего расцвета армянские колонии достигли с конца XIII века. В старой и новой столицах Золотой Орды—Сарай-Бату и Сарай-Берке, на Северном Кавказе (особенно на Таманском полуострове и в других районах исторической Черкесии), в юго-восточных приморских центрах Крыма, в Киеве и в других городах южной России появились многолюдные кварталы, населенные армянами.

В XIV—XV вв. армяне составляли две трети населения города Кафы (около 45 тыс. чел.), являвшейся экономическим центром Крыма; они поставляли восточные товары в Россию и в другие страны Восточной Европы.

Подытоживая имеющиеся в наличии сведения об упомянутых выше армянских колониях, автор статьи делает попытку по новому осветить место армян в экономической жизни Москвы XIV—XVI вв. Значительную роль в жизни Москвы этого периода играли купцы, называемые «гостями-сурожанами» или «сурожцами». Высказывались различные точки зрения относительно их национальной принадлежности: по мнению некоторых исследователей среди «гостей—сурожан» ведущая роль принадлежала итальянским (особенно генуэзским) или греческим купцам; другие считали их русскими московскими купцами, существует также точка зрения, согласно которой среди «сурожан» были и армянские купцы.

Приводя данные о месте армян во внешней торговле России и делая имена десяти «гостей-сурожан», участвовавших вместе с Дмитрием Донским в Куликовской битве, а также других (например, Некамата сурожанина) предметом специального рассмотрения, автор статьи приходит к выводу, что «гостями-сурожанами» назывались крымские, в основном, кафинские армянские купцы.

В новом свете предстают также данные о крымских армянах—сподвижниках Ивана III—Какосе, Богдане, Погосе и других, материалы о существовавшем в средневековой Москве армянском дворе, сурожском шелковом ряде и торговом доме, называвшемся «персидским» и т. д. Доказывается, что у армян в Москве была церковь еще с конца XIV в.; следовательно, организованная армянская колония в Москве существовала гораздо раньше, чем было принято считать.

Специальные разделы в статье посвящены тем памятникам культуры (архитектурные памятники, произведения изобразительного искусства, ювелирные изделия, литературные произведения), в создании или реставрации которых, по всей вероятности, принимали участие армянские мастера. По мнению автора, воспоминания об армянских купцах нашли отражение и в произведениях устного народного творчества, в частности, в былине о Чуриле Пленковиче.

L. S. KHATCHIKIAN

## LES ARMENIENS DANS MOSCOU MEDIEVALE ET SUR LES ROUTES MENANT A MOSCOU

### (Résumé)

Dès les premiers siècles de son existence Moscou a entretenu d'étroites relations économiques avec les pays orientaux. Ces relations se sont réalisées principalement par la voie Volgo-Caspienne, la Crimée et Kiev. Les commerçants arméniens ont joué un rôle considérable dans ce domaine. Les Arméniens avaient des colonies stables à Itile, capitale de la Khazarie, puis dans les centres économiques et administratifs des Polovtses, dans la capitale des Bulgares de la Volga, à Véliky Bolgary, de même qu'à Kazan, à Nijni-Novgorod, etc. Les colonies arméniennes ont flori encore plus après le XIIIe siècle. Des quartiers populeux d'Arméniens existaient dans l'ancienne et la nouvelle capitales de la Horde d'Or, à Saraï-Batou et à Saraï-Berké, au Caucase du Nord (en particuler sur la presqu'île de Taman et dans les autres régions de la Circassie historique), dans les centres littoraux du sud-est de la Crimée et dans les autres régions de la Russie méridionale.

Aux XIVe—XVe siècles les Arméniens constituaient les deux tiers de la population de la ville de Kafa (environ 45 mille habitants), qui était le centre économique de la Crimée, et fournissaient des marchandises orientales à la Russie et aux autres pays de l'Europe Orientale.

Réunissant tous les renseignements existant quant aux colonies arméniennes mentionnées plus haut, l'auteur de l'article s'efforce d'éclairer d'une manière nouvelle le rôle des Arméniens dans la vie de Moscou aux XIVe—XVe siècles. A cette époque les commerçants nommés "marchands sourojiens" ou "sourojtsy" ont joué un rôle important dans la vie

économique de Moscou. Différentes suppositions ont été faites quant à leur appartenance nationale: finalement on en est venu à la conclusion que parmi eux le rôle prépondérant revenait aux commerçants italiens (surtout génois) et grecs; d'autres ont considéré que les "marchands sourojiens" étaient des commerçants russes moscovites; d'autres encore sont de l'opinion que parmi les "sourojiens" il y avait également des Arméniens.

Mentionnant les données existant quant au rôle joué par les Arméniens dans le commerce extérieur de la Russie et rendant les noms de dix "marchands sourojiens" ayant participé avec Dmitri Donskoï à la bataille de Koulikovo, de même que d'autres noms (par exemple celui de Nékomat Sourojien) l'objet d'un examen spécial, l'auteur de l'article en vient à la conclusion qu'on nommait "marchands sourojiens" les commerçants arméniens de Crimée et surtout de Kafa.

L'auteur examine sous un jour nouveau également les données relatives aux Arméniens de Crimée—compagnons d'armes d'Ivan III—Kakos, Bogdan, Poghos, etc., les matériaux concernant l'existence à Moscou d'un caravansérail arménien, de galeries de soiries de Sourojiens et d'une maison de commerce dite "persane". Il est démontré que les Arméniens ont eu une église à Moscou dès la fin du XIVe siècle et que, par conséquent, une colonie arménienne organisée y a existé bien avant qu'on ne le croyait.

Des passages spéciaux de l'article sont consacrés aux oeuvres d'art (monuments, tableaux, joaillerie, oeuvres littéraires) à la création ou à la restauration desquelles des artistes arméniens ont participé. Selon l'auteur de l'article les souvenirs relatifs aux commerçants arméniens se sont reflétés également dans la création populaire orale, en particulier dans la chanson épique de Tchourila Plenkovitch.